Barnabas, Housepean

# ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ

Hajordution Patriarkatsk

# ՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ
# ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

## Ի ՅԱԿՈՎԲԱՅ ԱՌԱՔԵԼՈՅ
## ՏԵԱՌՆԵՂԲՕՐԷ

### ՄԻՆՉԵՒ ՑՄԵՐՍ ԺԱՄԱՆԱԿ



ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹԵԱՄԲ

ԲԱՌՆԱԲԱՍ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԳԱՆՁԱԿԵՑՒՈՅ

Ի ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ

ՍՐԲՈՑ ՈՒԽՏԻՆ

ՍՐԲՈՑ ՅԱԿՈՎԲԵԱՆՑ





Կ. ՊՕԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՅՈՎՍԷՓԱՑ ԳԱՎԱՖԵԱՆ

— 1872 —

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ



*ԶՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ՝ որ յԵրուսաղէմ աթոռակալեցին պատրիարքութեամբ, կարգադրեալ զցանկ նոցին յաջորդաբար ցմերս ժամանակ յումեքէ չգտաք լիովին. որպէս զի զմերս ըղձանաց անենչ լցուցանել բաւէաք. իսկ որ ինչ 'ի հատուկոտր գրուածս՝ եւ յիշատակարանս գտանիւր, այն եւս ոչ յիսկզբանէ անտի եպիսկոպոսութեանն ցմերս ժամանակ յաջորդաբար իջանէր. օրինակացն եւս ոչ համաձայն լինելով, այնպէս զի երկու օրինակքն չէին 'ի միջի պատմել միապէս. նաեւս թուականք նոցին եւ ժամանակ իշխանութեանն աղաւաղեալ, ոմն զայս ոք գրելով եւ ոմն զայլ ոք, ոմանք եւս զբազմաց զանց արարեալ կամ սխալմամբ գրչաց, եւ կամ գիտութեամբ առ աւելութենէ. քանզի որ յաթոռ իշխանութեանն բարձրանային արքն, ոչ 'ի մի եւ 'ի նոյն ազգէ էին. վասն որոյ պատմութիւն այս ինչ ազգի զանց առնէ յիշել զանուանս պատրիարքացն յօտար ազգաց առ 'ի ցուցանելոյ թէ յազգէ իւրմէ միայն կալան զաթոռն պատրիարքունք. այսպէս եւ այլք. որով եւ անուանք պատրիարքացն եւ թուականք կամ ժամանակք նոցին ոչ անվրէպ գրեալ լինէին. Եւ այս յամէ փրկչին 138 ցսկիզբն եօթներորդի դարուն. զի մինչեւ ց138 'ի հրէից անտի հաւատացելոց էին որ յաթոռն պատրիարքութեան նստան յԵրուսաղէմ: Իսկ անտի մինչ 'ի սկիզբն եօթներորդի դարուն 'ի հեթանոսաց հաւատացելոց նստէին յայլ եւ այլ ազգաց. նաեւս հերետիկոսք ոմանք եւս տիրեցին երբէք երբէք յայսմ միջոցի աթոռոյն Երուսաղեմի, զորս եւս չյիշեն պատմագիրք չկամեցեալ 'ի շարս պատրիարքացն դասել զանուանս նոցա. զայս կերպ ընթացս պատմագրացն տեսեալ մեր, կամեցաք ըստ մարթելոյն ստուգութեամբ 'ի մի կարգ ուղիղ վերածել. զի մի յայսմ մասին յետնեալ թուիցեմք յայլոց ազգացն:*

*Արդ այս դուզնաքեայ բայց դժուարաքննին աշխատութիւն, զոր յանձն առաք առ սէր լրութեան ազգիս, շարակարգեցաք*

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ



ԶՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ՝ որ յԵրուսաղէմ աթոռակալեցին պատրիարքութեամբ, կարգադրեալ զցանկ նոցին յաջորդաբար ցմերս ժամանակ յումեքէ չգտաք լիովին․ որպէս զի զմերս ըղձանաց տենչ լցուցանել բաւէաք․ Իսկ որ ինչ 'ի հատուկոտոր գրուածս՝ եւ յիշատակարանս գտանիւր, այն եւս ոչ յիսկզբանէ անտի եպիսկոպոսութեանն ցմերս ժամանակ յաջորդաբար իջանէր․ օրինակացն եւս ոչ համաձայն լինելով, այնպէս զի երկու օրինակք չէին 'ի միջի պատմել միապէս․ Նաեւս թուականք նոցին եւ ժամանակ իշխանութեանն՝ աղաւաղեալ, ոմն զայս ոք գրելով եւ ոմն զայլ ոք, ոմանք եւս զբաղմաց զանց արարեալ կամ սխալմամբ գրչաց, եւ կամ գիտութեամբ առ ատելութենէ․ քանզի որ յաթոռ իշխանութեանն բարձրանային արքն, ոչ 'ի մի եւ 'ի նոյն ազգէ էին․ վասն որոյ պատմութիւն այս ինչ ազգի զանց առնէ յիշել զանուանս պատրիարքացն յօտար ազգաց առ 'ի ցուցանելոյ թէ յազգէ իւրմէ միայն կալան զաթոռն պատրիարքունք․ այսպէս եւ այլք․ որով եւ անուանք պատրիարքացն եւ թուականք կամ ժամանակք նոցին ոչ անվրէպ գրեալ լինէին․ Եւ այս յամէ փրկչին 138 ցսկիզբն եօթներորդի դարուն․ զի մինչեւ ց138 'ի հրէից անտի հաւատացելոց էին որ յաթոռն պատրիարքութեան նստան յԵրուսաղէմ։ Իսկ անտի մինչ 'ի սկիզբն եօթներորդի դարուն 'ի հեթանոսաց հաւատացելոց նստէին յայլ եւ այլ ազգաց․ Նաեւս հերձուածողք ոմանք եւս տիրեցին երբեք երբեք յայսմ միջոցի աթոռոյն Երուսաղեմի, զորս եւս չյիշեն պատմագիրք չկամեցեալ 'ի շարս պատրիարքացն դասել զանուանս նոցա․ զայս կերպ ընթացս պատմագրացն տեսեալ մեր, կամեցաք ըստ մարթելոյն ստուգութեամբ 'ի մի կարգ ուղիղ վերածել․ զի մի յայսմ մասին յետնեալ թուիցեմք յայլոց ազգացն։

Արդ այս դուզնաքեայ բայց դժուարաքերան աշխատութիւն, զոր յանձն առաք առ սէր լրութեան ազգիս, շարակարգեցաք

յամսն 1858—1864 'ի պատմութեանց ազգաց ազգաց եւ 'ի հատուկոտոր յիշատակարանաց եղելոց 'ի վանս Սրբոց Յակոբեանց, եւ 'ի զանազան տապանագրաց եւ յարձանագրութեանց զորս եւ 'ի կարգի պատմութեանն ծանօթութեամբ եդաք յիւրաքանչիւր էջս 'ի սորեւ թէ ուստի կամ յորմէ օրինակէ քաղեցաք ։ Նաեւ զժամանակն եւ զորքանութիւն անձնիւր պատրիարքացն եւս 'ի լուսանցս անդ առանձինն դաւազանաւ նշանակեցաք 'ի դիւրութիւն ըմբռնելոյ վերծանողաց ։

Արդ օրինակքն, յորոց քաղեալ շարակարգեցաք զգործս՝ էին ։

Ա. Եկեղեցական պատմութիւն Եւսեբեայ Կեսարացւոյ ։

Բ. Նորին Եւսեբեայ ժամանակագրութիւն ։

Գ. Մարինոսի լատին պատմագրի պատմութիւն Երուսաղեմի ։

Դ. Միխայելի Ասորւոյ գաւազանագիրքն պատրիարքաց. որոյ չորս օրինակք էին 'ի ձեռս մեր զանազան 'ի միմեանց ։

Ե. Գաւազանագիրք պատրիարքացն Երուսաղեմի յունաց, տպեալ 'ի Մոսկուա յունարէն ։

Զ. Վարք սրբոց տպեալ 'ի Վենետիկ (հտ. ժբ.) եւ յայսմաւուրն մեր ։

Է. Պատմութիւն Բիւզանդայ Փաւստոսի յերկուց ձեռագիր օրինակաց ։

Ը. Ա. յիշատակարան Սրբոյ Աթոռոյս. այս յիշատակարան երեք մասն է եւ հին. եւ գտանի 'ի Սուրբ Աթոռս 'ի գանձատան ։

Թ. Ժամանակագրութիւն Սամուէլի Երիցու. կրկին օրինակք գրչագիր ։

Ժ. Բ. յիշատակարան անուանեալ 'ի մէնջ, յորում պարունակին պատմութիւնք եւ յիշատակարանք արաբացւոց, ժողովեալ 'ի ձեռն Երուսաղեմացւոյ մերազնեայ ուրումն բարեպաշտի. եւ յիշատակարանք որ գտանին 'ի վերջաւորս գրեանց գրեանց, որ 'ի թանգարանի Սրբոյ Աթոռոյս, եւ արձանագրութիւնք եւ տապանագիրք պատրիարքաց, զորս սակս չկրկնելոյ ստէպ եւ համառօտութիւն գրուածոյս Բ. յիշատակարան անուանեմք. զի եթէ յամենայն տեղիս առանձինն առանձինն կրկնէաք զսոսա 'ի ծանօթութիւնսն, ստուարագոյն յոյժ լինէր արդեօք այս դուզնաքեայ գործ ։

ԺԱ. Այլ եւ այլ պատմութիւնք. յորոց երբէք երբէք ծանօթութիւնս քաղեալ պատահաբար, զնոսին եւս յանուանէ դնեմք 'ի ծանօթութիւնս ։

Դարձեալ գիտելի է, զի յերկուս գիրս բաժանի յաջորդութիւնս պատրիարքացն Երուսաղեմի. եւ առաջին գիրքն բաժանի յերկուս յօդուածս. յառաջնումն շարակարգին պատրիարքունք 'ի

Յակովբայ Տեառնեղբօրէ ցՅուդա Ա. որ 'ի հրէից անտի հաւատացելոց նստան յաթոռն յամս փրկչին 30-137 (հասարակ թուական) ։ Յերկրորդումն 'ի Մարկոսէ մինչեւ ցՍոփրոնիոս յոյնն՝ որք 'ի հեթանոսաց եկեղեցւոյն նստան յաթոռն յամս 138—638 ։

Երկրորդ գիրքն բաժանի յերիս յօդուածս ։

Յառաջնումն շարակարգին Պատրիարքունք Հայոց՝ ազգիս յԱբրահամէ Ա. մինչեւ ցՅակոբոս Բ. յամս 638—1281 ։

յԵրկրորդումն շարակարգին 'ի Սարգսէ Ա. ցՅովհաննէս Գանձակեցի յամս 1282—1714 ։

յԵրրորդումն շարակարգին 'ի Գրիգորէ Զ. Շղթայակրէ ցմերս ժամանակ յամս 1715—1872 ։

Յայս վայր հասուցեալ զյաջորդութիւն Պատրիարքացն Երուսաղեմի ընծայեմք ընթերցանելեաց գրասիրաց ազգիս, զներողամտութիւն նոցին վստահացեալ 'ի թերութիւնս որ 'ի սմին. նաեւ յորդորեմք զմէն մի գրասէր փոյթ ունել յանձին խուզել հանել 'ի հնութեանց զպակասորդս սորին որ յառաջնումն յօդուածի երկրորդի գրոց. եւ անընդհատ այսուհետեւ շարունակել զհետազօտումն ցորչափ կայ ազգ մեր. որով ազատ զանձինս կացուսցուք յիրաւացի մեղադրանաց ապագային 'ի յապագայս ։ Այսպիսեաց փութաջան աշխատասիրաց, որ զպակասորդս սորին լնուլ ջանայցեն, մեք եւս ընդ լրութեան ազգիս երախտապարտութիւն յայտնեմք ։

ԲԱՌՆԱԲԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ

Տ. ՅՈՎՍԷՓԵԱՆ ԳԱՆՁԱԿԵՑԻ



# ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ

# ՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

## *ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ*

## ՅՕԴՈՒԱԾ ԱՌԱՋԻՆ

### ԴԱՐ ԱՌԱՋԻՆ

ԱՄՔ ՏԵԱՌՆ ՀՍՐԿ. ԹՒԿՆ.

1°. ՍՈՒՐԲՆ Յակովբոս Ա. առաքեալ արդարն ան- 30
ուանեալ, որդի Կղէովպայ եղբայր Տեառն կոչեցեալ. սա եկաց առաջին Եպիսկոպոս յԵրուսաղէմ՝ ձեռնադրեալ 'ի յԱռաքելոց զկնի գալստեան Հոգւոյն սրբոյ, որ 'ի ծննդենէն Քրիստոսի Փրկչին լինիւր յերեսուն և երեք ամին. իսկ ըստ հասարակ թուականին յերեսներորդ ամին։

Ի ժամանակի իշխանութեան սորա յամին 42. գլխատեցաւ 'ի Հերովդեայ մեծն Յակովբոս առաքեալ որդին Զեբեթեայ (*). որոյ և գլուխ նորին բերեալ 'ի ձեռն հրեշտակաց յանձնեցաւ Մարիամայ Աստուածածնին, որ ընդ Յակովբայ Տեառնեղբօր թաղեցին յԵրուսաղէմ 'ի կալուածի նորին իսկ Յակովբայ Տեառնեղբօր։

Յամին 42. եկն յԵրուսաղէմ Հեղինէ դշխոյ Հայոց կինն Աբգարու մեծի արքայի (**) ընդ իւր ունելով ըզ-

1°. Եւսեբ. պատմ. Եկեղեց. Եւսբ. ժմնկք. Մարինոսի պատմ. Նէմի. Միխայէլ ասորի. Գաւազանագիրք յունաց. Սամուելի երիցու ժմնկգր.. Վարք սրբոց.

(*) Յայսմաւուրսն մեր.

(**) Խորենացի պատմ. Հայոց. Գիրք Բ. Գլ. 35. Յովհաննու. յաղագս սովոյն որ առ Կղօդեաւ. Թովմաս Արծր. պատմ. Արծրունեաց, էջ 52.

Խուրան զօրավար . և 'ի սովու կերակրեալ զժողովուրդ-
երկրին ողորմածութեամբ , շինութիւն բազում առնէր և
կանգնէր մատուռս 'ի Ս. տեղիս (*). որպէս 'ի վերայ
լուսափայլ Ս. Գերեզմանին Քրիստոսի տեառն մեր . 'ի
Գողգոթային , յայրին ծննդեան 'ի Բեթղեհեմ. նաեւս մա-
տուռն մի կամարայարկ 'ի վերայ գերեզմանի գլխոյն Յա-
կովբայ առաքելոյն որդւոյն Զեբեդեայ : Զոմանէ տեսցես
և 'ի վերջ Ա. գրոցս 'ի ծանօթութիւնն 1' :

Յաւուրս սորա (51) եղեւ յԵրուսաղէմ ժողով առա-
քելոց վասն որ 'ի հրէից և 'ի հեթանոսաց հաւատացե-
լոց , որպէս տեսանի 'ի գործս Առաքելոց :

Զկնի նահատակութեան Թադէոսի Առաքելոյ 'ի Հայս,
մին յաշակերտաց նորա Եղիշէ գայ յԵրուսաղէմ առ Յա-
կովբոս Տեառնեղբայր , և ձեռնադրեալ յԵպիսկոպոս ,
դարձաւ յԱղուանս (50):

Սա այս Յակովբոս Տեառնեղբայր արդար առաքեալ
կացեալ յեպիսկոպոսութեան ամս (30) նահատակի 'ի հր-
րէից գահավէժ արկեալ 'ի պարսպացն Երուսաղեմի յա-
րեւելից կուսէ . և թաղի անդ յԵրուսաղէմ 'ի կալուածի
իւրում 'ի լերինն Սիօնի (**) առ ընթեր մատուան , որ 'ի
վերայ գլխոյ Սրբոյն Յակովբայ Զեբեդեան կանգնեցաւ
'ի Հեղինեայ դշխոյէ Հայոց :

Ի վերայ գերեզմանաց երկուց Յակովբեանց առաքե-
լոցս շինեցաւ վանք հռչակաւոր 'ի սկզբան չորրորդի դա-
րուն 'ի հրամանէ Տրդատայ մեծի արքային Հայոց՝ յանուն
Սրբոց Յակովբեանց . և է սեպհական ազգիս Հայոց մին-
չեւ ցայսօր (***) :

2'. Սուրբն Շմաւօն կամ Սիմօն Կղէովպայ եղբայր ար- 60
դարոյն Յակովբայ , զորոյ զկնի նահատակութեանն յա-
ջորդեաց զաթոռն եպիսկոպոսութեան :

Յեօթներորդում ամի իշխանութեան սորա (67) յետ
բազում կոտորածոց առնու զԵրուսաղէմ Տիտոս կայսրն
Հռովմայեցւոց 'ի հիմանց քակեալ զտաճարն :

---

(*) Ստորագրութիւն Եէմի. էջ 5—7. Բ. յիշատակարան :
(**) Հին յայսմաւուրք :
(***) Հնախօսութիւն Հյանի. Հ. Ղուկասու Ինճիճեան :
2'. Եւսեբ . ժմնկգր : Մարինոս : Միխայել : Դւգնգիր յունաց :

Կեցեալ՝ սորա յաթոռն եպիսկոպոսութեան ամս քառասուն և ութ (48). նահատակի յԵրուսաղէմ հրամանաւ Ատտիկոսի հիւպատոսին Հռովմայեցւոց. 'ի հասակի հարիւր և քսան ամաց։

3°. Սուրբն Յուստոս Ա. եղբայր Յակովբայ և Շմաւոնի յաջորդէ զաթոռ եպիսկոպոսութեանն զկնի նահատակութեանն Շմաւոնի, և կեցեալ ամս տասն (10). 'ննջէ խաղաղութեամբ յամի 118. և թաղի ընդ հարս իւր։ 108

4°. Զաքէ զկնի Յուստոսի նստի յաթոռ եպիսկոպոսութեան. իսկ որչափ ինչ ժամանակ իշխեաց, մնայ անյայտ. եւս և ընդ սմա մետասանից եպիսկոպոսաց. իսկ ժամանակք իշխանութեանցն մնան անյայտք. զի զնոցանէ միապէս լռեն պատմագիրք. վասն որոյ և մեք չկարացեալ ստուգապէս տեղեկանալ և 'ի գործոյ իսկ 'ի վեր հանել, և մեք լռեցաք։ 118

5°. Տովբիթ յաջորդէ Զաքէի, որոյ ժամանակ իշխանութեանն մնայ անյայտ առ պատմագիրս, եւս և հետագայիցն իսկ իւրոց։

6°. Բենիամին։

7°. Յովհաննէս Ա. զկնի Բենիամինի։

8°. Մատաթիա զկնի Յովհաննու. զսա ոմանք Մատթէոս գրեն, սակայն մեք զԵւսեբեայն առաւել ճշմարիտ դատեալ Մատաթիա եդաք։

9°. Փիլիպպոս Ա. Մարինոս և գաւազանագիրն Յունաց Բենիամին անուամբ գրեն զսա, զի ոչ ինչ փոյթ է նոցա զուգել դասաւորութենէ անուանցն, այլ այս ինչ միայն դիտաւորութիւն նոցա, զի մինչեւ ցՅուդա զեպիսկոպոսունս հնգետասան համարեսցին։

10°. Սենեկայ։

11°. Յուստոս Բ։

12°. Ղեւի։

13°. Եփրեմ։

14°. Յովսէփ։

15°. Յուդա Ա. յաջորդէ զաթոռն զկնի Յովսեփայ.

---

3°—8°—9°—15°. Եւսեբ. ժմնկգր. Մարինոս. Միխայէլ. Գաւազանագիր յունաց. Ա. յիշատակարան. Սամուէլ.

մին յօրինակաց մերոց չորեքտասաներորդ գնէ զսա յառաջ քան զՅովսէփ դասելով. բայց զի այլքն ամենայն հնգետասաներորդ զսա գնեն, և մեք բազմացն հետևեցաք։

Յուդայս սորա եղեւ աւերումն Երուսաղեմի յԱդրիանոսէ կայսերէ Հռովմայեցւոց. ապա զկնի ամաց դարձեալ նորոգեալ 'ի նմին իսկ Ադրիանոսէ կոչեցաւ Հեղիա։ Ադրիանոս յետ նորոգութեանն Երուսաղեմի տարագրեալ 'ի քաղաքէն զամենայն հրեայս, զքրիստոնեայս բնակեցուցանէր, ուստի և աստէն դադարի Եպիսկոպոսութիւնն 'ի հաւատացելոց Հրէից, և սկսանին նստիլ յաթոռն 'ի Քրիստոնէից եպիսկոպոսք այլեւայլ ազգաց։

Ադրիանոս յետ աւերելոյ և վերստին շինելոյ զԵրուսաղէմ, կանգնեաց և կուռս 'ի Սրբազան տեղիս. այս է զպատկեր Աստղկան՝ 'ի Գողգոթայ. զպատկերն Արամազդայ՝ 'ի վերայ սուրբ գերեզմանին Քրիստոսի. և 'ի Բեթղեհէմ տնկեաց զանտառն Ադոնիսայ։

Ի Զաքէէ մինչեւ ցՅուդա արք երկոտասան նստան յաթոռն Երուսաղեմի 'ի միջոցի քսան (20) ամաց։ Զի որպէս տեսանեն 'ի վերայ յամին 118 նստաւ յաթոռն նախ Զաքէ, և յամին 138 վերջանայ իշխանութիւն Յուդայի, այլոցն ամենեցուն ոչ սկիզբն յայտնի է և ոչ վախճան։



# ՅՕԴՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ

16°. Մարկոս Ա. ՚ի հեթանոսաց եկեղեցւոյն զառա- 138
ջինն նստաւ յաթոռն Եպիսկոպոսութեան Երուսաղեմի
զկնի Յուդայի ։ Միխայէլ ասորի և Ա. յիշատակարան մեր,
Նարկէսոս անուն ոմն դնեն յառաջ քան զայս առաջին յԵ-
կեղեցւոյն Հեթանոսաց . բայց երկուցն ևս չկարացեալ
երաշխաւորել ստուգութիւնն զՆւսեբեայն և զայլոցն հա-
ւատարմագոյն առ սոքօք համարեալ և մեք զՄարկոս
եդաք ։

Առ սովաւ նուաղէր տակաւ իշխանութիւն աթոռոյն
Երուսաղեմի (*). զի ցայս վայր իբր կեդրոն միութեան
էր Երուսաղէմ հաւատացելոցն որ ՚ի Գալիլիա, ՚ի Սամա-
րիա և յամենայն հրէաստանի. իսկ յետ աւերածոյն Ե-
րուսաղեմի յԱդրիանոսէ անց իշխանութիւնն մայրաքաղա-
քացիութեան (որ յետ ժամանակաց մետրապօլտական),
՚ի Կեսարիա Պաղեստինացւոց. և յետ ժամանակաց Անտիո-
քայն. իսկ աթոռ իշխէր Երուսաղեմի մինչև ցժողովն
Նիկիոյ ։

Վարեալ սորա զիշխանութիւնն ամս տասնեւութ
(18), վախճանի ։

17°. Կասիանոս զկնի Մարկոսի իշխեալ զամս չորս, 157
մեռանի։ Աստէն գիտել հարկ է, զի զսոցա երկոցունց
զթուականսն, ոչ ամենեքեան միօրինակ ունին, և ոմանք
ևս զանց արարեալ չգրեն. իսկ մեք համեմատութեամբ
զհաւանականն եդաք։

18°. Պօպղիոս յաջորդէ զաթոռն զկնի Կասիանու, ոչ 161
ուրեք երեւեցաւ թէ որչափ իշխեաց։

19°. Մաքսիմոս Ա. Երբ և որչափ իշխելն անծանօթ
մնայ մեզ ։

20°. Յուլիանոս Ա. ։

---

16°—17°. Եւսեբեայ ժմնկգր ։ Մարինոս ։ Գւյնգր յունաց ։

(*) Տիեզ. պատմութիւն Յովսեփայ Գաթրճեան. հտ. Բ. էջ 220.

18°. Եւսբ. ժմնկգր ։ Ա. յչտկրն ։ Մարինոս ։ Գաւազանագիր յունաց ։ Միխայէլ ։ Սամուէլ ։

21°. Գայիոս կամ Գայիանոս Ա.։

186 22°. Սիմաքոս. զմանէ տես 'ի վերջ Ա. գրոցս ծանօթութիւն 2°։

190 23°. Գայիոս Բ. զմանէ եւս տես 'ի ծանօթութիւն 2°. 'ի վերջ Ա. գրոցս։

24°. Յուլիանոս Բ. իշխէ մինչեւ ցամն 186։

25°. Կապիտոն կամ Կլպիտոն. վարէ զիշխանութիւն աթոռոյն դչորս (4) ամ։

26°. Մաքսիմոս Բ. սա ունի գրուած ինչ (*) ընդդէմ հերետիկոսաց և մուծեալ է յեկեղեցական մատենագրութիւնս, և յոմանց սուրբ անուամբ պատուի, բայց մեզ անծանօթ. չերեւի ուրեք թէ որչափ իշխեաց։

27°. Անտոնինոս կամ Անտոն։

28°. Վաղէս զկնի Անտոնինոսի։

29°. Դողէքիանոս. սա իշխէ ցամն 199։ Յաւուրս սորա լինի ժողով 'ի բազում տեղիս վասն զատկի տօնին։

199 30°. Սուրբն Նարկեսոս կամ Նարկէոս. զսա համարեմ թէ ամենայն օրինակք երեսներորդ 'ի Տեառնեղբօրէ, և հնգետասաներորդ 'ի Մարկոսէ ('ի սկզբնաւորութենէ յեկեղեցւոյն հեթանոսաց.) դնեն. իսկ Միխայէլ պատրի և Ա. յիշատակարան յետ յիշելոյ աստէն հնգետասաներորդ. յիշեն եւս իննեւտասաներորդ յամին 216 'յառաջ .քան զԱղէքսանդրոս. և այս վասն այն, զի յետ վարելոյ սորա զիշխանութիւնն ամս երեքտասան, թամբասեալ յոմանց 'ի չարալեզուաց՝ ինքնին հրաժարեալ յաթոռոյն առանձնանայր յանապատի ամս չորս։ Ցայսմ միջոցի այլք կալան զիշխանութիւն աթոռոյն մի զկնի միւսոյն, զորոց զանուանս տեսցես 'ի ստորեւ։ Ապա զկնի չորից ամաց անդրէն երեւեալ Նարկեսոսի, ստիպեալ 'ի թախանձանաց ժողովրդեանն վերստին նստաւ յաթոռ իշխանութեան իւրոյ զամս չորս։

Յետ վարելոյ յայս նուագ զիշխանութիւնն զամս չորս ապա 'ի կենդանութեան իւրում յանձնեաց զաթոռն

---

28°—30°. Նաւք. ժամնկգր. Ա. յշտկրն. Մարինոս. Գւզնգր յուշնայ. Միխայէլ. Սամուէլ. Բիւզանդ.

(*) Տիեզ. պտմ. Յովսեփայ Գամրճեան. հտ. Բ. էջ 238.

Աղեքսանդրոսի Եպիսկոպոսին Կապադովկացւոյ, զորմէ
յիւրում անդւոջ տեսցես, և ինքն կեցեալ այլ եւս սա-
կաւ աւուրս փոխի յաստեացս յամի 220. ամաց հարիւր
վեշտասանից. և լինին ամք իշխանութեան սորա ընդ ա-
մենայն ամք տասնեւեօթն (17)։ Մեք ոչ կրկնեսցուք յա-
մենայն տեղիս, զորս այսպէս կրկին և երեքկին նստան
յաթոռն, յառաջնում նուագին ևեթ դնելով 'ի կարգի։

31°. Տիոս կամ Տիոն 'ի բացակայութեան Նարկեսոսի։ 212

32°. Գերմանիոն կամ Գերմանիոս։

33°. Գրիգորիս՝ Ա. Միխայէլ Ասորի և Ա. յիշատակա-
րան մնացս Գրիգորիս անուանեն զսա, որոց և մեք հե-
տեւեցաք. բայց Ժամանակագրութիւն Եւսեբեայ և Բիւ-
զանդ, անուանեն Գորդիոս. իսկ Գաւազանագիրն Յու-
նաց և Մարինոս գրեն Ղորդիոս կամ Կուիսիանոս։ Այսց
երից արանցս իշխանութիւն տեւեաց ընդ ամենայն ամս
չորս, և դարձաւ Նարկեսոս որպէս 'ի վերոյ ասացաք։

34°. Սուրբն Աղեքսանդրոս. զսա նա ինքն Նարկեսոս 220
'ի ծերութեան իւրում հաստատեաց յաթոռն Եպիսկո-
պոսութեան 'ի տեղի իւր։

Սա նախ քան զնստիլն իւր յաթոռն Երուսաղեմի, էր
Եպիսկոպոս Կապադովկիոյ. և եկն յուխտ յԵրուսաղէմ
յառաջնումն իշխանութեան Նարկեսոսի. յայնժամ Նար-
կեսոս 'ի տեսլեան պատուիրեցաւ 'ի հրեշտակէ սիրով ըն-
դունել զԱղեքսանդրոս 'ի գալն նորա. որ և յառաւօտու
պատմեաց ժողովրդեան զտեսիլն. և ամենայն ժողովուր-
դըն Երուսաղեմի ընդ առաջ ել Աղեքսանդրոսի յընդու-
նելութիւն 'ի գալն նորա. և արժանի մեծարանօք ըն-
կալեալ զնա մուծին 'ի քաղաքն։ Յայնժամ կամեցաւ Նար-
կեսոս յանձնել Աղեքսանդրոսի զիշխանութիւնն, յաթոռ
Եպիսկոպոսութեանն հաստատել. բայց Աղեքսանդրոս
ոչ էառ յանձն առժամայն. այլ ժամադիր եղեւ, դնալ
յաթոռ իւր 'ի Կապադովկիա, և հրաժարեալ 'ի յաթո-
ռոյն իւրմէ՝ և գալ յԵրուսաղէմ, որպէս և արար իսկ.
Եկն եհաս Աղեքսանդրոս յԵրուսաղէմ 'ի չորրորդում

---

33°—34°. Եւսեբ. Ժմնկգր։ Մարինոս։ Միխայէլ Ասորի։ Սա-
մուէլ։ Բիւզանդ։ Գաւազանագիր յունաց։ Ա. յիշատակարան։

ամի երկրորդի իշխանութեանն Նարկեսոսի . և 'ի նմին իսկ ամի (220) յաջորդեաց զաթոռն 'ի կենդանութեան նորա ։ Եւ նստեալ յաթոռ Եպիսկոպոսութեան յԵրուսաղէմ զամս երեսուն (30). ապա նահատակի յամին 250 . 'ի Դեկոսէ կայսերէ 'ի ծերութեան հասակի ։

251 35°. Մազաբիանոս վարէ զիշխանութիւն ամս երկոտասան (12) ։

264 36°. Հիմենոս . սա յաղանդէ Սամոսատացւոյն Պօղոսի գոլով, 'ի դատապարտիլ աղանդոյն 'ի ժողովին Անտիոքայ, անկանի յաթոռոյն յետ վարելոյ զիշխանութիւնն զամս հինգ (5)։

269 37°. Դոմնաս . սա յետ Հիմենոսի կառավարէ զաթոռն ամս ինն և տասն (19). զսա ոչ յիշէ Եւսեբէոս 'ի պատմութեանն Եկեղեցական ։

288 38°. Ըզբերդա . զկնի Դոմնասի ամս տասն (10) ։

298 39°. Զաբտաս . ամս երեք (3) . զսա ոմանք Տապատաս գրեն ։

301 40°. Հերմոն . զկնի Զաբտասայ զմետասան (11) ամ ։

312 41°. Մուրբն Մակար Ա. յաջորդէ Հերմոնի . սա հրաւիրեցաւ 'ի սուրբ ժողովն Նիկիոյ և մի էր 'ի սուրբ հայրապետաց ժողովոյն ։

327 Յաւուրս սորա գտաւ սուրբ խաչափայտն Քրիստոսի Աստուծոյ յԵրուսաղէմ, 'ի ձեռն Հեղինեայ մօր Կոստանդիանոսի . 'ի գտանիլ Խաչափայտին հաւատաց Յուդա ոմն հրեայ և կոչեցաւ Կիւրեղ . որ առ յապա սովորաբար Յուդա Կիւրեղ յորջորջէր, զոր 'ի տեղւոջն տեսցես ։

Առ սովաւ աթոռն Երուսաղեմի վերստին կոչեցաւ Պատրիարքական աթոռ Պաղեստինու (*), բաժանեալ 'յիշխանութենէն Անտիոքայ, ընդ որով եմուտ յետ կործանմանն Երուսաղեմի յԱդրիանոսէ ։

---

37°. Ժամնկգր . Եւսեբի ։ Միխայէլ ։ Մարինոս ։ Սամուէլ ։ Բիւզանդ ։ Գաւազանագիր յունաց ։ Ա. յիշատակարան ։

38°. Միխայէլ Ասորի ։ Ա. յիշատակարան ։

39°—41°. Ժամնկգր . Եւսեբի և Վերջանոյ սորէն ։ Գաւազանագիր յունաց ։ Մարինոս ։ Միխայէլ ։ Սամուէլ ։ Ա. յշտկրն ։ Վարք Սրբոց ։

(*) Տիեզերական պամ. Գաթրճեան . հտ. Ա. էջ . 422 ։

Սա՛ այս սուրբն Մակար վարեալ զիշխանութիւն աթոռոյն ամս քսան և երեք (23) վախճանի. և որպէս հաւանական թուի, յետ ժամանակաց ամփոփեցին Հայք զնշխարս նորա 'ի Վանս Սրբոց Յակովբեանց, ուր առանձին մատուռն կայ 'ի վերայ, և դերեզման Սրբոյն Մակարայ ասի մինչեւ ցայսօր:

Ի պատմութիւնս Հայոց Չամչեան (Հտ. գ. էջ 422). գրի թէ Սուրբն Վրթանէս հայրապետն դրեալ և կանոնս խնդրեալ իցէ 'ի Մակարայ Պատրիարքէ Երուսաղեմի 'ի բարեզարդութիւն Եկեղեցւոյ. և նորա ժողով գումարեալ և գրեալ կանոնս ութն, առաքեալ առ Վրթանէս, որոյ եւս ընկալեալ և բարեզարդեալ իցէ զԵկեղեցիս Հայոց: Առ այս այսչափ ինչ առաջի առնեմք բանասիրաց, զի սուրբն Մակար վախճանեցաւ յամի 335. և Վրթանէս կալաւ զաթոռն Կաթուղիկոսութեան 'ի Հայս յամի 339, ուստի և ըստ մեզ մնացածին համարելի է վերոյգրեալդ:

42°. Մաքսիմոս Գ. խոստովանող ասացեալ. յաջորդէ 335
զաթոռն Պատրիարքութեան զկնի Մակարայ, և իշխէ ամս հնգետասան յամէ 335 ց350: Զսորա զմի աչացն հանեալ ջախջախեցին և զաջոյ սրունսն հերետիկոսք (Թերեւս արիանոսք) 15:

43°. Սուրբն Կիւրեղ Երուսաղեմացի. սա մի է յեր- 350
կոտասան վարդապետաց Եկեղեցւոյ, զոր եկեղեցական մատենագիրք Հայոց հայրապետ անուամբ պատուեն միշտ: Արար սա գիրս Կոչումն Ընծայութեան ասացեալ: Ձեռնադրեցաւ 'ի քահանայ 'ի Մաքսիմոսէ նախորդէն իւրմէ. ապա զկնի մահուան նորա հաստատեցաւ յաթոռն պատրիարքութեան յԵրուսաղէմ:

Յերկրորդում ամի իշխանութեան նորա եղեւ լուսափայլ երեւումն սուրբ Խաչին յերկինս. զոր տեսեալ բազմաց հաւատացին 'ի Քրիստոս և մկրտեցան 'ի ձեռն սուրբ հայրապետիս արք առաւել քան զտասն հազար:

---

43°. Վարք Սրբոց. Փիլիկդրու. Սամուէլի. Միխայէլ: Մարինոս: Գաւազանագիր յունաց:

Յետ վարելոյ զիշխանութիւնն ամս հինգ, անկանի յաթոռոյն (355) և վտարանդի մնայ ամս եօթն. զի մախացեալ Ակակիոսի Եպիսկոպոսին Կեսարիոյ Պաղեստինացւոց, եթէ Կիւրեղ ինքնիշխանաբար վարէր զհովուապետութիւնն 'ի Պաղեստին, այս է յԵրուսաղէմ և յամենայն գաւառս նորին, չկարէր տանել այսմ Ակակիոս. մանաւանդ եւս զի արիոսական էր աղանդով, և տեսանէր ըզԿիւրեղ ընդդէմ իւր զինեալ: Երկրորդ՝ որպէս 'ի վերոյ գրեցաք, յառաջ քան զսուրբն Մակար Ա. 'ի Պաղեստին գահերէց էր Եպիսկոպոսն Կեսարիոյ, որ յետոյ Անտիոքայ անցեալ, ապա յաւուրս Մակարայ վերստին Եպիսկոպոսին Երուսաղեմի մնայր գահերիցութիւնն Պաղեստինու. և Ակակիոս ընդ իշխանութեամբ Կիւրղի անկեալ, ոչ եւս հանդուրժեալ տանել կարէր այսմ. և մինչ զօրացանն արիանոսք, որոց յառաջընթաց էր Ակակիոս 'ի Պաղեստին՝ արկ զնա յաթոռոյն յանիրաւի:

Բողոքեաց սուրբն Կիւրեղ առ ժողովն Սելեւկիոյ զանիրաւութենէ Ակակեանց, և ընկալաւ 'ի ժողովոյն պատուով. բայց ո՛չ յաջողեցաւ դառնալ յաթոռն անդրէն. զի Ակակիոս եհաս փութով 'ի Կոստանդնուպօլիս առ Կոստանդ կայսր արիոսական, և հրամանաւ նորին ունայնացոյց զժողովոյն վճիռ. և մնաց սուրբն Կիւրեղ 'ի վտարանդութեան ցմահն Յուդայ-Կիւրղի:

Զկնի նահատակութեան Յուդայ-Կիւրղի (որ տեսցի 'ի ստորեւ) որ 'ի հրամանէ Յուլիանոսի, վերստին հաստատեցաւ յաթոռն իւր, և կառավարեալ յայս նուագ այլ եւս ամս հինգ՝ անկանի վերստին: Զի թէպէտ Ակակիոս մեռեալ էր յայնժամ, բայց զի թագաւորեաց Վաղէս արիոսական, և եւս առաւել զօրացան Ակակեանք, և դրդեցին զկայսրն աքսորել զամենայն ուղղափառ հարս, ընդ որս և զսուրբն Կիւրեղ: Յայսմ վտարանդութեանն Կիւրղի նստուցին Ակակեանք զայլս ոմանս յաթոռն Երուսաղեմի, զորս տեսցես 'ի կարգին:

Ապա յորժամ յաջորդեաց Վաղեսի (379) մեծն Թէոդոս, դարձոյց զուղղափառ հարս 'ի յաքսորանացն. ընդ որս և զսուրբն Կիւրեղ. որ յետ երկուց ամաց վերստին հաստատեցաւ յաթոռն իւր հրամանաւ Ս. ժողովոյն Կոստան-

դնուպօլսի (*) որպէս և այլ սուրբ հայրապետք ։ յԱյս անգամ ևս վարեալ զիշխանութիւնն ամս եօթն վախճանի սուրբն Կիւրեղ ամաց եօթանասնից ։ որով և ամենայն ամք իշխանութեան սորա լինին ամք վեշտասանք (16)։ և վտարանդութեանն ժամանակ լինին ամք իննեւտասն ։

44°. Եւթիմէոս կամ Եւտիքէոս յաջորդէ զաթոռն 355
յառաջնում անկմանն Կիւրղի 'ի ձեռն Ակակիոսի ։ ամք իշխանութեան սորա մնան անորոշ ։

45°. Կիւրեղ-Երինոս Բ. յաջորդէ Եւթիմէոսի ։ անյայտ է թէ երբ և որչափ իշխեաց ։

46°. Հերակլիոս կամ Հերեննիոս կալնու զաթոռոյն իշխանութիւն զկնի Կիւրղի Երինոսի ։ սոքա երեքին չորս ամ և եթ վարեցին չարաչար զաթոռոյն իշխանութիւն ընդ ձեռամբ Ակակեանց արիոսական աղանդով ։ Ապա յետ այոց չորից ամաց յամի 359 'ի խնդրոյ ժողովրդեան զՑուդա Կիւրեղ եդին Ակակեանք յաթոռն պատրիարքութեան ։

Միխայէլ ասորի 'ի գաւազանագիրս իւր , յառաջ քան զսոսա դնէ զԱկակիոս նստեալ յաթոռն ։ բայց ոչ այնպէս ։ այլ միայն զի յայնոսիկ աւուրս մինչեւ ցժողովն Կոստանդնուպօլսի բռնացեալ արիոսականաց , բռնանային և 'ի վերայ Երուսաղեմի Ակակիոս և իւրքն , և ընդ

---

(*) Ի Տիեզերական պատմութիւն Ցովսեփայ Գաթրճեան հտ. Բ. էջ 356. գրէ առ ժողովն Կոստանդնուպօլսի Պետրոս եպիսկոպոս Երուսաղեմի , եղբայր Գրիգորի Նիւսացւոյ ։ որ յայտնի սխալանք երեւի առեալ յաղաւաղ իմն օրինակէ ։ զի Խորենացին յերրորդ գիրս անդ 'ի գլ. լգ. դնէ Կիւրեղ եպիսկոպոս երուսաղեմի. եւ չյիշէ զպետրոսդ , որպէս եւ այլք ։ Նաեւս 'ի պատմութեան տիեզերական ժողովոց Հ. Պօղոսի ։ էջ 119. գրի Պետրոս եպիսկոպոս Սեբաստիոյ՝ եղբայր Գրիգորի Նիւսացւոյ ։ ուստի եւ ըստ մեզ հերքելի է իրաւամբ , որպէս եւ այդ անուն չգտանի առ օրինակս մեր , ոչ առ լատինս եւ ոչ առ յոյնս ։

44°. Զսա Մարինոս դնէ Եւթիմէոս ։ վարք սրբոց. հտ. Բ. Եւտիքէոս երկոքին եւս առանց ժամանակագրութեան ։

45°. Մարինոս ։ Գաւազանագիր յունաց ։ Միխայէլ զսա Ակակիոս գրէ ։

46°. Գաւազանագիր յունաց ։ Վարք սրբոց ։ հտ. Բ. էջ 407.

ձեռամբ իւրեանց կարգէին զպատրիարքունս Երուսաղեմի։

359 47՛. Յուդա Կիւրեղ Գ. զկնի Հերակլիոսի յաջորդեաց զաթոռն 'ի խնդրոյ ժողովրդեանն 'ի չորրորդում ամի վը-տարանդութեանն Կիւրղի Երուսաղեմացւոյ (359)։

Սա առ գիւտիւ Խաչին յաւուրս Հեղինեայ հաւատաց 'ի Քրիստոս. և մկրտեալ ձեռնադրեցաւ 'ի Ս. Մակարայ յԵպիսկոպոս 'ի մի գաւառացն Երուսաղեմի (327). և ապա 'ի ծերութեան հասակի բարձրացաւ յայս պատիւ պատրիարքութեան. և կառավարեալ զամս երիս (3) ևեթ, նահատակի 'ի Յուլիանոսէ հանդերձ մօրբն իւրով (362)։ Յետ մահուն սորա Կիւրեղ Երուսաղեմացի ընկալաւ զիշխանութիւնն։

367 48°. Եւսեբեան. Սա կալաւ զաթոռն յերկրորդում անկմանն Կիւրղի Երուսաղեմացւոյ առ Վաղեսիւ կայսերբ. անյայտ է թէ որչափ ինչ ժամանակ տեւեաց իշխանութիւն իւր։

49°. Դամասոս զկնի Եւսեբեանու. սորա և նախորդին իւրում ամք իշխանութեանն հաշուին երկոտասան ամ (12)։

387 50՛. Սուրբն Յովհաննէս Բ. որ առ Հայս Յովհան հայրապետ վերաձայնի. սա վարեաց զիշխանութիւն աթոռոյն զամս երեսուն (30) ամենայն սրբութեամբ վարուց. զորմանէ տեսցեն բանասէրք 'ի վարս սրբոց, 'ի ճառ ընտիրս։

417 51°. Պրայիլոս կամ ըստ ոմանց Պրուիլոս. յաջորդէ զաթոռն զկնի մահուան Յովհաննու հայրապետի 'ի նմին իսկ ամի. և վարեալ զիշխանութիւնն ամս եօթն (7), վախճանի։

Յաւուրս (420) սորա Սուրբն Մեսրովբ հայրապետն մեր (Թարգմանիչն) գայ յԵրուսաղէմ (*) յերկրպագութիւն

---

47°. Մարինոս։ Գաւազանագիր յունաց։ Միքայէլ։ Ա. յիշատակարան։ Վարք սրբոց։

48°—49°. Միքայէլ։ Ա. յիշատակարան վանաց։

50°. Ա. յիշատակարան։ Մարինոս։ Գաւազանագիր յունաց։ Միքայէլ։ Վարք սրբոց։

51°. Ա. յիշտկրն։ Մարինոս։ Գաւազանագիր յունաց։ Միքայէլ։

(*) Մովսէս Կաղանկատուացի. հտ. Ա. էջ. 180. տիպ Փարիզ.

տնօրինական Ս. տեղեացն Քրիստոսի. անորոշ թողու-
պատմիչն թէ յորում ամի եկն, բայց հաւանական երեւի
զինէս, յորժամ առաքեցաւ 'ի Սրբոյն Սահակայ առ փոքրն
Թէոդոս. և կատարեալ զուխտ երկրպագութեան, դառ-
նայ 'ի Հայս և 'ի յԱղուանս։

52°. Ջիովինալոս կալաւ զաթոռն զամս չորս (4)։ 424

53°. Յոբնաղ. կալաւ զաթոռն պատրիարքութեան Ե- 428
րուսաղեմի. սա գնաց 'ի կրկին ժողովս Եփեսոսի, և յե-
տոյ 'ի ժողովն Քաղկեդոնի։ Յորժամ դարձաւ 'ի ժողովոյն
Քաղկեդոնի յաթոռն իւր, յետ սակաւու անկաւ յաթո-
ռոյն զի ընկալեալ էր զժողովն Քաղկեդոնի։ Այս յամի
455 հրամանաւ Մարկիանոսի կայսեր վերստին հաստա-
տեցաւ յաթոռն իւր. և վարեաց զիշխանութիւնն այլ եւս
երկու ամ. որով իշխանութիւն սորա լինի ընդ ամենայն
քսան և եօթն (27) ամ։

54°. Թէոդորոս Ա. կալաւ զիշխանութիւն աթոռոյն 453
երկու ամ յանկմանն Յոբնաղայ. և 'ի հաստատիլն Յոբնա-
ղայ վերստին, անկանի յաթոռոյն։

55°. Անաստաս, զկնի մահուան Յոբնաղայ ընտրի յա- 458
թոռն պատրիարքութեան, և կացեալ 'ի նմին ամս երիս,
(3) վախճանի։ Զսա Մարինոս Աթանաս անուամբ կո-
չէ, բայց մեք բազմաց հետեւեցաք։

56°. Մարտիրոս Ա. նստի յաթոռն ամս եօթնեւտասն 461
(17)։ Զսա Մարթինոս անուանէ Մարինոս։

57°. Սեղուստիոս կամ Սալուստիոս իշխէ ամս եօթն (7)։ 478

58°. Եղիա Ա. վարէ զիշխանութիւն աթոռոյն ամս 485
եօթնեւտասն (17)։ Յաւուրս սորա տարածանի խռո-
վութիւն 'ի Քրիստոնեայս յԵրուսաղէմ և յամենայն տե-
ղիս 'ի պատճառս Քաղկեդոնի ժողովոյն։

---

52°—56°. Մարինոս։ Գաւազանագիրք յունաց։ Միքայէլ։ Ա. յիշատակարան։

54°—55°. Միքայէլ եւ Ա. յիշատակարան վանեցոց տարբեր անուամբ յիշատակեն զսոսա. եւ զթիւ ժամանակաց սոցա չփոխե-լով ընդ Յոբնաղայն, զերեսուն ամ դնեն զիշխանութիւն նորա. յորոց զատայցն երգաք մեք աստէն։

57°. Մարինոս։ Միքայէլ։ Գաւազանագիրք յունաց։ Ա. յի-շատակարան։

502 59'. Յովհաննէս Գ. (*) կառավարեաց զաթոռն զմետասան (11) ամ. զսա դաշամբ (**) հաստատէ յաթոռն պատրիարքութեան Անաստաս կայսրն Յունաց, զի մի ընկալցի զժողովն Քաղկեդոնի, ընդ որ ոչ էր հաճեցեալ ինքն Կայսրն, ուպէս և նախորդն իւր Զենոն կայսր, որ քսան և երկու ամաւ յետոյ քան զժողովն նստաւ յաթոռն կայսերական:

513 60°. Պետրոս Ա. որ յիշի երբեմն Յուստոս, կամ Պետրոս-Յուստոս, որպէս լատինք անուանեն սովորաբար. վարեաց զիշխանութիւն աթոռոյն զեօթն (7) ամ:

520 61°. Մակար Բ. կամ Մակարիոս (***) կալնու զաթոռոյն իշխանութիւն զքսան և վեց (26) ամ:

Յաւուրս սորա Գրիգոր Եպիսկոպոսն Արծրունեաց ('ի Հայոց) 'ի բազմադիմի նեղութենէն զոր նեղէր 'ի Յունաց յԵրուսաղէմ, դրէ Թուղթ (***) առ Նախարարս Հայոց 'ի Հայաստան, եթէ ստիպեն Յոյնք զՀայս փոխել զտօն Ծննդեանն 'ի դեկտեմբերի 25, և զՏեառնընդառաջին 'ի փետրուարի 2:

Ընդ այս ժողովեալ Հայոց գումարս դրամոց եօթն կենդինար, որ հաւասարի եօթանասուն հազար դահեկանաց, առաքեն առ Յուստինոս կայսրն 'ի Կոստանդնուպօլիս, խնդրելով գրել յԵրուսաղէմ չնեղել զՀայս ընդ որս և զԱղուանս: Եւ կայսերն գրեալ առ այս Մակար

---

(*) Ոմանք յօրինակաց մերոց 49°. դնեն զսա. որոյ պատճառն ոչ այլ ինչ է, եթէ ոչ զի չյիշեն զումանս 'ի պատճառս արխտականութեան:

61°. Մարինոս: Միխայէլ: Գուգնդիր յունաց: Ա. յչտկրն:

(*) Վարք սրբոց 'ի ծանօթութիւնսն:

(**) Զամանէ գրէ Միխայէլ ասորի եթէ բազում նեղութիւնս կրեալ իցէ վասն ուղղափառաց. ուստի երեւի 'ի պատճառս նեղութեանցն ընկալեալ ապա զժողովն Քաղկեդոնի զկնի մահուն Անաստասայ կայսեր, զորմէ անտեղեակ է Միխայէլ:

(***) Ի ստորագրութիւնն Երուսաղեմի էջ 64. գրի 'ի Թղթի յայսմիկ սուրբն Մակար, զառաջինն ակնարկելով. բայց յայտնի սխալ է այս. զի սուրբն Մակար յաւուրս կոստանդիանոսի էր առ գիւտիւ Խաչին:

ըստ խնդրանաց Հայոց, սակայն ինչ դիւր լինէր նոցա ։
Դարձեալ յաւուրս սորա (530)․ գրի առ Մովսիսիւ
Կաղանկայտուացւով (*), թէ պատրիարքունք Յունաց որ
յԵրուսաղէմ, արգելուլին զեպիսկոպոսունս Հայոց 'ի
ձեռնադրելոյ ։

62'. Եւստաթէոս կամ Եւստաքէոս վարէ զիշխանու- 546
թիւն աթոռոյն ամս երկու (2) ։ Յաւուրս սորա անպակաս
էր վէճն Յունաց ընդ Հայոց 'ի պատճառս կրօնի ։

63°. Յովհաննէս Դ․ առ սա առաքեաց Եղեսպոլամ 548
արքայ (**) Եթէովպացւոց այն է Հաբէշից զթագ գլխոյն
իւրոյ կախել 'ի վերայ գերեզմանին Քրիստոսի, 'ի շնոր-
հակալութիւն յաղթութեանն զոր տարաւ 'ի վերայ Դով-
նասայ Հրէի առ Յուստինոսիւ կայսերաւ ։

Յաւուրս սորա լինի երկրորդ ժողովն Կոստանդնու-
պօլսոյ (***) յաղագս տարաձայնութեանցն որ վասն ժողո-
վոյն Քաղկեդոնի ։

Վարեալ սորա զիշխանութիւնն զքսան և եօթն (27)
ամ, ապա վախճանի ։

64°. Ամովս․ զկնի Յովհաննու նստի յաթոռն զամս 575
տասն և ինն (19)։

---

(*) Պատմ․ Մովս․ Կաղան․ տպեալ 'ի Փարիզ․ էջ 424։

62°. Գաւազանագիր յունաց ։ Մարինոս ։ Միխայէլ ։ Ա․ յշտկրն ։

63°—65°. Մարինոս ։ Միխայէլ ։ Ա․ յիշատակարան ։ Գաւազանագիր յունաց ։ Վարք սրբոց հտ․ Բ․ 'ի ծանօթութիւնսն էջ 426։

(**) Յայսմաւուրս․ յաղագս պատերազմին Դովնասայ Հրէի յԵթովպիա ։

(***) Ի ժողովի աստ յիշի առ Տաթեւացւոյն ('ի գիրս հարցմանց) Նեստիքէս անուն ոմն Պատրիարք Երուսաղեմի առ Յուստինիանոսիւ 'ի հինգերորդ ժողովն տիեզերական․ այս Նեստիքէս ոչ յիշի եւ ոչ առ միում յօրինակաց մերոց ։ Եւ գիտելի է զի զոր ասէ Տաթեւացին Յուստինոս, զԹրակացին ակնարկէ․ եւ հինգերորդն ժողով եղեւ առ Յուստինիանոսիւ Լիւրիկեցւով քսան եւ եօթն ամաւ յետոյ քան զԹրակացին․ եւ զի զժամանակն ոչ դնէ որոշակի, ոչ ստուգի ճշմարտիւ ։ Եւ կարծի հաւանականագոյն թէ եպիսկոպոս ոմն փոխանորդաբար գնացեալ իցէ 'ի ժողովն 'ի կողմանէ Յովհաննու ։

594 65°. Սահակ Ա., վարէ զիշխանութիւն աթոռոյն ամս ութն (8)։ Զսա Մարկոս Եւսեբիոս անուանէ և ասէ 'ի Լատինաց լինել, սակայն առ այլ պատմագիրս ոչ ոք տեսանի յայսմ ժամանակի յԵրուսաղէմ 'ի Լատինաց և ոչ առաջնորդ անուամբ, թող թէ պատրիարք. վասն որոյ կարծելի է թէ գուցէ այլ ոք վրիպագրեալ իցէ 'ի վանաբայս այսու անուամբ։

602 66°. Զաքարիա Ա. յաջորդէ զաթոռն պատրիարքութեան։

Յերկոտասաներորդում ամի իշխանութեան սորա (614) առեալ Պարսից զԵրուսաղէմ քաղաքն կոտորածովք, գերեցին ոգիս իբրեւ հարիւր հազար, ընդ որս և զխաչափայտն Քրիստոսի և զԶաքարիա պատրիարքն իսկ, որ մնացին 'ի գերութեան զչորեքտասան ամ։

Ի գերութեանն Զաքարիա Մոդեստոս ոմն երէց (*) կառավարէ զաթոռն փոխանորդութեամբ կամ տեղապահութեամբ. 'ի գաւազանագիրն յունաց դասի և սա ընդ պատրիարքունս, զոր զանց առնեն այլք ամենայն որպէս և մեք, զի ոչ եթէ պատրիարք եկաց սա, այլ տեղապահ միայն 'ի գերութեանն Զաքարիայ։ Նաեւս ազգային մատենագիրք եւս զսա երիցապետ անուանեն (**)։

Գտանի գիր մի (***) գրեալ 'ի սմին իսկ Մոդեստոսէ 'ի Հայս առ Կոմիտաս կաթուղիկոս, յորում պատմին անցքն Երուսաղէմի գերի վարելն հայրապետին, կոտորածն մեծ, և աւերումն վանորէից։ Առ որ գրէ կաթուղիկոսն պատասխանի մխիթարական 'ի սփոփանս վշտացելոցն, խոստովանելով 'ի սէր առ միմեանս (զՅոյնս և զՀայս), վարել եղբայրաբար։

Ապա 'ի դարձուցանելն Հերակլեայ զխաչափայտն 'ի Պարսից (629), վերադառնայ և Զաքարիա յաթոռն իւր.

---

66°. Մարկոս. Միխայէլ. Ա. յիշատակարան։

(*) Պատմութիւն Սեբէոսի Բագրատունեաց եպիսկոպ. էջ 131–139.

(**) Տարեգրութիւն Սմբատայ տպեալ 'ի Փարիզ. էջ. 116. Թովմա Արծրունի. էջ. 98։

(***) Պատմութիւն Սեբէոսի Եպիսկոպոսի Բագրատունեաց ....

յորում ամի իսկ 'ի վերայ հասեալ մահու վախճանի, կացեալ պատրիարքութեամբ ընդ ամենայն ամս քսան և եօթն (27) ։

67'. Սոփրոնիոս. յաջորդէ զաթոռն ամս ինն (9) ։ 629

Յաւուրս սորա յամին 635 կամ 637 Խալիֆայն Հագարացւոց Էօմէր Խատտապ Ապըտըլմըթլիբն անուանեալ առնու զԵրուսաղէմ և շինէ 'ի տեղւոջ տաճարին Սողոմոնի մզկիթ յաղօթատեղի ազգին իւրոյ ։

Այս Սոփրոնիոս վերջին է պատրիարքացն որ յեկեղեցւոյն հեթանոսաց նստէին խառն յամենայն ազգաց քրիստոնէից ընդհանուր իշխանութեամբ, զի 'ի 138 թըւականէ մինչ 'ի 637 թուականն 'ի հեթանոսաց եկեղեցւոյն նստան պատրիարքունք արք յիսուն և երկու ('ի բաց առեալ զանյայտսն). զմիջոց 499 ամաց ։ Ապա այնուհետեւ բաժանեցաւ պատրիարքութիւնն Երուսաղեմի յիւրաքանչիւր ազգս 'ի Հայս. 'ի Յոյնս, որ և յետ ժամանակաց 'ի Լատինս, զորոց թողլով մեր զայլոցն պատմութիւն ինքեանց երկասիրել, սկսանիմք այսուհետեւ միայն զպատրիարքունս ազգիս Հայոց նշանակել 'ի յերկրորդ գիրս ։



67°. Գաւազանագիր յունաց ։ Մարինոս ։ Ա. յիշատակարան ։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## ԿԱՐԵՒՈՐ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ԱՌԱՋԻՆ ԳՐՈՑ

## ՅԱՂԱԳՍ ՀԵՂԻՆԵԱՅ ԿՆՈՋՆ ԱԲԳԱՐՈՒ ԴՇԽՈՅԻՆ ՀԱՅՈՑ



*Ծանօթութիւն 1°.* Որպէս համառօտիւ 'ի կարգի պատմութեանն գրեցաք, աստէն եւս փոքու ծանօթութիւնս տալ արժան համարիմք զՀեղինեայ դշխոյէն Հայոց ։

Աստուածասէր դշխոյս Հայոց Հեղինէ կինն Աբգարու մեծի, եկն յԵրուսաղէմ յամի 42. 'ի ժամանակս սովուն՝ որ առ Կղօդեաւ. և բացեալ զգանձս իւր առատաձեռն ողորմութեամբ կերակրէր զժողովուրդն Երուսաղեմի առ հասարակ, որպէս ժամանակակիցքն աւանդեն մեզ ստուգապէս պատմութիւնք ։ Նա՝ որպէս և ըստորագրութիւնն Երուսաղեմի հանեալ զպէսպէս գործս սորա՝ որ յԵրուսաղէմ, 'ի հին յիշատակարանէ թարգմանելոյ 'ի Քաղդէացւոց դնէ մի ըստ միոջէ, որ հաւաստին է աներկբայապէս ։ Աստէն և մեք որոշեցուք զգործս սորա, զոր վերջինք 'ի պատմագրաց յանհմտութենէ ժամանակագրութեանցն այլոց ետուն ։

Արդ բազումք 'ի վերջնոց պատմագրաց զսկզբնաւորութիւն շինութեանցն 'ի սուրբ տեղիս յԵրուսաղէմ, ընծայեն Հեղինեայ մօր Կոստանդիանոսի մեծի. զորմէ եթէ փոքու 'ի քննութիւն մտցին միտք, դիւրագոյնս տեսցեն զանստուգութիւնն ։ — Քննեսցուք ։

Հեղինէ մայրն Կոստանդիանոսի եկն յԵրուսաղէմ յամի 320 կամ 327. եթէ ցայն վայր ո՛չ էր շինեալ սուրբ տեղեացն կամ գոնէ նշան ինչ չէր 'ի միջի, ո՞րպէս կարելի եղեւ գտանել նմա և ճանաչել զտեղիսն տէրունականս, որ 'ի նախանձուէ Հրէիցն ծածկեալք լինէին արդեօք, որպէս խաչափայտն էր ։

Նախքան զՀեղինէ մայրն Կոստանդիանոսի, բազումք են պատմութիւնք, որ լինելոյ շինութեանց 'ի սուրբ տեղիս վկայեն. որպէս Հենրիկոս Գանիսիոս աբբայ պատմիչն սուրբ երկրին. և Պարոնիոս նորին քննիչ, և այլք. որ գրեն շինեալ զսուրբ տեղիս յառաջագոյն քան զԱդրիանոս կայսր։ Արդ Ադրիանոս էառ զԵրուսաղէմ յամի 124 կամ 136. յորում ժամանակի շինեալ իսկ էին սրբազան տեղիք անօրինութեան Փրկչին. ապա վխարդ լիցի զսկիզբն շինութեան սուրբ տեղեաց ընծայել Հեղինեայ մօրն Կոստանդիանոսի, որ չէր և ոչ յաւուրս Ադրիանոսի. և ոչ իսկ հայր նորա հաւն Կոստանդիանոսի էր ծնեալ յաշխարհ. այսպէս ահա ճշմարտի սկիզբն շինութեան սուրբ տեղեացն յառաջ քան զԿոստանդիանոս և զմայր նորա լինել. և այն 'ի ձեռն Հեղինեայ դշխոյին Հայոց կնոջն Աբգարու մեծի արքայի։

Նաև ս գիտել արժան է, զի Մարինոս Լատին կրօնաւոր պատմիչ Երուսաղէմի ոչ կամի ընդունիլ զշինութիւնս սուրբ տեղեացն նախ քան զՀեղինէ մայրն կայսեր լինել. զի 'ի պատմելն զգրեալսն Հենրիկոսի աբբայի, անհաւան ցուցանէ զինքն, և Հեղինեայ տայ զսկիզբն շինութեան սուրբ տեղեաց. յորմէ ապա և այլոց առեալ այնպէս ծանուցին աշխարհի, ոչ առաջի ունելով քննաւորաց։ Այս իսկ է 'ի միջի, զի այս բան Մարինոսի հակառակ բանիցն, որ ասէ 'ի գիրս իւր, եթէ Ադրիանոս կործանեալ զԵրուսաղէմ, 'ի սուրբ տեղիս կանգնեաց զպատկերս կռոց, որպէս ցուցաք 'ի տեղւոջն. յայսմ բանի ակն յանդիման երևի եթէ էին 'ի վերայ սուրբ տեղեաց մատուռնք, տաճարք աղօթատեղիք և՞ կամ այլ շինութիւն, յորս կանգնեաց Ադրիանոս զարձանս դից։

Եւ արդ շինութիւն և տաճար կամ մատուռն 'ի սրբազան տեղիս Հեղինէ դշխոյն Հայոց կանգնեաց յաւուրս Յակոբայ Տեառնեղբօր զառաջինն յամին Փրկչին 42-50. և շինութիւնք իւր են 'ի վերայ սրբոյ Գերեզմանի Փրկչին. 'ի վերայ Գողգոթային 'ի տեղւոջն Խաչելութեան. 'ի լերինն Ձիթենեաց. 'ի տեղւոջն Համբարձման. 'ի Բեթղեհէմ 'ի տեղւոջն Ծննդեան Քրիստոսի. և 'ի լերինն Սիոնի, 'ի վերայ ուր Թաղեցաւն գլուխ

Յակոբայ Զեբեդեայ սրբազան առաքելոյն ։ Եւ ապա յամին 49-50 մեռանի սրբութեամբ վարուց յԵրուսաղէմ և թաղի առ դրան քաղաքին որ 'ի հիւսիսակողմն , և 'ի բարբառ հասարակաց որ կոչի դուռն Դամասկոսի ։

Իսկ Հեղինէ մայրն Կոստանդիանոսի եկն յԵրուսաղէմ, 'ի չորրորդ դարուն առ պատրիարքութեամբն սրբոյն Մակարայ Ա. յորոյ 'ի ձեռն գտաւ սուրբ խաչափայտն առաջնորդութեամբ Յուդայի ուրումն Հրէի , որ յետոյ եկաց պատրիարք Երուսաղէմի Յուդա Կիւրեղ անուամբ , որպէս և 'ի կարգին տեսաւ ։ Նաեւ 'ի ձեռն սորա շինեցաւ տաճարն սրբոյ Յարութեան հրամանաւ Կոստանդիանոսի և Տրդատայ մեծի արքայից , և 'ի տաճարին առաւ նաեւ մատուռն Գողգոթայի . և Գերեզմանն Կոստանդիանոսի , և Գողգոթայն Տրդատայ բաժին համարիւր . զմանէ բազումք 'ի պատմագրաց վկայեն . որպէս և Տաթեւացին և Վարդան պատմիչ և Կիրակոս . իսկ եթէ պատմութիւնք այլոց ազգացն չպատմեն զայսոսիկ , հաւաստեաւ առ նախանձու է այն . որպէս և յաւուրս մեր իսկ այս ազգ զտեղիս սեփականս այլոց գրաւեալ , դուն գործէ ծանուցանել աշխարհի եթէ ոչ ինչ իրաւունք են նոցա 'ի տեղւոջն , այլ յանիրաւի մուտ գործեալ 'ի յայսպիսս . և յետ սակաւ ժամանակաց , մինչ սկսանի տակաւ մոռացումն և պակասին 'ի կենաց Ծերք ժամանակին , այնուհետեւ բոլորովին կարծեցուցանեն թէ իւրեանց հին սեպհականութիւնք են . որպէս զամենայն սեպհականութիւնս Վրաց որ 'ի սուրբ տեղեաց , գրաւեալ են Յոյնք . և ասեն ոչ լինել երբէք Վրաց սեպհականութիւն 'ի սուրբ տեղիս յԵրուսաղէմ ։



## ՅԱՂԱԳՍ ՍԻՄԱՔՈՍԻ ԵՒ ԳԱՅԻՈՍԻ Բ.



*Ծանօթութիւն 2°.* Արժան է գիտել զի Զենոբ Գլակ 'ի պատմութեան իւրում անդ Տարօնոյ, գրէ վասն այսր Սիմաքոսի և յաջորդի նորին Գայիոսի Բ. (էջ 32-35) առեալ իբր 'ի Նամակէ Բեկտորի ուրումն գրեալ առ սուրբ Գրիգոր Լուսաւորիչն մեր. ծանուցանելով 'ի թղթի անդ թէ յաւուրսն յայնոսիկ յԵգիպտոսէ յԵրուսաղէմ գայր Բեկտոր ընդ Գայիոսի. և յայնոսիկ աւուրս իսկ հասեալ 'ի վերայ մահուն Սիմաքոսի պատրիարքին Երուսաղեմի, զԳայիոս 'ի տեղի Սիմաքոսի հաստատեալ իցէ 'ի Պատրիարք Երուսաղեմի:

Թէպէտ այս ստոյգ է, զի Գայիոս յաջորդեաց զՍիմաքոս, բայց ո՛չ յաւուրս Լուսաւորչին մերոյ. զի նա յաջորդէ Սիմաքոսի 'ի վախճան երկրորդի դարուն հաւանականաբար յամի 170-180. իսկ Լուսաւորիչն մեր յայտնի 'ի սկզբան անդ չորրորդի դարուն յամի 302. ուստի և ո՛չ կարէ Բեկտոր յայնմ ժամանակի այնպէս գրել առ Լուսաւորիչն մեր:



# ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ

# ՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

## ԳԻՐՔ ԵՐԿՐՈՐԴ

## ՑՕԴՈՒԱԾ ԱՌԱՋԻՆ

### ԴԱՐ ԽՕԹՆԵՐՈՐԴ

ԱՄՔ ՏԵԱՌՆ

68՝. **Աբրահամ Ա.** *սա առաջին (*) է առանձինն պատրիարքաց Հայոց յԵրուսաղէմ։ Նստի յաթոռն Երուսաղեմի յերկրորդում ամի առման Երուսաղեմի յԷօմէրայ Խատտապէ ։* 637

*Յաւուրս սորա եղեւ վէճ ոչ սակաւ 'ի վերայ աթոռոյն պատրիարքութեան . քանզի 'ի մեռանել Սոփրոնիոսի յոյնի ժամ պատեհ գտեալ Հայոց եդին իւրեանց առանձինն պատրիարք զսոյն այս Աբրահամ հրամանաւն Էօմէրայ յեցեալ 'ի վաղեմի իրաւունս իւրեանց. զի որպէս յիշեցաք 'ի վերոյ քանիցս զկնի հնգետասանիցն Եպիսկո-*

---

68°. *Երկրորդ յիշատակարանն. որպէս 'ի յառաջաբանի անդ ասացաք թէ այս Բ. յիշատակարան բաղկանայ 'ի հատուածոց գրուածոց ժողովեալ, ահա եւ զսմանէ վկայեն կրկին հրովարտակքն որոց զմին յԷօմէրայ եւ զմիւսն յԱլիայ առեալ են յետ ժամանակաց ։*

(*) *Ի միում անծանօթ թղթի գրի թէ յառնուլն Էօմէրայ զԵրուսաղէմ, ընդ առաջ գնացեալ նորա երկուց պատրիարքացն (որպէս թէ Հայոց եւ Յունաց) եւ դաշինս եդեալ, առեալ են զքաղաքն 'ի նմա. յորմէ կարծիս առին ոմանք եւ յաւուրս վերայիշեալ Զաքարիայ եւ Սոփրոնիոսի Յոյն պատրիարքացն լինել եւ միւս եւս պատրիարք Հայոց յառաջ քան զայս Աբրահամ. 'ի սա-*

· պոսայ որ 'ի Հրէից հաւատացելոց նստան, այնուհետեւ խառն յամենայն քրիստոնէից ազգաց լինէր Եպիսկոպոսն. ապա զկնի ժամանակաց յաղագս ժողովոյն Քաղկեդոնի եղեւ վէճ Յունաց ընդ Հայս, և զի Երուսաղէմ ընդ իշխանութեամբ կայսերութեան նոցա էր, հարստահարեալ լինէին Հայք անդէն. և բռնացեալ 'ի վերայ իրաւանց Հայոց յազգէ իւրեանց կացուցանէին զՊատրիարքն զո և կամէին ։

Եւ իբրեւ յայսոսիկ աւուրս ըստ վաղեմնի սովորու-

---

ցանէ առեալ եւ մի ոմն պատմագիր Վանայցս յայսմ ժամանակի յաւուրս մեր դնէ զսկիզբն պատրիարքութեան Հայոց յաւուրց անտի Ա. Ամիրապետին Հագարացւոց Մուհամմէտի 'ի 622 թուականէ փրկչին. յորմէ եւս առեալ դնեն 'ի վերջ օրացուցին տպելոյ յԵրուսաղէմ։

Առ այս գիտելի է, զի պատրիարքդ անուն, բառ Յունաց գոլով ոչ այլ ինչ առաւելանս նշանակէ յեկեղեցւոջ Հայոց յԵրուսաղէմ, եթէ ոչ Արքեպիսկոպոս որք հրովարտակաւ քաղաքական իշխանութեան անդուստ անկախացեալ յայլոց ամենայն իշխանութեանց։ Եւ յաւուրս Մուհամմետայ (622) քաղաքական իշխանութիւնն Երուսաղեմի 'ի ձեռս կայսերացն Յունաց գոլով, կայսերութիւնն միայն Արքեպիսկոպոսին կամ պատրիարքին Յունաց տայր զայն պատրիարքական հրովարտակ. որք եւ գուն գործէին ստանալ զՀայս յԵրուսաղեմէ. պատմութիւնք ժամանակին բացորձակապէս ցուցանեն մեզ առաւել ընթերցասիրին, եթէ անկարելի էր Հայոց ունել զպատրիարք յԵրուսաղէմ յաւուրս կայսերացն Յունաց։ Նա՝ եւ եթէ էր պատրիարք Հայոց յայնոսիկ աւուրս, 'ի գերութեանն Զաքարիայ պատրիարքի 'ի Պարս, ոչ 'ի Մոդեստոսէ յայնէ առնոյր զտեղեկութիւն աւերմանցն եւ նեղութեանց եւ առ Մոդեստոս գրէր զնոյն պատասխանի միսիթարական Կաթողիկոսն Հայոց Կոմիտաս, այլ առ Պատրիարքն Հայոց գրէր արդեօք։ Ուրեմն անհիմն է առումն ոմանց սկզբնաւորութիւն պատրիարքութեան Հայոց յԵրուսաղէմ 'ի 622 թուականէ փրկչին լինել. այլ յայնժամ եպիսկոպոսունք միայն էին Հայոց, որոց ոչ տուեալ զհրովարտակ անկախութեան 'ի պետութենէ ժամանակին, ո՛չ պատրիարք յորջորջէին։ Մեք այսպէս զատք զասայցն, եւ այսպէս գրեցաք, զի ոչինչ փառք են պատրիարքութեան Հայոց, եթէ ասասցուք էր յայնժամ, յորժամ չէր, աւասիկ զճշմարիտն յարգեսցուք։

*թեանն հրաւամբ կացուցին Հայք պատրիարք յաթոռն, ոչ կարացեալ Յունաց տանիլ այսմ, և առ 'ի չհնազանդելոյ Հայ պատրիարքին, խնդրէին 'ի յԷօմէրայ Խատտապէ առանձինն պատրիարք կացուցանել իւրեանց, զոր ոչ ետ թոյլ նոցա, ուստի և զքսան և ինն ամ ոչ էր պատրիարք յունաց յԵրուսաղէմ. մինչեւ 'ի փոփոխիլ իշխանութենէ ամիրապետացն Հագարացւոց, զի և յաջորդք Էօմէրայ եւս զլացան Յունաց զառանձինն պատրիարքութիւն շընորհել: Այս այսպէս գրի 'ի պատմութեան (*) ինչ յԱրաբացի լեզուէ թարգմանեալ 'ի մեզ:*

*Ապա այնուհետեւ 'ի փոփոխիլ Ամիրապետացն յԵրուսաղիմէ կացուցին Յոյնք իւրեանց առանձինն պատրիարք, և բաժանեցաւ պատրիարքութիւնն Երուսաղեմի յերկուս, Հայոց և Յունաց. ուստի և մեր իսկ թողեալ զյաջորդութիւն պատրիարքացն Յունաց, զմերն և եթ շարունակեմք, հանդերձ պատմութեամբ երեւելի անցից և դիպաց որ յաւուրս նոցա:*

*Այս Աբրահամ զկնի մահուան Էօմէրայ Խատտապայ, ընդ յաջորդին իւրում Գրիգորի ստացեալ է զայլ եւս մի հրովարտակ յԱլեայ Ամիրապետէ 'ի 20 ամին Հիճրէթին, այն է 'ի 641, յորում յիշին անուանք սոցա Աբրահամ Եպիսկոպոս և Իսայ, որ է Գրիգոր. որ զկնի նստաւ յաթոռն պատրիարքութեան, որպէս տեսցի 'ի ստորեւ:*

*Եւ հրովարտակքն տուեալ պատրիարքաց մերոց 'ի պետութեանց ժամանակին. ցուցանեն և հրամայեն զանկախութիւն նոցին յայլոց պատրիարքաց, և զիրաւունս պաշտպանութեան միաբանական ուխտին սրբոց Յակոբեանց և ամենայն կալուածոց և ստացուածոց նորա. և Կրօնաւորացն Ասորւոց. Ղպտւոց և Հապէշից (Եթէովպացի խափշիկք) որք որպէս տեսանի յարքունի հրովարտակաց, յաւուրց անտի Էօմէրայ Ամիրապետի և այսր ընդ հովանաւորութեամբ պատրիարքութեան Հայոց գըտանին յԵրուսաղէմ. նաեւ նշանակին յայսպիկ 'ի հրո-*

---

(*) Պատմութիւն Թարգմանեալ յԱրաբացւոց յաւուրս Կիրակոս պատրիարքի (1847) եւ տպեալ 'ի Ստորագրութիւն Երուսաղեմի. էջ 14.

վարտակս և վասն Սուրբ տեղեաց, թէ ո՛յք ոմանք վե-րաբերին Հայոց առանձինն և ո՛յք ոմանք հաւասարաբար ընդ Յունաց և կամ ընդ Լատինաց ։ Եւս և նշանակին ՚ի սոսա հրաման կոչնակ հարկանելոյ յեկեղեցիս ։ Այ-սոքիկ հրովարտակ տուեալ են ամենայն պատրիարքաց . և մասնաւոր հրովարտակք ՚ի պատճառս մասնաւոր դի-պաց ՚ի ժամանակս ժամանակս նորոգեալք են ՚ի պետու-թեանց . որպէս և առ Սարգսիւ Գ. պատրիարքաւ նորո-գեցաւ ՚ի Տէրութենէն Օսմանեանց ։

Երկու հրովարտակք եւս են ՚ի Սուրբ Յակոբ, զորս ՚ի Մուհամմէտէ Առաջին Ամիրապետէ Հագարացւոց ըս-տացեալ են Հայք. զմին՝ յառաջին ամին Հիճրէթին (622) և զմիւսն ՚ի 4 ամի Հիճրէթին (626), յառաջ քան զա-ռումն Երուսաղեմի յԷօմէրայ. ստացող հրովարտակացս ոչ է յայտ բացորոշակի, այլ հաւանականաբար սոյն այս Աբրահամ կարծի լինել. որ թերեւս եպիսկոպոս Հայոց էր յԵրուսաղէմ յաւուրսն յայնոսիկ, և սմա տուաւ զա-ռաջինն հրովարտակ պատրիարքական ՚ի յԷօմէրայ Ամի-րապետէ ։

Զսա յիշէ եւս այլ պատմիչ արաբացի Շէյխ իւլ Համ-պալի անուանեալ, որ ՚ի ճանապարհորդութեան Շէյխի ու-րումն Մէքքէցւոյ գրէ այսպէս. “ եկեալ Շէյխին ՚ի Յոպ-պէ, և իջեւանեալ ՚ի վանս Հայոց յաւուրս պատրիարքի նոցա Աբրահամու. զի վանքն Յոպպէու ընդ իշխանու-թեամբ նորին Աբրահամու էր ” ։

Կեցեալ սորա յաթոռ իշխանութեանն ամս երեսուն և երկու (32) վախճանի ։ Թողլով իւր յաջորդ զԳրիգոր Եպիսկոպոս Եդեսացի ։

669 69°. Գրիգոր Ա. Եզեկիէլեան եդեսացի. յաջորդէ զաթոռն պատրիարքութեան զկնի մահուն Աբրահամու. սա ինքն է Իսայն նշանակեալ ՚ի հրովարտակին Ալեայ ա-միրապետի. զի Իսայդ անուն կրկնակի թարգմանի, այն է Գրիգոր Յարութիւն. զոր յիշատակարանք ստուգեն Գրի-գոր լինել ։ Կեցեալ սորա յիշխանութեան ամս քսան և եօթն (27). վախճանի ։

---

69° Բ. յիշատակարան ՚ի հատուկոտոր գրուածոց ։

70. Գէորգ. յաջորդէ զաթոռն պատրիարքութեան 696
զկնի մահուն Գրիգորի, և վարեալ զիշխանութիւն ամս
երկոտասան (12), վախճանի։

71. Մկրտիչ Ա. զկնի մահուն Գէորգայ յաջորդէ զա- 708
թոռն ամս քսան և երկու (22)։

Յաւուրս սորա տաստկանայր 'ի քրիստոնեայս վէճն վասն ժողովոյն Քաղկեդոնի, մանաւանդ յԵրուսաղէմ 'ի Հայս և Յոյնս. վասն որոյ և յաջորդացն սմանց ոչ միշտ պատրիարք գրի անուն. այլ երբեմն առաջնորդ, երբեմն Եպիսկոպոս Երուսաղէմի, և երբեմն Առաջնորդ վարդապետ. զայս ընթացք մինչ վերջատասներորդ դարն ևս երևի վասն որոյ չէ երկմտելի, թէ չէին պատրիարք։

72. Յովհաննէս (*) Ե. յաւուրս յայսոսիկ նստի յա- 730
թոռ պատրիարքութեան. յետ ննջման Մկրտչի, և կաց-
եալ յիշխանութեան զամս քսան և ութ (28), վախճանի։

Մարինոս Լատին պատմիչ Երուսաղէմի գրէ վասն այսր Յովհաննու, այրեալ 'ի ստուրք Յարութեան տաճարի յԱրաբացւոց անտի. իսկ մերս յիշատակարանք զլռեալ այսմ. թէպէտ նա յայլ միում խօսի, իբր զի այս Յովհաննէս իցէ պատրիարք Լատինաց. բայց յայտ է զի յառաջ քան զառումն Երուսաղէմի 'ի խաչակիր զօրաց, որ յամի 1099. չէր ոք պատրիարք կամ առաջնորդ անուանք 'ի Լատինաց անտի յԵրուսաղէմ, իսկ զկնի առման խաչակրաց, յորժամ ընդ իշխանութեամբ նոցա էր Երուսաղէմ, 'ի հարկէ առանց առաջնորդի չմնային, որպէս գրէ Տանվիլ. 'ի տեղեկագրութեանն Երուսաղէմի, յառնուլն Գոտիֆրէդոսի ասէ՝ զԵրուսաղէմ եդաւ առաջնորդ, Տայիպէր Պեղացի. որպէս երևի 'ի բանիցն, չգոյր յառաջ քան զայն ոք պատրիարք կամ առաջնորդ յազգէ անտի Լատինաց որպէս 'ի վեր անդր յիշեցաք 'ի տեսանելն; 'ի գրուածս ինչ առաջնորդ կամ եպիսկոպոս ոք որ յԵրուսաղէմ իցէ լեալ՝ պատրիարք անուն եդեալ յիւրեանս

---

71° Բ. յիշատակարան 'ի հատուկատր գրուածոյ։

(*) Երկրորդ յիշատակարան. Մարինոս՝ զի յօրինակացն մերոց որ անդր 'ի վեր նշանակեցաք, զանուանս սոցա անուամբն յիշեմք։

սեպհականէ խուրաքանչիւր ոք. որպէս լատին պատմիչն արարեալ է, նոյնպէս առնէ և յոյնն։

758 73°. Ստեփաննոս (*) յաջորդեալ Յովհաննու զկնի վախճանի նորա իշխէ աԹոռոյն պատրիարքուԹեան ամս վեշտասան (16)։ Յաւուրս սորա զօրացեալ էր պատկերամարտուԹիւնն որ և յոմանց, որպէս երևի 'ի յունաց անտի. բազում վիշտս կրեաց սա վասն չանարգելոյն զպատկերս սրբոց, որպէս և հրամայեալ էր կայսրն յունաց Կոստանդեն Կոպրոնիմոս, խորտակել և բառնալ իսպառ յեկեղեցեաց. Թէպէտ Երուսաղէմ ընդ իշխանուԹեամբ ամիրապետաց էր յայնժամ. սակայն և արտաքացիք կամէին զբարձումն պատկերաց սրբոցն յեկեղեցեաց։

774 74°. Եղիա (**) Բ. նստի յաԹոռ պատրիարքուԹեան յաւուրս սուլԹան Ըլմանսուրայ. 'ի ժամանակս իշխանուԹեան սորա. նահատակի Բագոս, և Թաղի հանդէպ սուրբ Փրկչայ վանուցն մերոց յարևմտից կուսէ։

Սա կեցեալ զամս քսան և երեք (23), կամ սուղ ինչ պակաս վախճանի. զկնի սորա մինչև ցԱբրահամ Բ. ուԹսուն և ուԹ ամ պարապ միջոց մնայ. բայց զիշխանաւորաց ոչք յայսմ միջոցիս չունիմք տեղեկուԹիւն ինչ, որոյ վասն զանց արարեալ զնոքօք զյետագայիցն ասասցուք, եօԹանասուն և հինգ դնելով զԹիւ քանորդացն։

885 75°. Աբրահամ Բ. (***), վերոյիշեալ Թուոյն իշխէ աԹոռոյն պատրիարքուԹեան, յաւուր ԹագաւորուԹեանն Աշոտոյ մեծի Բագրատունւոյ, յերրորդ նորոգուԹեանն Հայոց ԹագաւորուԹեան և կառավարեալ զամս քսան և չորս (24) վախճանի. իսկ յայսմ միջոցի ևս մնան եօԹանասուն և երկու ամք. որոց իշխանաւորքն ծանօԹ չեն մեզ, ուստի և զսոցանէ զանց արարեալ յաւելլուք ասել զյետագայիցն շարունակելով կարգաւ զԹիւ քանորդացն։

Յամի 972' և Թուոյն Հայոց' ՆԻԱ. 421. Յովհաննէս Զմշկիկ կայսրն յունաց հայկազն, որեւ Կիւռժան' գայ 'ի

(*) Բ. յիշատակարանն։

(**) Բ. յիշատակարանն եւ 'ի վարս Բագոսի, որ Թայամաուրա.

(***) Բ. յիշատակարանն։ Ի ԹագաւորուԹեանն Աշոտոյ, ոչ մեք յաւելլաք, այլ այնպէս էր յօրինակին։

*կողմն յԵրուսաղէմ, զորոց բազմօք՝ ընդ որս և զօրս Հա-
յոց տուեալ յօգնութիւն Աշոտոյ՝ Գ. ողորմածէ արքայէն
Հայոց՝ և եդեալ հարկս ՚ի վերայ՝ դառնայ բազում աւա-
րօք. զոր առեալ աւէ ՚ի Նամակին իւր որ առ Աշոտ մեր
թագաւոր զԱրքայ, զՏրապլուս, զՃէպէլն որ է լեառն
Լիբանանու և Նազարէթ որ առ ծովուն Տիբերեայ, զի
զգերեզմանն Քրիստոսի ազատել կամէաք աւէ՝ բայց եկ-
եալ յԵրուսաղէմէ և ՚ի Ռէմլէէ բազում աղաչանօք հար-
կատու մեզ եղեն ՚ի Նամակին որ առ Աշոտ ՚ի տարեգիրս
Սմբատայ սպարապետի երես 34. տպեալն ՚ի Փարիզ
՚ի Կարապետ վարդապետէ Շահնազարեանց ՚ի շարս Հայ
պատմագրաց: Կարապետ վարդապետ ՚ի ծանօթութիւնս
9-10-11 անհաւան ցուցանէ զինքն պատմութեանս Աշոտ
Դ. Գագիկեան, իմանալով որ արդարեւ յետոյ է քան զժա-
մանակս Կիւռժանայ՝ սակայն հեղինակս Աշոտ երրորդ ո-
ղորմածն ակնարկէ յոր ՚ի 18 ամի թագաւորութեանն Նորա
Զմշկիկ առնու կայսրութիւնն յունաց՝ և երրորդ ամի
կայսրութեանն իւր, լինի այս պատերազմն ձեռնտւու-
թեամբ Աշոտոյ Գ. արքային Հայոց: Թէպէտ պատմիչն
յետ եւ յառաջ պատմէ զանցս և խառնի զժամանակս
թագաւորացն: Ցայսմ միջոցի թէպէտ ՚ի շարս պատրիար-
քացն՝ ըստ մերս պատմութեան չգտանի պատրիարք՝ սա-
կայն զայս անց որ վերաբերի Երուսաղեմի չկամեցաք ՚ի
բաց թողուլ՝ որոյ աղագաւ եդաք ՚ի ծանօթութեան ՚ի
գիտութիւն բանասիրաց. և ՚ի դիւրութիւն ապագայից:*

76՛. *Գրիգոր* (*). Բ. *առ վերայ գրեալ թուականա-* 981
*նստի յաթոռն պատրիարքութեան զամս քսան և հինգ* (25):
*Սա* (**) *խնդրեաց յամիրապետէն Ելքայմայ զի մի նեղես-
ցեն այլք զազգն իւր. և որոյ խնդրանօքն իսկ. ետ հը-
րովարտակ ամիրապետին. և հրամայեաց Հայոց չճանաչել
զայլ դատաւոր բաց ՚ի պատրիարքէն իւրեանց: Զայսպի-
սիս բազում անգամ ընկալեալ են պատրիարքունք աթո-
ռոյս Երուսաղեմի հրովարտակս. ոչ յամիրապետաց և եթ
այլ և ՚ի թագաւորացն Օսմանցւոց, յետ ժամանակաց:*

---

(*) Բ. *յիշատակարանն: Ծաղավածու*:

(**) *Մարինոս լատեն. գլ. Ը*:

1006 77. Արսէն (*) կացեալ յաջորդ Գրիգորի ամս երեսուն և երկու (32), կառավարեաց զաթոռն պատրիարքութեան:

Յաւուրս (**) սորա Մակար և Սիմէոն հայ ճգնաւորք նշանաւորք յայլ և այլ ժամանակս եկին յԵրուսաղէմ երկիրպագանել տնօրինական սուրբ տեղեացն Քրիստոսի, և անտի անցեալ յԻտալիա մեկնեցան, և որոց այս Արսէն ետ գիր յանձնարարական առ առաջնորդն Իտալիոյ, իսկ յաջորդք Արսէնի անյայտ են մեզ որք վարեալ են զիշխանութիւնն, ամս յիսուն և երկու, այն է մինչեւ 1090:

1090 78. Սիմէոն (***). յաջորդէ Աթոռոյն վերյիշեալ թըւոյն. յաւուրս իշխանութեան սորա, այն է յամի 1099 առնուն խաչակիրք զօրքն լատինաց զԵրուսաղէմ (****). ձեռնտուութեամբ թագաւորացն հայոց. 'ի ձեռն Կոտտոֆրէ դքսին կամ Կոտոֆրէտոսի որ զկնի եղեւ թագաւոր Երուսաղեմի. յաւուրս յայսոսիկ դնի և առաջնորդ 'ի կողմանէ պապին Տայիպերթ Պիզացի. 'ի Սիոն անդր. այն է վերնատունն յորում զՊասեքն եկեր տէրն աշակերտօքն հանդերձ. եւս և յիջանել Հոգւոյն որոյ անդ էին ժողովեալ առաքեալքն. տեղիս այս քանիցս անգամ անկեալ է 'ի ձեռս արաբացւոց և քրիստոնէից փոփոխակի, բայց դարձեալ այժմ 'ի ձեռս արաբացւոց է. և այս վասն գերեզմանացն Դաւթի և Սողոմոնի զորս Մուհամմէտականք եւս յարգեն:

Յաւուրս յայսոսիկ (*****) Գրիգոր վկայասէր հայրապետն մեր եկն յԵրուսաղէմ. և այս գալուստ հայրապետին երկրորդ թիւն կազմէր, զի միանգամ եւս եկեալ էր 'ի հազար եօթանասուն և վեց (1076) թուին. 'ի ժամանակս յայսոսիկ խոտորումն լինէր Զատկի, որ ասի Մռազատիկ,

---

(*) Բ. յիշատակարանն:

(**) Պատմութիւն Հայոց Չամչեան. հա. Բ. երես 859—865:

(***) Բ. յիշատակարանն մեր, եւ Մարինոս պատմիչ լատինաց:

(****) Հեթում պատմիչ Թաթարաց: Պատմութիւն Չամչեան. առումն Երուսաղեմի 'ի լատինաց:

(*****) Պատմութիւն Հայոց Չամչեան հա. Գ. էջ 20:

և վէճ էր յունաց ընդ հայս. զամանէ ունիս ուսանել 'ի վերջին երկրորդ գրոյս, առաջին յօդ. 'ի ծանօթութիւնն։ Սա կեցեալ ամս ինն և տասն (19) վախճանի։

79°. Մովսէս (*) Բ. զկնի Սիմէօնի յաջորդէ զաթոռն պատրիարքութեան։ Այսու ժամանակաւ հաւանական է, թէ յԵրուսաղէմ երեք պատրիարք գոյր, այսինքն 'ի Հայոց, 'ի Յունաց, և 'ի Լատինաց. զի զքաղաքական իշխանութիւնն 'ի ձեռս Լատինաց էր, քանզի Պալտինն թագաւորէր, ուստի և կարէին կարգել պատրիարք ինքեանց, անկախ յայլոց իշխանութեանց. և որոց պատրիարքութիւնն Երուսաղեմի աստ 'ի համար դնի սկիզբն լինելոյ. թէ և այս պատրիարքութիւն նոցա ոչ կարաց կալ հաստատուն, զի ոչ յետ բազում ժամանակաց առաւ Երուսաղէմ 'ի ձեռաց Լատինաց։ 1109

Այս Մովսէս կառավարեաց զաթոռն քսան և չորս (24) ամ, առա յանձնեալ զիշխանութիւն պատրիարքութեանն եղբօր իւրոյ Եսայեայ յետ միոյ ամի վախճանեցաւ։

80°. Եսայի (**) Ա. եղբայր Մովսիսի երկրորդի նստի յաթոռն պատրիարքութեան 'ի կենդանութեան եղբօր իւրում։ 1133

Յաւուրս սորա յամի (1141) գայ Գրիգոր (***) Կաթուղիկոս եղբայր Շնորհալւոյն յԵրուսաղէմ և լինի անդ ժողով. Հայոց և Լատինացւոց վասն ծիսից իմիք. և համոզեալ 'ի միմեանց, խոստացան խաղաղութիւն պահել ընդ միմեանս. և դարձաւ Գրիգորիս 'ի Կիլիկիայ։ Ն՞աստէն գիտելի է զի Միքայէլ Հ. Չամչեան՝ այս ժողով 'ի Սիոն լեալ ասէ, իսկ Մարինոս Լատին պատմիչ Երուսաղէմի, գրէ՝ զՍիոն. Ֆրանչիսկոս Ասսիզացի գնացեալ յԵրուսաղէմ, յամի 1219 և առեալ զայն, արար տեղի կրօնաւորաց. և գուցէ յառնուլն Սալահատտինայ զԵրուսաղէմ այն տեղի եւս անկեալ էր Արաբացւոց. քանզի 'ի վերոյիշեալ թուոյն (1219) յԵրուսաղէմ Սալահատտին սուլթանն իշխէր։

---

(*) Բ. յիշատակարանն մեր։

(**) Բ. յիշատակարանն մեր։

(***) Պատմութիւն Հայոց Չամչեան. հա. Գ. էջ. 53։

Եւ սա Եսայի կառավարեալ զաթոռն ինն և տասն ամ, վախճանի։

1152 81°. Սահակ Բ. զկնի յաջորդէ Եսայեայ առաջնոյ զաթոռն։

Սա երկիցս գնաց 'ի ժողովն Կիլիկիոյ, որ վասն միաբանութեան Հայոց ընդ Յունաց, ըստ խնդրանաց նախ Ներսիսի Շնորհալւոյ, և ապա Գրիգորիսի յաջորդի նորուն, և զկնի ժողովոյն դարձ առնէ յաթոռն իւր։

Յաւուրս սորա (1169) մայրն Հեթմոյ և Ներսէսի Լամբրոնացւոյ շահանդուխտ գայ յԵրուսաղէմ, և դառնայ յերկիր իւր։

Եւ սա կառավարեալ զամս քսան և ութն (28) կնքեաց զկեանս իւր։

1180 82°. Աբրահամ Գ. Երուսաղէմացի զկնի ննջման Սահակայ՝ նստի յաթոռ պատրիարքութեան։ Սորա գերեզմանն քանի մի ամօք յառաջ գտաւ 'ի բակ անդր մեծի եկեղեցւոյն սրբոց Յակոբեանց. որ յայտնի կայ այժմ, արեւմտեան կուսէ նոյն եկեղեցւոյ բակին։

Յաւուրս սորա Սալահատտին սուլթանն Եգիպտոսի, էառ զԵրուսաղէմ (1187) 'ի Լատինաց անտի, և 'ի մտանելն իւրում 'ի քաղաքն ընդ դուռն որ անուանի Դամասկոսի, տեսեալ 'ի բացուստ զգմբեթն Ս. Յակոբայ վանուց կանգնի յաղօթս, կարծելով թէ ետես զմզկիթն Էօմէրայ, և յորժամ ազդեցին նմա եթէ այն եկեղեցին Հայոց է. փակել հրամայեաց. անլուր ամենեւին բազմապատիկ թախանձանացն Հայոց. և փակեալ մնայ եկեղեցին սրբոց Յակոբեանց զեօթն ամ. յայսմ միջոցի պատարագէին Հայք 'ի գաւթի եկեղեցւոյն ուր երկու սեղանք պատարագամատոյցք էին, և են ցարդ։ Յետ եօթն ամաց ապա բացեալ զեկեղեցին յանձնէ 'ի ձեռս Հայոց նշանս տեսեալ, զամանէ կարէ իւրաքանչիւրոք տեղեկանալ 'ի պատմութեան Երուսաղէմի Հաննէ վարդապետի (*)։

Ի ժամանակս յայսոսիկ (1181) Ռուբէն Բ. իշխան Կի-

81°—82°. Բ. յիշատակարանն մեր.
(*) Ի ձեռն. Հաննէ. երես 89.

ւնկնոյ՝ գայ բազում ծախուք յԵրուսաղէմ, և առնու 'ի
Քէրէկ (*) գեղջէ դղուստր իշխանի տեղւոյն՝ իւր 'ի կը-
նութիւն ։

Եւ այս Աբրահամ վարեալ զիշխանութիւնն ամս մե-
տասան (11) մեռաւ ։

83°. Մինաս (**) Ա. զկնի Աբրահամու յաջորդէ զա- 1191
թոռն. սա գտաւ 'ի Կիլիկիայ (***) յաւուր օծման Լե-
ւոնի Ռուբինեանց Թագաւորին Հայոց (1198). 'ի ժամա-
նակս սորա կրկին դիպաւ խռովութիւն զատկի. և եղե-
ւաղմուկ ոչ սակաւ յԵրուսաղէմ Յունաց ընդ Հայս ։

Եւ սորա կեցեալ յիշխանութեանն պատրիարքու-
թեան չորեքտասան (14) ամ վախճանի ։

84°. Աբրահամ (****) Դ. սա կառավարեալ զաթոռն 1205
պատրիարքութեան զամս երեքտասան (13), 'ի կենդա-
նութեան իւրում տայ զիշխանութիւն պատրիարքութեա-
նըն Առաքելի (1218) յիրս ինչ շինութեան, և 'ի հրովար-
տակս պետութեան անուանք երկոցունցն 'ի միասին յի-
շատակին, որպէս 'ի նորոգման Վանուցն Բեթղէհէմի և
շինութեան դրան մեծի եկեղեցւոյն ծննդեանն Քրիս-
տոսի երկոցունցս սոցա անուանք յիշին անդ ։ Յաւուրս
սորա յամի (1216) Սարգիս (*****) եպիսկոպոս Սիւնեաց
գայ յԵրուսաղէմ երեք ընկերօք, նահատակի մերձ առ
գերեզմանաւն Քրիստոսի յարաբացւոց անտի ։

85°. Առաքել (******). սա 'ի կենդանութեան Նախոր- 1218
դին իւրոյ Աբրահամու, նստաւ յաթոռն պատրիարքու-
թեան, և կառավարեաց զամս երկոտասան ։ Ի ժամա-
նակս սոցա, այսինքն, Աբրահամու և Առաքելի, եղեւ
վերոյիշեալ նորոգութիւնն Բեթղէհէմի 'ի ձեռն Հեթմոյ
առաջնոյ Թագաւորին մերոյ, յամի (1227)։

---

(*) Ի տարեգիրս Սմբատայ տպեալ 'ի փարիզ. էջ 103։ Այս
գիւղ մերձ է Մեռեալ ծովուն եւ յԵրուսաղեմէ հեռի է 36 ժամ։
(**) Բ. յիշատակարանն ։ — (***) Ի տարեգիրս Սմբատայ ե-
րես 110։ — (****) Բ. յիշատակարանն ։
(*****) Պատմութիւն Ստեփաննոսի Օրբելեան. հտ. Բ. էջ 108։
(******) Բ. յիշատակարանն ։

1230 86°. Յովհաննէս (*). Զ. Կարնեցի, յաջորդէ զՏէր Առաքելի զաթոռն պատրիարքութեան և յետ կառավարելոյ զամս ութն (8) վախճանի, յամի (1238) և թաղի առ եղբօր իւրում Վարդանայ եպիսկոպոսի 'ի դաւիթ մեծի եկեղեցւոյն սրբոց Յակոբեանց որ և յետ ժամանակաց 'ի նորոգել արտաքին դաւթին եկեղեցւոյն գերեզմանն տոցա դիպաւ լինել 'ի ներքոյ ձախակողմեան սեան դաւթի. իսկ արձանագիր դամբարանացն երեւի այժմ յարեւմուտն կոյս սեանն։

1238 87°. Կարապետ Երուսաղէմացի յաջորդէ Յովհաննու. և յաւուրց անտի Յովհաննու մինչ ցվախճան իւր բազում նեղութիւնս կրեալ ցուցանի 'ի յիշատակարանի։ Սա չորիցս գնացեալ յԵգիպտոս առնուլ հրովարտակ վասն ապահովի շրջելոյ հայոց 'ի սրբազան վայրս և վասն նորոգութեան ինչ տեղեաց. որ և նորոգեալ 'ի հիմանէ զվանս սուրբ Փրկչայ որ մերձ 'ի Սիոն, և զեկեղեցին գերեզմանի Աստուածածնայ 'ի Գեթսեմանի բազում աշխատութեամբ զի զգերեզմանն եւեթ երեւէր սակ իսկ յեկեղեցին լցեալ աւազով 'ի հեղեղէ անտի, և դրունք ինչ էին մերձ գերեզմանին սուրբ Աստուածածնայ որ 'ի ռամկաց դրունք դժոխոց անուանէին սակ. զայնս քակեալ և ծեփեալ է որպէս երեւի 'ի վաղու ժամանակաց 'ի վիմէ փորեալ գերեզմանք են լեալ, որ ցարդ 'ի ձորն այն տեղիս տեղիս երեւի այնպիսի փորուածք։ Սա կեցեալ 'ի պատրիարքութեան զամս տասնեւվեց (16) վախճանի։

1254 88°. Յակոբոս կամ Յակոբ Բ. (**) յետ Ննջման Յովհաննու, նստի յաթոռն պատրիարքութեան, զոր յիշէ Մարինոս պատմիչ Երուսաղէմի ընդ Ռուպէրթոսի Լատին առաջնորդին Երուսաղէմի, աքսորեալ յարաբացւոց անտի յԵրուսաղէմէ։

Այս Յակոբոս կառավարեաց զաթոռն պատրիարքութեան ամս քսան և եօթն (27). և հանգեաւ յամի (1281) որոյ յաջորդէ Սարգիս որպէս տեսցես յիւրում տեղւոջ, 'ի յօդուածի Բ. դրոյս։ Արդ յայսմ առաջին յօդուա-

(*)—(**) Բ. յիշատակարանն։

*ծի երկրորդ գրոցս, քան եւթ դարանի, սկսեալ (637) թուականէ փրկչին, մինչ (1281) թուականն. որ է միջոց (644) ամաց. զի յայսմ յօդուածի երկիցս միջահատի յաջորդութիւն պատրիարքացն եւ մնայ պարապ միջոց զամս 212. զոր չկարացեալ մեր ստուգել, այլում ժամանակի կամ այլում ազգասէր բանասիրի թողաք զաշխատանս որպէս եւ միջոցն քաջայայտ է 'ի վերոյգրելոցն։ Այստէն վախճան տուեալ առաջին յօդուածոյս մատիցուք յերկրորդն։*



# ՅՕԴՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ (*)

1281 89°. Սարգիս Ա. (**) յաջորդէ զաթոռն պատրիարքութեան զկնի Յակովբայ. 'ի հասարակ օրինակս սա առաջին պատրիարք դրի, յազգէս Հայոց յԵրուսաղէմ. որպէս տեսանի. յառաջին յիշատակարանի սուրբ վանուցս, և 'ի Պատմութեանն Հայոց Չամչեան հայր Միքայէլի հատոր Գ. 'ի ժամանակագրութիւն ։

Արդ այս սխալումն յերկուց պատճառաց երեւի լինել. Նախ՝ 'ի պատճառս հինգերորդ ժողովոյն Սսոյ (1307) զի յայն ժողով հրամանաւ Լեւոնի արքայի ընկալեալ եղեւ զկանոն Անաւարզեցւոյն Գրիգորի, յորս ութն կանոնք էին նորս. որք են ջուր 'ի կիր արկանել 'ի սուրբ խորհուրդն և 'ի վերջն սուրբ աստուածին քրիստոսդ բառս յաւելուլ և վասն տօնի ծննդեան եւայլն. իսկ զկնի Լեւոնի Օշին արքայ խստագոյնս հրաման տայր ընդ Կոստանդին Կաթուղիկոսի (1309) եպիսկոպոսաց և վարդապետաց և ընդհանուր եկեղեցւոյն Հայաստանեայց. զի զկանոն ժողովոյն 'ի գործ դնիցի. սակայն ոչ ոք ընկալաւ յեպիսկոպոսաց և վարդապետաց բաց 'ի նոցանէ որք 'ի կաթուղիկոսարանին էին. Նոյն հրաման Օշնի ընդ Կաթուղիկոսին՝, հասանէր և յԵրուսաղէմ առ Սարգիս պատրի-

---

(*) Թեեւ ոչինչ բաժանումն յօդուածոյս հարկ էր աստէն. զի միապէս որպէս յառաջին շարունակի եւ ասոր եւ անդր յաջորդութիւնն պատրիարքացն. բայց այս մի ինչ էր 'ի միջի. զի առաջին յիշատակարան վանուցս, որ 'ի գանձարանն սրբոյ Աթոռոյս այս վայր ոչինչ նպաստ ետ մեզ. եւ աստի սկսանի շարունակել մինչ յաւուրս մեր. այս առաջին յիշատակարան, բազմօք տարբերի 'ի գրուածոյն Չամչեան հայր Միքայէլի, եւ մեք զսա նախադաս ունիմք առ նովաւ. Նա՝ երկրորդ յիշատակարանն եւս մեր յորում գտանին եւ տապանագիրք, բազմօք տարբերին երբեմն յայլոց օրինակաց. յոյսպիսի պարագայս զսա ունիմք նախապատիւ ։

(**) Առաջին եւ երկրորդ յիշատակարանք ընդ որս դասի Պատմութիւն Հայոց Հ. Միքայելի Չամչեան ։

տրք. և տեսեալ սորա թէ չկարէ միայնակ զդէմ ունել հրամանի թագաւորին և կաթուղիկոսին, թէպէտ և հըրովարտակաւ Ամիրապետաց էր պատրիարքութիւնն, սակայն և այնպէս 'ի հոգևորս կային կախեալ 'ի հրամանէ թագաւորին և կաթուղիկոսին Հայոց, իսկ վասն այսր պատճառի որ 'ի վերոյ, իսպառ մերժեալ միւսանգամ նոր հրովարտակ էառ յԱմիրայէն Եգիպտոսի անկախ մնալոյ միշտ 'ի հրամանէ կաթուղիկոսին ընդ որ և թագաւորին Հայոց. ահա այս է պատճառ հրովարտակին և ոչ թէ 'ի նորոյ հաստատեաց պատրիարքութիւնն. երկրորդ պատճառ որպէս հաւանական երեւի այն օրինակք Զամչեան հայր Միքայէլի յօրինակաց արքունի հրովարտակացն է ժողովեալ, որք յաւուրս պետութեան Օսմանցւոց տուեալ են 'ի ժամանակս ժամանակս. և կամ հին հրովարտակքն են նորոգեալ. բայց սակայն յառմանէ Երուսաղէմի յՃօմէր խատտապէ մինչ յառումն այս նոր հրովարտակին 'ի Սարգսէ 'ի միջոցի (674) ամաց որ յաղագս կացին պատրիարքունք (1311) հրամանաւ Ամիրապետաց զնոյն իշխանութիւն ունէին որ եթէ այս օրինակք կամ արձանագրութիւնք 'ի ձեռս հասեալ էին այնպիսի առն իմաստնոյ լաւագոյն քան զայս մեր գործ թողոյր արդեօք:

Արդ որպէս հաւաստեաւ տեսաք ոչ 'ի Սարգսէ, այլ յԱբրահամէ առաջնոյ այսինքն, յամէ (637) սկսանի պատրիարքութիւնն Հայոց յԵրուսաղէմ:

Յաւուրս սորա Լեւոն երրորդ արքայն Հայոց եկեալ յԵրուսաղէմ ետ շինել զպարիսպն հրեշտակապետի վանուց (*) յամի (1286): Եւս և պատահեցաւ Ծռազատիկ յաւուրս իշխանութեան սորա (1292) որ և ժայթքեաց աղմուկս ոչ սակաւ, նա մանաւանդ յԵրուսաղէմ, ուր Յոյնք հարստահարեալ զՀայս, զԱսորիս, զՂպտիս և զՀապէշս. անհնարին վնաս հասուցանէին նոցա. քանզի այսոքիկ ազգք Ասորիք, Ղպտիք և Հապէշք, հպատակ գոլով ազգին Հայոց անդ յԵրուսաղէմ, ոչ սակաւ նեղութիւնս կրէին 'ի յունաց անտի յայսպիսի դիպուածս:

---

(*) Հաննէ Պատմութիւն Երուսաղեմի. երես 270: Պատմութիւն Հայոց Չամչեան. հատոր Գ. էջ 269:

Իսկ յամի (1302)· Հեթում Բ· (*) թագաւոր Հայոց ընդ զօրացն Թաթարաց յաղթեալ Սուլթանին գայ յԵրուսաղէմ· և կեցեալ ամիսս ինչ, բազում խնամօք հովուէր զքրիստոնեայս· այս Հեթում շինեաց բաց յայլոց շինութեանց մի պատարագամատոյց խորան (**) կից որմոյն գերեզմանին սրբոյ Աստուածածնայ 'ի տաճարի անդ 'ի ձորն Գեթսեմանի։

Կեցեալ այս Սարգիս յիշխանութեանն զամս երեսուն և երկու (32)· վախճանի յԵրուսաղէմ։

1313 89'· Աստուածատուր Ա· (***) յաջորդէ Սարգսի· վարեալ զիշխանութիւնն զամս չորս (4)· Զամչեան հայր Միքայէլ ութն ամ դնէ· սակայն տապանաքարն Դաւթի, որ կայ 'ի միջի՝ չներէ այն թիւ զի Դաւիթ ինքն վախճանեալ է 'ի թուին հայոց ՉՀ· (1321) և զեկեալսն որ զկնի Դաւթի չ'յիշելով հայր Միքայէլ, զմիջոցիս երկարութիւնն միայն նկատելով սմա ութն ամ գրեալ է· սակայն երկոքին յիշատակարանքն զմեր եդեալ թիւն գրեն։

1317 90°· Դաւիթ Ա· (****) զկնի Աստուածատրոյ իշխէ աթոռոյն պատրիարքութեան զամս չորս (4)· գերեզման արա 'ի գաւիթ մեծի եկեղեցւոյն սրբոց Յակոբեանց էր նախ, բայց յետ ժամանակաց յորժամ այն տեղի կառուցաւ գաւիթ զդամբանաքարն եդեալ են առ ընթեր որմոյն յաջակողմեան սեան գաւթի եկեղեցւոյն հարաւային կողմանէ։

2321 91°· Պօղոս Ա· (*****) զկնի մահուան Դաւթի յաջորդէ զաթոռն պատրիարքութեան զամս տասն (10)։ Զսա և զկնի սորա եկեալ զերիս արս ոչ յիշէ հայր Միքայէլ· քանզի զկնի Դաւթի զԳրիգորն դնէ և այն այլով թուականաւ· սակայն աւելի հաւանական երեւեցաւ մեզ չթողուլ զերկոսին յիշատակարանսն Աթոռոյս, և հայիլ մի եւեթ օրինակի, որ 'ի հեռաստ գրեալ, թերեւս 'ի պակասութենէ ծանօթութեանցն։

---

(*) Հեթում պատմիչ Թաթարաց· էջ 48։ Մարինոս լատին պատմիչ գլ· Ը։ — (**) Հաննէի պատմութիւն· էջ 233։
(***) — (****) — (*****) Ա· եւ Բ· յիշատակարանք։

92°. Վարդան (*) Արեւելցի զկնի Պօղոսի կառավարէ զաթոռն զամս տասն (10)։ 1331

93'. Յովհաննէս (**) Է. յաջորդէ յետ Վարդանայ զաթոռն. և իշխեալ զերկոտասան (12) ամս՝ վախճանի։ 1341

94'. Բարսեղ (***) որ և Վասիլ եւս գրի, նստի յետ Յովհաննու եօթներորդի յաթոռն պատրիարքութեան, զամս հինգ (5)։ Ի ժամանակս սոցա քաղաքական ինչ անցք ոչ պատմին, այլ զանուանս իւրեանց եւեթ. ոմն այս ինչ աղօթագիր է օրինակեալ, միւսն ճաշոցն յիշատակ տուեալ, իսկ միւս ոմն գովասանութիւնս գրեալ 'ի վերայ պատրիարքին յայնմ ժամանակի և կամ 'ի վերայ այն ինչ անուն տեսչին. զորս աւելորդ վարկաք մի ըստ միոջէ դնել առաջի։ 1353

95°. Գրիգոր Գ. (****) զկնի Վասլի կամ Բարսղի զեօթն ամ առանձին կառավարեալ զաթոռն, ապա առնու իւր օգնական զՄկրտիչ եպիսկոպոս և մի ամ եւս ընդ Մկրտչի իշխեալ աթոռոյն հրաժարի ամենեւին, յանձն արարեալ զիշխանութիւնն Մկրտչի 'ի կենդանութեան իւրում, որոյ իշխանութիւն սորա ընդ ամենայն լինի ութն (8) ամ. որ և յետ հրաժարմանն յիշխանութենէ կեցեալ զաւուրս ինչ վախճանի։ 1358

96'. Մկրտիչ Ա. (*****) 'ի կենդանութեանն Գրիգորի ընկալաւ զիշխանութիւն աթոռոյն. սա որպէս 'ի վերոյ գրեցաք միով ամաւ յառաջ քան զիշխանութիւնն իւր թէպէտ ընդ Գրիգորի վարէր զիշխանութիւն պատրիարքութեանն, սակայն այն ամ հաշուի ընդ իշխանութեանն Գրիգորի նախորդին իւրոյ։ 1366

Սա իշխեալ աթոռոյն զամս հնգետասան (15), վախճանի. սոցա թուականն հայր Միքայէլ յառաջ դնէ քանի մի ամօք. սակս՝ յառաջ քան զսոսա երկու արանց չյիշելոյն։ Յառաջնում ամի իշխանութեան սորա՝ յԵրուսաղէմ, եկեալ ուխտաւորքն արգելուն 'ի վանս երեք ամ և երբեմն 'ի բանտ դնէին 'ի նոցանէ Արաբացիք և դրունս սրբոյ Յարութեան որմով փակեալ ոչ ումեք 'ի քրիստոնէ-

(*)—(**)—(***)—(****)—(*****) Ա. եւ Բ. յիշատակարանք։

եց տային թոյլ մտանել անդ, զի Գաղղիացիք առեալ զԱղէքսանդրիա 'ի Տաճկաց անտի գրեալ էին զոմանս յազգէ նոցա. որոյ աղագաւ և նոքա յԵրուսաղէմ բազում անցս նեղութեանց և տառապանաց անցուցին ընդ քրիստոնեայս և զմիաբանութիւն վանօրէից. և զմիաբանութիւնս մեր հանդերձ պատրիարքաւ երկիցս տարան 'ի Գազա, և ապա զկնի բազում չարչարանաց երկու աբեղայք Գրիգոր և Կիրակոս վասն Քրիստոսի նահատակեցան յԱրաբացւոց անտի:

Յաւուրս սորա յամի (1377) Վարդան եպիսկոպոսն, եկեալ յԵրուսաղէմ յանապատէ՝ մեռանի զկնի տասն և երկու ամաց: Այս Վարդան եպիսկոպոս գրեալ է ձեռամբ իւրով զկրկին Ճաշոց գիրքս. և եդեալ զմին յիշատակ 'ի Գողգոթա (*) և զմիւսն յիշատակ 'ի վանս սուրբ Փրկչայ (որ է ազգիս մերոյ):

1381 97°. Յովհաննէս Ը. (**) Լեհացի զկնի Մկրտչի յաջորդէ զաթոռն:

Յաւուրս սորա, յամի (1382) Լեւոն վեցերորդ (***) Լուսինեան արքայ Հայոց զկնի ազատութեան 'ի գերութենէ անտի եկն յԵրուսաղէմ հանդերձ մարեմաւ թագուհեաւ, և դստերբն իւրով Բեննայիւ, Մարիամ ընդ դստերն մնացեալ յԵրուսաղէմ քան և երեք ամ վախճանի, յամի (1405) և զկնի աւուրց ինչ Բեննայ դուստր նորին եւս. և թաղին երկոքեանք առաջի գաւթի մեծի եկեղեցւոյն սրբոց Յակոբեանց որպէս հաւանական երեւի, առաջի արտաքին սեան նոյն գաւթի որ 'ի կողմն հարաւոյ 'ի բակի անդ. զի աւանդութեամբ առեալ. լուսարար եկեղեցւոյն՝ ասէր յառաջ քան զգալուստն Ադրիանուպոլսեցի Պօղոս պատրիարքին Պօլսոյ. առ Գաբրիէլ պատրիարքաւ էր 'ի վերայ նոյն սեան արտաքին կուսէ մշտավառ լապտեր 'ի հին ժամանակաց աւանդեալ վասն մեծի իշխանաւորի ուրումն, սակայն զստոյգն չգի-

---

(*) Այսպիսի յիշատակարանք:

(**) Ա. եւ Բ. յիշատակարանք: Բազումք են՝ որք վկայեն 'ի հնումն, տաճարն Գողգոթայի ազգիս Հայոց լեալ սեփհական:

(***) Պատմութիւն Հայոց Չամչեան. հտ. Գ. էջ 363—364:

ռէին, որոյ աղագաւ խնդիր էաք գտանել թէ արդեօք 'ի յիշատակարանի է գրեալ, սակայն 'ի դերեւ եւ այս յոյս մեր. այլ այս աւանդութիւն տայ մեզ նշոյլ ինչ հաւանական՝ թէ գուցէ հաստատեալ իցէն յաւուրց անտի մահուան Թագաւորազանցն զայն մշտավառ լապտեր. որ և խապառ բարձաւ նշոյլն եւս յամի իբր (1830)։

Այս Յովհաննէս Լեհացի վարեալ զիշխանութիւնն զամս չորս (4) վախճանի։

98°. Գրիգոր (*) Դ. Եգիպտացի իշխէ Աթոռոյն պատրիարքութեան զկնի Յովհաննու ութերորդի։ 1385

Յաւուրս սորա եղեւ դարձեալ դիպիլ Ծառազատկի. զոր չ'յիշէ հայր Միքայէլ Չամչեան, զի զկնի Յովհաննու՝ զԵսայի. Բ՟. դասէ, բայց երկոքին յիշատակարանք մեր գրեն զսա, զերկիրն իսկ յիշելով։

Սա վարեալ զիշխանութիւն զամս հինգ (5). մեկնի յաստեացս, և փոխի յանանց կեանս։

99°. Եսայի Բ. (**) յաջորդէ զաթոռն պատրիարքութեան յետ մահուանն Գրիգորի. կեցեալ սորա զամս երիս յիշխանութեան, և 'ի կենդանութեան իւրում յանձնեալ կառավարութիւնն եղբօր իւրում Սարգսի, վախճանի։ 1390

100°. Սարգիս Բ. (***). յաջորդէ Եսայեայ եղբօր իւրում 'ի կենդանութեանն, որպէս ասացաք։ 1393

Այս Սարգիս յառաջ քան զլինելն պատրիարք, գնացեալ է 'ի Քէաֆէ նուիրակութեան, և բերեալ է ընդ իւր մի ճաշոց ձեռագիր որ մնայ մինչեւ ցարդ։

Սա՛ կառավարեալ զամս քսան և չորս (24) վերջ տայ աւուրց կենաց իւրոց։

101°. Պօղոս Բ. (****) յԱյրարատայ. նստի յաթոռն 1417
պատրիարքութեան յետ մահուանն Սարգսի և վարեալ զիշխանութիւնն ամս երկուս (2) ընտրի Կաթուղիկոս ամենայն հայոց 'ի Սիս յաթոռ Լուսաւորչին, որ առ այնու ժամանակաւ 'ի Սիս փոխադրեալ էր։

---

(*) — (**) Ա. եւ Բ. յիշատակարանք։

(***) — (****) Ա. եւ Բ. յիշատակարանք, ընդ որս նաեւ Պատմութիւն Չամչեան։

Հայր Միքայէլ Չամչեան դնէ վեց ամ զսորա զիշխանութիւնն յԵրուսաղէմ. բայց յայտնապէս գրի 'ի յիշատակարանին այլ եւս հինգ օրինակ զկնի երկուց ամաց իշխանութեան, ընտրել և օծանել կաթուղիկոս :

1419 102°. Մարտիրոս (*) Գ. Եգիպտացի յաջորդեաց Պօղոսի. և կառավարեաց զաթոռն զմետասան (11) ամ, առանձին զամս ինն ընդ Եսայեայ յաջորդին իւրոյ, զի ծերացեալ գոլով 'ի կենդանութեան իւրում մետասաներորդ ամի իշխանութեանն յանձնէ զիշխանութիւնն Եսայեայ :

Այս Մարտիրոս մինչ ցվախճան իւր ցամն (1439) թէպէտ հրաժարեալ 'ի պատրիարքութենէ, սակայն 'ի գործս ինչ արքունական և կամ ընդ ազգացն իւրնին վճարէր. որպէս և վասն Գողգոթային յորժամ վիրք բռնութեամբ առին յազգէս մերմէ յաւուրս Եսայեայ, սա երկիցս և երիցս գնացեալ յԵգիպտոս առ Մէլիք Էշրէֆ Սուլթան բողոք բառնայր 'ի ծերութեան իւրում և հրամայէր Սուլթանն երթալ 'ի միջի սուրբ Յարութեան տաճարի անդ որոշել տեղի եկեղեցւոյ ազգին իւրոյ, քանզի անհնար է առէ սուլթանն՝ զԳողգոթայն ձեզ դարձուցանել, և նորա եկեալ յԵրուսաղէմ, ընդ Եսայեայ ընտրեն վերնատուն մի 'ի տաճարի սրբոյ Յարութեան յանդիման Գողգոթայի որ աղօթատեղի էր Թագաւորացն քրիստոնէից յառաջին. և եդեալ զանուն երկրորդ Գողգոթայ, կանգնեն անդէն երկու սեղանս պատարագամատոյց զայնմանէ տեսցես ընդիր 'ի Հաննէի պատմութեան և ստորագրութեան Երուսաղէմի, էջ. 68—90 :

1430 103°. Եսայի (**) Գ. 'ի կենդանութեան Մարտիրոսի եկաց յաթոռն պատրիարքութեան զամս մետասան (11) :

Յաւուրս սորա (1431) վիրք կաշառեալ զՍուլթանն Եգիպտոսի յինքեանս կորզեցին զսուրբ Գողգոթայն 'ի Հայոց, որոյ 'ի պատճառս երկիցս և երիցս գնաց Մարտիրոս պատրիարք յԵգիպտոս. և յմետասաներորդում ամի իշ-

---

(*) Ա. եւ Բ. յիշատակարանք, ընդ որս եւ է Պատմութիւն Չամչեան. — (**) Ա. եւ Բ. յիշատակարանքն մեր.

խանութեան Եսայեայ վախճանեցաւ (1439) լցեալ աւուրբք բազմօք ։ Նաեւ պարտ է գիտել զի Հայր Միքայէլ Չամչեան քսան և մէկ ամ գրէ զիշխանութիւն Եսայեայ երրորդի . իբր զի քսան և մի ամ ընդ Մարտիրոսի նախորդին իւրոյ իցէ իշխեալ , և երկու ամ առանձին . գուցէ հայեցեալ 'ի Թուականն Հաննէ պատմչի որ վասն Գողգոթայի գգնալն յԵգիպտոս որ 'ի (1439) Թուոյն, սակայն վերոյիշեալ Թուոյն վախճանեալ է . ուստի չմնայ Եսայեայ քսան և երեք ամ վարել զիշխանութիւնն , մանաւանդ զկնի Եսայեայ դնէ զԱբրահամ զանց արարեալ զՅովհաննէս Թ. զոր յիշեն երկոքին յիշատակարանքն զկնի Եսայեայ , և հաւանական երեւի այս , որոյ վասն և մեք եդաք առանց հակառակութեան , այսպէս զի Մարտիրոս և Եսայի իւրաքանչիւրն մետասան ամ և եթ իշխեալ են աթոռոյն պատրիարքութեան ։

104. Յովհաննէս Թ. (*) Նստի յաթոռն պատրիարքու- 1441
թեան զկնի Եսայեայ և կառավարեալ զամս չորս (4) վախճանի . սա որպէս տեսցաք յօրինակին Չամչեանի ոչ գոյ ։

105. Աբրահամ Ե. (**) իշխեալ աթոռոյն զամս ութն 1445
առանձին , ապա զՄեսրովպ եպիսկոպոս իւր օգնական առնէ . և ընդ որոյ կառավարեալ ամ մի (9) եւս վախճանի։

Այս Աբրահամ էառ առանձին հրովարտակ 'ի Մէլիք Չահէր Ապումուհամէտ Սայիտէ յամի (1450) և տաճկաց (854) յորում հրամայէր մի ումեք իշխել յազգէն Հայոց, 'ի Վանուցն սրբոց Յակոբեանց առնուլ ինչ , և տուրք որ 'ի նախորդաց Յապուշխէյրէ հաստատեալ էր բարձցի ասէ . որ և Նզովիւք փակեալ հրամայեաց 'ի վերայ դրան Վանուցն գրել յարձանի , որ մինչ ցարդ գրեալ կայ , մի 'ի վերայ արտաքոյ դրան մեծի Վանուց և միւսն և 'ի ներքոյ ։

Յաւուրս սորա Օսմանցիք առին զԿոստանդինուպօլիս (1454) ուստի և բարձաւ իսպառ կայսրութիւնն Յունաց։

106. Մեսրապ եպիսկոպոսն յառաջասացեալ 'ի նոյն 1454
պատիւ պատրիարքութեան հրաւիրի յետ Աբրահամու ,

(*) — (**) Ա. եւ Բ. յիշատակարանքն մեր ։

և զեօթն (7) ամ կառավարեալ զաթոռն՝ բաց 'ի մի ամէ որ վարեաց զիշխանութիւն ընդ Աբրահամու, վախճանի։ Սա չիք յօրինակին Չամչեան։

Ի ժամանակս յայսոսիկ երևի սովորութիւն ինչ լեալ առ պատրիարքունս. յիշխանութիւն իւրեանց զմի ոմն յեպիսկոպոսաց անտի աթոռակից առնել ինքեանց. այս պարսաւելի սովորութիւն յայտնապէս տեսանի 'ի յիշատակարանսն ուր 'ի կենդանութեան միոյն միւսոյն ևս 'յիշի անունն. որպէս այս աթոռակից լեալ էր Աբրահամու, ինքն ևս աթոռակից իւր արար զՊետրոս որպէս 'ի ստորև տեսցի։

1461 107°. Պետրոս Բ. (*) սա աթոռակից էր Մեսրովպայ 'ի կենդանութեան նորա, զոր ասացաք 'ի վերոյ. և զկնի մահու նորա կալաւ զաթոռն պատրիարքութեան։

Յառաջնում ամի իշխանութեան սորա եղեւ սկիզբն պատրիարքութեան ազգիս Հայոց 'ի Կոստանդնուպօլիս. 'ի Յովակիմ եպիսկոպոսէ Պրուսայու։

Այս Պետրոս վարեալ զիշխանութիւն պատրիարքութեանն զամս հնգետասան (15) վախճանի։

1476 108°. Մկրտիչ Բ. (**) յաջորդէ Պետրոսի և կառավարեալ զաթոռն զամս երիս (3) զրկի 'ի կենաց։

Պարտ է գիտել, զի Չամչեան Հայր Միքայէլ զայսոսիկ զերիս անձինս, Մեսրովպ, Պետրոս և Մկրտիչ չյիշէ 'յօրինակին. քանզի զկնի Աբրահամու դասէ զՅովհաննէս. որոյ աղագաւ և Աբրահամու տայ զքսան և վեց ամաց զիշխանութիւնն. իսկ որպէս ասացաք այլուր. սատ ևս են նախապատիւ յիշատակարանք վանուցս առ այնու օրինակաւ։

1479 109°. Յովհաննէս Ժ. (***) Թաւիլ ասացեալ, որ ըստ տրաքացւոց երկայնահասակ յորջորջի, նստի յաթոռն պատրիարքութեան զերկոտասան (12) ամ։

1491 110°. Մարտիրոս Դ. (****) Պրուսացի զկնի Յովհաննու յաջորդէ զաթոռն զամս տասն (10)։

1501 111°. Պետրոս Գ. (*****) յաջորդէ զկնի Մարտիրոսի

(*)—(**)—(***)—(****)—(*****) Ա. և Բ. յիշատակարանք մեր։

զաթոռն, և կառավարեալ զամս վեց (6) վախճանի։ Եւ սա չէ գրեալ Չամչեան յօրինակին։

112. Սարգիս Գ. (*) զկնի Պետրոսի նստի յաթոռն պատրիարքութեան։ 1507

Առ սովաւ Եաւուզ Սուլթան Սէլիմ արքայն օսմանցւոց էառ զԵրուսաղէմ (1517) յԵգիպտացւոց անտի. որոյ քննեալ զհրովարտակս մեր որ յԱմիրապետաց և 'ի Սուլթանաց Եգիպտացւոց ցայն վայր տուեալ էին պատրիարքացն մերոց վասն վանօրէից և տնօրինական տեղեաց Քրիստոսի Տեառն մերոյ, առ 'ի վաւերացուցանելոյ զսեպհականութիւնս ազգացն. սա եւս նոր հրովարտակ տայր ըստ օրինակի առաջնոյ, ուստի և առաջին հրովարտակն 'ի պետութենէ Օսմանեան տուեալ գտանեմք 'ի ձեռն Սուլթան Սէլիմայ կայսեր Առաջնոյ. և ապա 'ի ժամանակս իւրաքանչիւր թագաւորացն նորոգեալ լինէին։ Իսկ յետ չորից ամաց (1521) որդի վերոյիշեալ Սէլիմայ, Գանունի Սուլթան Սիւլէյման պարսպեաց զԵրուսաղէմ, շուրջանակի պարսպաւ։

Այս Սարգիս կառավարեաց զաթոռն զամս վեշտասան (16)։ Եւ զսա չէ յիշեալ Հայր Միքայէլ։

113. Աստուածատուր Բ. (**) Մերտնցի, զկնի Սարգսի երրորդի նստի յաթոռն պատրիարքութեան. նախ ինն և տասն ամ, ապա առնու Փիլիպպոս զիշխանութիւն պատրիարքութեանն. իսկ յետ մահուանն Փիլիպպոսի վերըստին ընդունի զիշխանութիւն աթոռոյն այս նուազ երկու ամ. աթոռակից իւր առնելով յայս վերջին իշխանութեան. զԱնդրէաս Եպիսկոպոս եղբօրորդի իւր. և ամենայն ամս իշխանութեան սորա հաշուեն քսան և մի (21)։ 1523

114. Փիլիպպոս Բ. (***) առնու զիշխանութիւն աթոռոյն պատրիարքութեան իննեւտասաներորդ ամի իշխանութեան նախորդին իւրոյ Աստուածատրոյ և կառավարեալ զամս քսան (20) վախճանի, նախ քան զԱստուածատուր և վերստին գնի յաթոռն ծերունին Աստուածատուր աթոռակից իւր, ունելով զեղբօրորդին իւր զԱնդրէաս եպիսկոպոս. որպէս 'ի վեր անդր ասացաք։ 1542

(*)—(**)—(***) Ա. եւ Բ. յիշատակարանք մեր։

1564 115°. Անդրէաս (*) եղբօրորդի վերոյիշեալ Աստուածատրոյ Մերտինցւոյ. սա, որ Պարոն տէր եւս անուանի նախ քան զայս Թիւ երկու ամաւ յառաջ աթոռակից եղեալ հօրեղբօր իւրում և ապա զկնի մահուան նորա (1564) նստաւ յաթոռն պատրիարքութեան։ Այս Անդրէաս բազում կալուածս գնեաց աթոռոյն, որպիսի է առաջի Վանուց մեծ պարտէզն յարեւմտեան. և այլ եւս տեղիս 'ի կից Վանուցն Սրբոց Յակոբեանց ։

Կեցեալ սորա 'ի պատրիարքութեան և բարւոքապէս կառավարեալ զաթոռն զամս քսան և ինն (29) վախճանի։

1593 116°. Դաւիթ Բ. (**) սա էր եղբօրորդի վերոյիշեալ Անդրէասի որ զկնի նորա ընտրեցաւ 'ի պատրիարք ։ Զսա 'յամի 1576 Անդրէաս հօրեղբայր իւր ետ ձեռնադրել Եպիսկոպոս ։ Կեցեալ սորա 'ի պատրիարքութեան զամս քսան (20), վախճանի ։

Յաւուրս սորա կարի ճնշէր ընդ պարտուք Սուրբ Աթոռն, բայց ոչ յիշէ և ոչ մի յիշատակարան թէ յինչ պատճառս է լեալ պարտիքն և կամ 'ի ժամանակս որոյ սկըսաւ ընդ պարտուք ճնշիլ աթոռն. կարծիք ինչ երեւի թէ 'ի ժամանակս Աստուածատրոյ և Փիլիպպոսի է սկըսեալ (1542) 'ի պատճառս վիճին, որ անդէն ակնարկի սակս աթոռակալութեան. բայց այսր կարծեաց հաւանականութիւն տկարանայ առ այն, զի զկնի նոցա Անդրէաս պատրիարք կալուածս գնէր 'ի պէտս աթոռոյն. եթէ ընդ պարտուք էր մտեալ աթոռն, ոչ արդեօք 'ի գընել կալուածոց խորհէր. որ և իցէ պատճառաւ, կամ Անդրէաս պարտուք զկալուածսն գնեալ իցէ, կամ Դաւթի յանհմուտ ընթացիցն, և կամ 'ի բռնութենէ և 'ի կեղեքելոյ արաբացւոցն է լեալ ։ Ի ժամանակս յաջորդին սորա Գրիգորի պարոն տեառն տեսանի պարտուց դիզումն։

1613 117°. Գրիգոր (***) Ե. Պարոն տէր Մարգարեան Գանձակեցի, զկնի Դաւթի յաջորդէ զաթոռն պատրիարքութեան ։ Սա յաւուրս վերոյգրեալ Դաւթի եկեալ յԵրուսաղէմ (1595) յերիտասարդական հասակի առաքի 'ի սուրբ

(*) — (**) — (***) Ա. եւ Բ. յիշատակարանք ։

ՌՈԶ ՏԵԱՌՆ

Յարութիւն 'ի սպասաւորութեանն առ դրան սրբոյ գերեզմանին Քրիստոսի. յետ ժամանակաց, տեսեալ Դաւթի պատրիարքի թէ յաջողակ է 'ի գործս, ձեռնադրէ զնա 'ի վարդապետ (1601) և հոգաբարձութիւն վանուցն 'ի ձեռս սորա յանձն առնէ, և 'ի (1616) ամի տայ ձեռնադրել եպիսկոպոս, որ և զկնի Դաւթի նստի Յաթոռն պատրիարքութեան։

Ապա յնուհետեւ ձեռն արկանէ 'ի վճարումն պարտուցն. 'ի սէր ընդ ազգացն էր փոյթ թէպէտ, սակայն եկն եհաս Ծռազատիկն, որ քանիցս պատահեալ էր յառաջն 'ի սմին ժամանակի եւս նոյն եղեւ, զի յայսպիսի ժամանակի ընդ Յոյնս վէճ մեծ լինէր և պիտոյանար բազում դրամոց սակս այնր պարտն 'ի վերայ պարտուց յաւելոյր. և սա ոչ եթէ միայն յիւրումն եղեալ ժամանակի պարտսն, այլ և յառաջնոցն որոյ վասն բազում սպաս վանուցն 'ի գրաւի էին առ այլազգիս՝ հոգացաւ։ Այս Գրիգոր 'ի վճարել զծանրագին պարտս աթոռոյն եգիտ իւր ձեռնտու 'ի վաճառականացն արեւելցի Հայս. և ամենայն հմտութեամբ կառավարեալ զաթոռն և զբարեպաշտս 'ի ժողովրդենէ 'ի ձեռնտուութեան յորդորեալ տակաւ առ տակաւ վճարեաց զպարտսն ողորմութեամբ նոցին իսկ բարեպաշտից. և ապա զբազում տեղիս գնեաց 'ի կալուածս սուրբ աթոռոյն. նաեւ զբազում շինութիւնս արար յաթոռոյն, զորոց ունիս տեսանել 'ի պատմութեան Հաննէ վարդապետի և 'ի ստորագրութիւնն Երուսաղէմի. բայց թուական ժամանակին սորա որ անդ՝ սխալ է եդեալ։

Սա գնեաց զայլ եւս վայրս ընդ արձակս արտաքոյ սուրբ Փրկչայ վանուցն մերոց և զայն առնէ այնուհետեւ զհասարակաց գերեզմանատունն, որ մինչեւ ցայն վայր էր 'յայնկոյս ձորոյն գեհոնի 'ի հարաւոյ կողմանէ Երուսաղէմի. և զայս վասն այնր է արարեալ, զի 'ի պատճառս հեռաւորութեան տեղւոյն, բազում դժուարութիւն լինէր ժողովրդեան։

Զայս եւս գիտել արժան է. զսա՝ զԳրիգոր պարոն տէր գրէ Մողացի Զամչեան Հայր Միքայէլ, առնելով 'յանուանէ գեղջն, որ յաշխարհէ անդ. և է արդարեւ

գիւղ մի Գանձակ անուն 'ի մօզս , սակայն այս Գրիգոր ոչ 'ի գեղջէ այլ 'ի Գանձակ քաղաքէ է որ այժմ ռամկական բարբառով կէնճէ յորջորջի , որ է յաշխարհին Սիւնեաց , որպէս և երեւի 'ի յիշատակարանս տասն և կամ աւելի եւս . որք գրեն վասն սորա լինել 'ի վերին աշխարհէն գանձասարու 'ի Գանձակ քաղաքէ , և վասն անուանն Պարոն տէր ինձ այնպէս թուի թէ յազնուական ցեղէ լինելն ակնարկէ ։

Եկաց սա 'ի պատրիարքութեան զամս երեսուն և երկու (32) և ամենայն բարութեամբ կառավարեալ զաթոռն 'ի դառնութեան ժամանակին, երբեմն իսկ 'ի բանտ մտեալ և տագնապեալ 'ի բռնութենէ արաբացւոցն, վախճանի 'ի ծերութեան հասակի , գրեթէ զամենայն աւուրս կենաց իւրոց 'ի սուրբ Աթոռն որբոց Յակոբեանց աշխատեալ և թաղի 'ի Վանս սուրբ Փրկչայ 'ի գաւթին առ որմով , ուստի և անդր ամենայն պատրիարքունք անդ 'ի վանս թաղեալ են և թաղին մինչեւ ցայսօր ։

Զսա եւս պարտ համարիմք ասել , զի այս Գրիգոր Պարոն տէր միշտ յիշատակի 'ի պատարագի յԵրուսաղէմ 'ի մէջ գոհութիւն և փառաբանութիւն մատուցանեմքին , նոյնպէս և զմիւս Գրիգոր շղթայակիր հայրապետըն , զոր ունիմք յիշել յիւրում տեղւոջ ։

Գիտելի է և սա , զի գտանի յեզերս յաւետարանի միում յիշատակ գրեալ յանուն Գրիգորի Պարոնտեառն յամի (1649)ի , յորում չորս ամօք յառաջ վախճանեալ իսկ էր , ուստի այս յիշատակ երեւի լեալ 'ի ձեռն յաջորդին Աստուածատրոյ որդեգրին իւրոյ ։

1645 118°. Աստուածատուր Գ. (*) Տարոնեցի ձեռնասուն աշակերտն Գրիգորի Պարոնտեառն յաջորդէ զաթոռն պատրիարքութեան յետ վախճանելոյ նորա , ըստ կտակին զոր արարեալ էր ։

Սա երկիցս անկանի յաթոռոյն և վերահաստատի . յառաջնումն նուագի վարեաց զիշխանութիւնն զիննեւտասն ամ , իսկ յերկրորդումն զամ մի և եթ , յերրոր-

(*) Ա. եւ Բ. յիշատակարանք ։

դուամն ղերկու (22) ամս։ Ի միջոցիս յայսմ երիցս անկմանն այլք կալան զաթոռն որպէս տեսցի 'ի ստորեւ։ Գիտելի է աստէն զի առաջին յիշատակարանն մեր գրէ զկնի Պարոնտեառն զԴաւիթ զնախորդն Ներսէս. սակայն երկրորդ յիշատակարանն, որ 'ի մի քանի յիշատակարանաց է ժողովեալ, նաեւ ժամանակագրութիւնն Չամչեան հայր Միքայէլի զԴաւիթ դասեն յառաջ քան զԳրիգոր. ուր պատմի և մահն Դաւթի։

Առ սովաւ, այն է յամի (1651) Տէր Փիլիպպոս կաթուղիկոսն Էջմիածնի, և Ներսէս կաթուղիկոսն Սսոյ գան յԵրուսաղէմ և լինի ժողով վասն բարեկարգութեանց, Ներսէս կաթուղիկոսն երթայ 'ի Սիս. իսկ Փիլիպպոս կաթուղիկոսն յետ սալայատակելոյ զյատակ եկեղեցւոյն Սրբոց Յակոբեանցն դառնայ 'ի Կոստանդնուպօլիս (*)։

Իսկ Աստուածատուր պատրիարքն յետ կառավարելոյ զաթոռն զերկուս (2) ամս եւս վախճանի յամի (1670)։

119°. Եղիազար Անդէացի (**) նստի յաթոռն յառաջ- 1664
նում անկմանն Աստուածատրոյ և վարեալ զիշխանութիւնն ամ մի անկանի յաթոռոյ և վերստին վերանորոգի յիշխանութեան Աստուածատուր պատրիարքն (1665). բայց ոչ յետ բազում ժամանակաց իջեալ յաթոռոյն, Աստուածատուր Եղիազար նստի (1666) պատրիարք և Կաթուղիկոս անուամբ միանգամայն և վարեալ զիշխանութիւնն զմի ամ և եթ դարձեալ անկանի հնարիւք Մարտիրոսի եպիսկոպոսի աշակերտին Աստուածատրոյ և Մարտիրոս ինքն յաջորդէ զաթոռն, և քանզի միաբանք Սուրբ Յակոբայ չէին հաճ ընդ Մարտիրոս, զկնի միոյ ամի իջուցեալ զնա յաթոռոյն եդին անդրէն զԱստուածատուր և յայսմ յերկրորդում նուագին կառավարեալ զաթոռն ամս երկու դադարի յապրելոյ (1670). երկրորդ անգամ եւս կոչի Եղիազար 'ի Պատրիարքութեան և իշխէ զամս երկոտասան, այսինքն մինչ ցմահն Յակոբայ Կաթուղիկոսի Էջմիածնի և ապա հրաւիրեալ յաթոռն Էջմիածնի անդ նստի ընդհանուր Կաթուղիկոս ամենայն Հայոց. զորա

(*) Չամչեան պատմ. Հայոց։ (**) Ա. եւ Բ. յիշատակարանք։

*իշխանութիւն ընդ ամենայն հաշուեն չորեքտասան (14) ամ յառաջ և յետոյ . առ նախ քան զՊատրիարքութեան իշխանութիւն Թիւսն փոխանորդ լեալ էր զեօթն ամ յԵրուսաղէմ և Կոստանդինուպօլիս , յորում ժամանակի շինեաց 'ի Ռէմլէ վանք մի և եկեղեցի յանուն Սրբոյն Գէորգայ , և յԵրուսաղէմ կից տաճարին Սրբոց Յակոբեանց եկեղեցի մի , որոյ անուն կոչեցաւ Էջմիածին :*

*Իսկ յաւուրս Պատրիարքութեան իւրում շինեաց յԵրուսաղէմ 'ի Վանսն զԹաղն արեղայից անուանեալ 'ի Բնակութիւն միաբանից և 'ի Ս. Յարութեան տաճարի զբաժինն ազգիս Հայոց կարգադրեալ յարդարեաց , և զկեցութիւնս միաբանութեան որ անդ կանոնաւորելով . և ոչ սակաւ նեղութիւն և տառապանս կրեաց վասն Վանուցն Սրբոց Յակոբեանց 'ի դրունս դատաւորաց դեգերելով մինչև 'ի բանտ իսկ մտեալ զամանէ կարեա տեսանել լիովին 'ի պատմութեան հայոց Չամչեան հատ. Գ. էջ 665-719:*

1667 120°. *Մարտիրոս Ե.* (*) *Կաֆացի կալաւ զիշխանութիւն աթոռոյն յերկրորդում անկմանն Եղիազարու և կառավարէ զամ մի , ապա զկնի երթալոյ Եղիազարու յԷջմիածին* (1682) *վերստին նստի յաթոռն գրեթէ ամ մի , և ամենայն ամ զիշխանութեանն երկու* (2) *ամեն լինել . բաց 'ի փոխանորդութենէ յաւուրց անտի Աստուածատրոյ և Եղիազարու զորցանէ երկար խօսի Հայր Միքայէլ . հատոր Գ. որ կամի կարէ տեսանել :*

1684 121°. *Յովհաննէս Ժա.* (**) *Կոստանդնուպօլսեցի զկնի մահուան Մարտիրոսի էառ զիշխանութիւն պատրիարքութեանն Երուսաղէմի 'ի ձեռն ոմանց աշխարհականաց , որք յառաջին ամի իշխանութեան սորա տեղակալ անուամբ իշխանակից էին ընդ սմա ապա զկնի միոյ ամի ինքնիշխան եկաց զամս եօթն* (7) *իսկ յետ եօթն ամացն իշխանութեան սորա , Մինաս Համթեցի որ փոխանորդ էր սորա՝ 'ի Կոստանդնուպօլիս առեալ զիշխանութիւն պատրիարքութեանն անդ եկն յԵրուսաղէմ և կորզեալ 'ի ձեռաց Յովհաննու զաս առնէ իւր աթոռակից և զկնի երից ամաց աթոռակալութեանս վախճանի :*

---

(*) — (**) Ա. եւ Բ. *յիշատակարանք մեր :*

Զամչեան Հայր Միքայէլ զՅովհաննու ասէ չորս ամ իշխեալ, սակայն երկոքին յիշատակարանք վկայեն զեօթն ամ իշխելն ։ Որպէս և 'ի տապանագրի իւրում թիւ Ննջմանն է այս թիւ (1694). թէպէտ գտանի այլ եւս յիշատակարան որ զթիւ Ննջման սորա զայս գրէ (1697), սակայն տապանագրին աւելի հաւանական է քան յիշատակարանին, և երկրորդ յիշատակարանն մեր 'ի տապանաքարէն առեալ գրէ (1694) թիւ Ննջմանն ։

122°. Մինաս Բ. (*) Համթեցի. սա որպէս 'ի վեր անդրը ասացաք փոխանորդ գոլով 'ի Կոստանդնուպօլիս յաւուրս վերոյիշեալ Յովհաննու առնու զիշխանութիւն Պատրիարքութեանն յեօթներորդում ամի իշխանութեան նորա և եկեալ յԵրուսաղէմ, նստի յաթոռն և զՅովհաննէս առնէ իւր աթոռակից զամս երիս, իսկ յետ Ննջմանն Յովհաննու, լինի աթոռակից սմին Մինասայ Գալուստ վարդապետ ոմն Կայծակն կոչեցեալ, և ապա յանկանել սորա յաթոռոյն յամի (1701) Աւետիք առնու զիշխանութիւն աթոռոյն, և սորա գնացեալ 'ի Կոստանդնուպօլիս յետ երկուց ամաց դարձեալ առնու զիշխանութիւնն. և յայսմ նուագի աթոռակից իւր առնէ զԳրիգոր Պծակն կոչեցեալ որ երբեմն լեալ էր Կաթուղիկոս Սսոյ, և Մինասայ զամ մի եւս ընդ Գրիգորի կառավարեալ վախճանի (1703) յամին. ամենայն ամ իշխանութեան սորա գըրեն մետասան (11) ամ կամ պակաս ամիսս ինչ ։ 1691

Զկնի վախճանի այսր Մինասայ մինչ ց(1715) յորում զերկոտասան ամ միջոց մնայ և ամիսս ինչ, պարտ է գիտել, թէ տեղապահօք կառավարեցին 'պատրիարքութիւնք Կոստանդնուպօլսոյ զորոց անուանս տեսցես 'ի ստորեւ առանց ընդ թուով պատրիարքացն արկանելոյ ։

Աւետիք վարդապետ երթեալ 'ի Կ.Պօլիս (1701) առնու ընդ պատրիարքութեանն Բիւզանդիոյ և զպատրիարքութիւնն Երուսաղէմի, և իջուցեալ զՄինաս յաթոռոյն առաքէ 'ի տեղի իւր փոխանորդ զաշխարհական ոմն և ինքն նստի

(*) Առաջին եւ երկրորդ յիշատակարանք, ընդ որս դասի Պատմութիւն Հայոց Հ. Միքայէլի Զամչեան ։

'ի Կոստանդինուպօլիս Պատրիարք. և յետ երկուց ամաց անկանի սա յիշխանութենէն և առնու զիշխանութիւնն վերստին Մինաս, իսկ զկնի մահուանն Մինասայ (1703) անդրէն նստի աւետիք. յայս նուագ մի ամ և եթ իշխեալ այլք առնուն զիշխանութիւնն. և ամենայն ամ իշխանութեան սորա գրեն զամս երիս (3) կամ սուղ ինչ պակաս :

Յաւուրց անտի առաջնոյ սոյն աւետիքի կամ լաւ ևս է ասել յաւուրցն Աստուածատրոյ և Եղիազարու սկսեալ էր կռիւն 'ի մէջ եպիսկոպոսաց վասն Աթոռոյն Երուսաղէմի և մի զմիով ելանէին կորզել 'ի միմեանց զիշխանութիւն Պատրիարքութեանն, մանաւանդ Յաւուրս յայսոսիկ առաւել ևս ճարակիւր հրդեհն փառամոլութեան. իսկ վնասն աթոռոյն Երուսաղէմի չունէր չափ յայսմ միջոցի. զի որպէս 'ի վերոյ ասացաք, նոքա՝ որք զՊատրիարքութիւն երկուց աթոռոցն 'ի միասին ընդունէին, ինքեանք 'ի Կոստանդինուպօլիս նստէին, և առաքէին զմի ոմն աշխարհական յԵրուսաղէմ փոխանորդ ինքեանց Պատրիարքական իշխանութեամբ. և փոխանորդքն եկեալ յԵրուսաղէմ Պապա անուամբ նստէին 'ի Վանս սրբոց Յակոբեանց, ընտանեօք և հանդերձ պարագայիւք և չմնայր չարիս ինչ, զոր ոչ գործէին. զարդիւնս ուխտաւորաց 'ի Կոստանդինուպօլիս առեալ թղթով իւիք առաքէին յԵրուսաղէմ զվճարողսն Պատրիարքունք կոչեցեալքն որ անդ 'ի Կ. Պօլիս. իսկ նոցին փոխանորդք որ յԵրուսաղէմ զկալուածս, և զՍուրբ զսպասս եկեղեցւոյն Սրբոց Յակոբեանց 'ի գրաւի եդեալ դրամս առնէին և ծախէին ըստ կամս անձանց իւրեանց. և միաբանք անկարող գոլով առնել ինչ բազում անգամ հաց ևս ոչ գտանէին յուտել, քանզի փոխանորդքն զսեղանատունն փակեալ տային պահել. ահա այսպիսեօք զամս երկոտասան, այսպիսի օրինակօք կայր խրթնացեալ աթոռն Երուսաղէմի 'ի բարեզարդութենէ իւրմէ. իսկ թէ ոյք ոմանք էին ընդունողքըն զՊատրիարքութիւնն իշխանութիւն ասասցուք 'ի ներքոյ զանուանս և զթուականս :

Մատթէոս Կեսարացի (1705) Սարի կոչեցեալ որ քան զայս Թիւ Կաթուղիկոս էր լեալ Սսոյ, և յանկանել ա-

ւէտիկի յաթոռոյն Կոստանդնուպօլսոյ՝ այս Մատթէոս ձեռամբ և միջնորդութեամբ դեսպանին Գաղղիոյ ընկալաւ զիշխանութիւն Պատրիարքութեանն և կառավարեաց զամիս երկու (2) ։

Մարտիրոս վարդապետ (1705) ամն Քիւլհանճի ասացեալ, վարեաց զիշխանութիւնն զամիս չորս (4) ։

Միքայէլ Խարբերդցի (1706) իշխէ զամիս ութն (8) ։

Սահակ Ապուչեխցի (1707) ընկալեալ զիշխանութիւն աթոռոյն ընդ Պատրիարքութեանն Կոստանդնուպօլսոյ և՝ կառավարեալ զամիս ութն անկանի յիշխանութենէն 'ի ձեռն Յովհաննէս վարդապետի Զմիւռնացւոյ, սակայն յետ ամի միոյ այսինքն (1709) ընկալեալ վերստին զիշխանութիւնն կառավարէ զամս վեց եւս, որով լինի ամենայն ամք իշխանութեան սորա եօթն (7) կամ սուղ ինչ պակաս (1714) ։

Յովհաննէս Զմիւռնիացի (1708) մի ամ և եթ իշխեաց զկնի առաջին (1) անկմանն Սահակայ ։

Յովհաննէս Գանձակեցի (1717) կոչեցեալ 'ի ձեռաց Սահակայ զՊատրիարքութեանն զիշխանութիւն ինքն կառավարէ զամս երկու (2) կամ պակաս ամիս ինչ ։ Ահա այսոքիկ եօթնեքին արքս փոխանորդիւք կառավարեցին զաթոռն Երուսաղէմի որք ըստ ընթացից իւրեանց ունին ընդունիլ վարձս կամ պատիժս յԱստուծոյ. զորոցանէ լիովին կարեն տեսանել կամեցողքն 'ի պատմութեան Հայոց Չամչեան Հայր Միքայէլի. հտր Գ. էջ. 734-737 ։

Արդ աստէն վախճան տուեալ մեր երկրորդի յօդուածոյս, երկրորդ գրոցս, դասեմք զկնի զերրորդ յօդուած մի եւս մինչեւ ցմերս ժամանակ ։

---

Վերոյգրեալ յեօթն արանցն զամանց անուանք 'ի յիշատակարանան Սրբոյ աթոռոյս չգտանին. 'ի պատմութեան Հայոց Չամչեան Հ. Միքայէլի միայն գտանի. իսկ միջոցն իշխանութեան բացայայտ են 'ի յիշատակարանան, եւ 'ի պատմութեան Հաննէ վարդապետի, այն է Յովհաննէս եպիսկոպոս փոխանորդն Շղթայակրին Գրիգորի ։

# ՅՕԴՈՒԱԾ ԵՐՐՈՐԴ (*)

1715 123°. Գրիգոր Զ. (**) շղթայակիր կոչեցեալ է 'ի գաւառէ անտի Բաղիշու 'ի շիրուան գեղջէ. սա կոչեցաւ 'ի Պատրիարքութիւն Երուսաղէմի յառաջնորդութենէ անտի Սրբոյ Կարապետի վանուցն որ 'ի Տարօն զկնի երկոտասան ամաց մահուանն Մինասայ համթեցւոյ. և յետ երկուց ամաց ընտրութեանն գայ 'ի Կոստանդինուպօլիս 'ի ժամանակս իշխանութեան Յովհաննու գանձակեցւոյ, զի որպէս ասացաք 'ի վերոյ, իշխէր և աթոռոյն Երուսաղէմի ինքն նստելով յաթոռն Կոստանդինուպօլսոյ:

Այս Գրիգոր շղթայակիր իբրեւ եկն 'ի Կոստանդինուպօլիս ձեռն էարկ վճարել զպարտս աթոռոյն ընդ Յովհաննու Պատրիարքին Կոստանդնուպօլսոյ Պաղիշեցւոյ որ մինչ ցութն հարիւր քսակս հասեալ էր, որոյ աղագաւ եդեալ զանուր փոքրիկ երկաթի 'ի պարանոց իւր, ուխտեալ չհանել մինչեւ վճարեսցէ զպարտս աթոռոյն, որ և արար իսկ. և վասն այսր պարտուց յամեաց 'ի Կոստանդնուպօլիս զամս չորս և հաւաքեալ առատ տուրըս յօրհնեալ ազգէս գործակցութեամբ Յովհաննու Պատրիարքին, ոչ միայն զառաջին պարտսն հատոյց, այլ և սակս Ծուղպատկի լեալ պարտիսն՝ որ այնու ժամանակաւ եղի եւ վասն վիճից որ ընդ Յոյնս որպէս և բազում անգամ պատահէր, վճարեաց. եւս և յետ վճարելոյ զբազմադէզ պարտսն գնեաց նաեւ բազում կալուածս այսինքն սկսեալ 'ի Բերիայէ մինչ ցՆդիկոպոս, և զայս 'ի դարձին իւրում 'ի Կոստանդնուպօլսոյ յԵրուսաղէմ արար, և զամենայն զպաշաս աթոռոյն ուք էին 'ի

---

(*) Բաժանումն յօդուածոյս հարկ համարեցաւ աստէն, զի յերկոտասան ամաց հետէ 'ի ձեռն փառամոլաց ոմանց եւ անհամոից 'ի մեծամեծ տառապանս տուայտէր վանքն որբոց Յակոբեանց մեծամեծ տուժիւք եւ վնասիւք. աստէն սկսանի գտանել զխաղաղութիւն, որ նորոգութիւն իմն համարի վանուցս, որոյ վասն յարմար դատեցաք բաժանումն առնել նորոյ յօդուածոյ:

(**) Ա. եւ Բ. յիշատակարանքն, ընդ այլոց:

գրաւի դարձոյց յաթոռն, ազատելով միանգամայն և զՅովհաննէս Պատրիարք յերաշխաւորութենէ պարտուցն որ յԵրուսաղէմ 'ի Պապայից տեղի գտեալ. քանզի յառաջ քան զՊատրիարքութիւն այսր Գրիգորի Առաքեալ էր 'ի Կոստանդնուպօլսոյ՝ յաղագս այս Յովհաննէս Կոլոտ առ 'ի հոգալ զորպէսն և երաշխաւորել:

Յետ կարգադրելոյ զայսոսիկ բազում շինութիւնս եւ առնել, նաեւ յաւուրս յայսոսիկ 'ի տաճարի անդ Սուրբ Յարութեան Լատինք և Յոյնք իւրաքանչիւրն նորոգութիւն առնէին յիւրեանց բաժնի. ուստի սա եւս եւ նորոգել զտեղիսն որ 'ի բաժնի մեր 'ի տաճարի անդ Սուրբ Յարութեան: Եւ այսպիսեօք կեցեալ բազում բարեկարգութեամբ յաթոռն Պատրիարքութեան զամս երեսուն և չորս (34), փոխի յանանց կեանս:

Զայսոսիկ և զայլ պէս պէս աշխատութիւնս սորա՝ տեսեալ յաջորդաց սորին տնօրինեցին, զի անուն այս Գրիգորի վեցերորդի յիշատակեսցի 'ի պատարագի 'ի ժամ գոհութեան ընդ միւս Գրիգորի Պարոնտեառն որպէս և ասի մինչեւ ցարդ 'ի գոհութեան "աղաչեսցուք և խնդրեսցուք և վասն հոգւոցն հանգուցելոց եւս առաւել վասն հանգուցեալ հայրապետաց սրբոյ աթոռոյս տեառն Գրիգորի Պարոնտեառն և Գրիգորի հայրապետին„ որ է Գրիգոր շղթայակիրն:

Գիտել արժան է. զի այս թիւ (1715) որով նշանակեցաք զԳրիգոր շղթայակիրն ցուցանէ զընտրութիւնն և ոչ զնստիլն յաթոռն:

զԳրիգոր շղթայակրէս կարէք լիովին տեսանել՝ բաց 'ի պատմութենէ Հաննէ վարդապետի, և ստորագրութենէ Երուսաղէմի, 'ի պատմութեան Հայոց հայր Միքայէլի Չամչեանց հատոր Գ. էջ 770-775: Իսկ վասն Բեթղեհեմի վանուցն՝ ծննդեան Քրիստոսի, և Յոպպէ վանուցն զոր գրէ անդ թէ նոր կառոյց չկարէ հաւատել, զի նոքա բազում ամօք յառաջ քան զայս Գրիգոր կառուցեալ էին, գուցէ նորոգեալ իցէ:

124'. Յակոբ Գ. (*) Նալեան Զիմարացի զկնի մահ-

(*) Ա. եւ Բ. յիշատակարանք:

ուան Գրիգորի շղթայակրի ընտրի Պատրիարք աթոռոյն Երուսաղէմի, 'ի Կոստանդինուպօլիս: Սա աշակերտ գոլով Յովհաննու Բաղիշեցւոյ պատրիարքին Կոստանդնուպօլսոյ, 'ի վախճանիլ վարդապետին իւրոյ յաջորդէ նմա, և յետ ժամանակաց ընտրի յազգէն պատրիարք Երուսաղէմի. և կառավարեալ զաթոռն Երուսաղէմի զամս երիս (3), վերստին լինի պատրիարք Կոստանդինուպօլսոյ, թողլով զաթոռն Երուսաղէմի:

1752 125°. Թէոդորոս Բ. (*) Խորենացի 'ի տարօն գաւառէ, հրաւիրի յաթոռն պատրիարքութեան յետ գնալոյ Յակոբայ 'ի Կոստանդինուպօլիս: Սա աշակերտ գոլով Գրիգորի շղթայակրի, սմա թողեալ էր կտակաւ Գրիգոր զյաջորդութիւնն զկնի իւր, թէպէտ յայնժամ չկատարեցաւ կտակ երանելւոյն. սակայն զկնի Յակոբայ եդին զսա յաթոռն ըստ կտակին, զոր կորդուացի եւս կոչեն, բայց գուցէ սահմանակից լինելոյն:

Այս Թէոդորոս զամս ինն (9) վարեալ զիշխանութիւնսն կամ սուղ ինչ պակաս վախճանի:

1761 126°. Կարապետ (**) Գանձակեցի յաշխարհէն սիւնեաց աշակերտ վերոյգրեալդ Թէոդորոսի. յետ նորա նըստի յաթոռն, և կառավարեալ զամս վեց (6) վախճանի:

Սա շինեաց մի թաղ 'ի պէտս բնակութեան ուխտաւորաց, և զտանիս Սրբոյ տաճարին Յարութեան՝ սալանորոգեաց, այլ և 'ի վանս Սրբոց Յակոբեանց բազում շինութիւնս արար:

1768 127°. Պօղոս Գ. (***) Վանեցի յաջորդէ զաթոռն զկնի Կարապետի և կառավարէ զամս եօթն (7) կամ պակաս ամիսս ինչ:

1775 128°. Յովակիմ (****) Գանձակեցի, ընդունի զիշխանութիւն պատրիարքութեանն և վարեալ զամս ութնետասն (18) վախճանի:

1793 129°. Պետրոս Դ. (*****) Եւդոկիացի յաջորդէ Յովակիմայ: Յաւուրս սորա գայ Պօնօբարթ առաջին արքայ գաղղիացւոց 'ի յոպպէ զօրօք, զի առեալ զԵգիպտոս եկ-

---

(*)—(**)—(***)—(****)—(*****) Ա. եւ Բ. յիշատակարանք:

եալ էր գրաւել զհամայն Պաղեստին յամի իբր (1799)ի, իսկ մեծամեծք Երուսաղէմի գնացեալ ընդ առաջ նորա ասեն, վասն Երուսաղէմի մի ինչ աշխատ լինիր, զի եթէ առցես զԱքեայ պատրաստ եմք տալ առանց պատերազմի զԵրուսաղէմ 'ի ձեռս քո․ և զքեզ ծանիցուք այնուհետեւ տէր երկրին․ և նորա գնացեալ յԱքեայ անդէն անկանի կատարած հիւանդութեան 'ի զօրսն և ձեռնթափ լեալ 'ի Պաղեստինէ անցեալ գնաց ուստի եկն․ յայն աւուրս մինչ էրն Պոնօբարթ 'ի Յոպպէ, քրիստոնեայք որ յԵրուսաղէմ բազում չարչարանս կրեցին յարաբացւոց անտի, զի ոգքա ժողովեալ զամենայն արս քրիստոնէից լցին 'ի տաճարն Սուրբ Յարութեան, զի մի 'ի գալ Պօնօբարթի յԵրուսաղէմ ձեռնտու լինիցին, վասն համահաւատութեանն և կացին մնացին անդ քրիստոնեայքն մինչեւ մեկնիլն Պօնօբարթի 'ի յոպպէ։ Ապա յետ մեկնելոյ գաղղիացւոց 'ի Պաղեստինու եկն 'ի նոյն ամի կուսակալն Դամասկոսի 'ի Յոպպէ և կոչեալ առ ինքն զմեծամեծս քրիստոնէից պահանջէր 'ի նոցանէ զոսոյժ միասուցն զոր կրեաց աշխարհն 'ի գաղղիացւոց անտի․ յայսմ միջոցի և Պետրոս պատրիարքս (*) գնացեալ ընդ քրիստոնեայս առ կուսակալն, և անդ 'ի յոպպէ 'ի յոյժ սրտնեղութենէն՝ նաեւ անձեռնհաս լինելոյն վճարման տուգանացն հիւանդացեալ վախճանի յամի (1799)ի․ և թաղի անդ 'ի գաւթի եկեղեցւոյն սրբոյն Նիկողայոսի, յետ կառավարելոյ զաթոռն զամս վեց (6)։

130°. Թէոդորոս Գ․ (**) Վանեցի զկնի մահուանն Պետրոսի ընտրի պատրիարք աթոռոյն Երուսաղէմի։ 1799

Յաւուրս սորա յամի (1808) այրի տաճարն Սուրբ Յարութեան դիպուածով հրիք․ յորում վախճանի նաեւ

---

(*) Ոմանք 'ի յիշատակարանաց այլ ինչ կերպիւ պատմեն ըղձնալն Պետրոսի պատրիարքին 'ի Յոպպէ, իբր զի վասն չինութեան ինչ որ 'ի տաճարի անդ սուրբ Յարութեան զոր չթողուին յոյնք, խորհի երթալ առ կուսակալն եւ առնուցու հրաման շինութեան, եւ զայս լսեալ յունաց, դեղ մահու արբուցանեն անդ եւ զբաւէն 'ի կենաց․

(**) Ա․ եւ Բ․ յիշատակարանք։

տեսուչ վարդապետ տեղւոյն 'ի վերահասեալ հալեալ արծիծէ անօթ, որ 'ի վերայ տանեաց գմբեթին. ընդ որս ոչ սակաւ ոսկւոյ և զգեստս եկեղեցւոյ. և այսպ յամի (1810) շինեցին Յոյնք բռնութեամբ 'ի ձեռն կուսակալին դամասկոսի և այլոց արաբացւոց. իսկ միճակն մեր որ անդ 'ի Սուրբ Յարութեան, այն է վերնատունն նորոգեցաք յետ երկուց ամաց շինութեան գմբեթին (1812). յորում ամի նորոգեցան հնագոյն հրովարտակքն մեր հրամանաւ բարեխնամ արքային Սուլթան Մահմուտ երկրորդի Ալլի աստացելոյ. 'ի վերայ Սուրբ Ծննդեան Քրիստոսի և 'ի վերայ գերեզմանի Սուրբ Աստուածածնի պատարագելոյ յամենայն աւուր ընկերութեամբ ընդ յունաց միաբանգամայն հաւասարելով ընդ նոցայն զթիւ կանթեղաց, պատկերաց, աշտանակաց և զարդուց մերոց. Եւ այս Թէոդորոս կառավարեալ զաթոռն զամս իննեւտասն (19) վախճանի։

Յաւուրս յայսոսիկ յամի (1802) Կիրակոս Կաթողիկոս Սսոյ գայ յԵրուսաղէմ յուխտ սրբազան տնօրինական տեղեացն և դառնայ։

1819 131°. Գաբրիէլ, Նիկոմիդացի (*) յաջորդէ Թէոդորոսի յետ մահուան նորա. այս տարաբախտ պատրիարք սակս անյաջող ընթացից ժամանակին և անհմուտ իրու- կառավարութեան անկանի ընդ ծանր պարտիւք, որոյ քանակութիւնն հասանէր ութն հազար քսակ դրամոյ. այսպ խորհուրդ արարեալ 'ի Կոստանդինուպօլիս ըստ աղաչանաց միաբանից՝ որք ոչ սակաւ նեղութիւնս կրէին 'ի ձեռաց պարտատեարց. կոչէին 'ի Կոստանդնուպօլիս զայս Գաբրիէլ պատրիարք զկնի հինգ ամաց իշխանութեանն (1824) և առաքեն զնախկին պատրիարք Կոստանդնուպօլսոյ Անդրիանուպօլսեցի Պօղոս եպիսկոպոս որ եկեալ տեղեկացեալ զօրպիսութենէ իրացն յետ քառասուն աւուրց երթայ յԵգիպտոս, և անտի 'ի Կոստանդնուպօլիս. այսպ

(*) Ա. եւ Բ. յիշատակարանք, ընդ որս է եւ ստորագրութիւն Երուսաղէմի, զոր մի ըստ միոջէ պատմէ. կամեցողքն տեսցեն. անդ. էջ 198—211.

արքունի հրովարտակաւ զոր էառ ազգն յարքայէն Օսմանցւոց, վերադառնայ յԵրուսաղէմ հոգւոյ զպարտսն (1827)։ Իսկ Գաբրիէլ պատրիարք կեցեալ յիւսկիւտար զամս հինգ առաքի 'ի Զմիւռնիա (1829) մեալ անդ առ ժամանակ մի։

Եւ Պօղոս եպիսկոպոս յառաջնում ամի առ 'ի վճարել "զԹագսիտն" պարտուց. քանզի 'ի վեց "Թագսիտ" ամի ամի ունէին հատուցանել ըստ հրամայելոյ հրովարտակին. ետ կոտորել զկանթեղս զաշտանակս արծաթեայս, եւ զբրիս մեծամեծ ջահս եւ զբազում զարդս արծաթեղէնս եւ ոսկեղէնս. եւս եւ ետ քակել զմարգարիտս՝ որ 'ի վերայ Թագից եւ սաղաւարտից, որովք զառաջին "Թագսիտն" վճարեաց, ապա յանձնեալ ջերմեռանդ ուխտաւորաց յուխտ 'ի սուրբ Երուսաղէմ. որոց տրօքն տակաւ առ տակաւ վճարեցաւ պարտն զլուխն վեց ամաց։

Յաւուրս յայսմիկ յամի (1829) նորոգեցաւ հնագոյն հրովարտակն մեր պատարագելոյ 'ի վերայ Սուրբ Գերեզմանին Քրիստոսի տեառն մերոյ, 'ի ձեռն Զաքարիա եպիսկոպոսի, որ յայնժամ փոխանորդ էր աթոռոյն 'ի Կոստանդնուպօլիս; ձեռնտուութեամբ ազգասէր ամիրայից որ նոյն ամի սկիզբն եղեւ երից ազգաց 'ի միասին պատարագել 'ի վերայ գերեզմանին. նախ Յոյնն, ապա նոյա Հայք, եւ հուսկ ապա Լատինք յամենայն աւուրս։ Այս հրովարտակ առաքեալ 'ի Կոստանդնուպօլսոյ յԵրուսաղէմ. առ Պօղոս եպիսկոպոս որ փոխանորդ էր պատրիարքին՝ գործադրեաց։ Առ սովաւ այսինքն մինչդեռ Պօղոս եպիսկոպոս յԵրուսաղէմ էր, ծագեցաւ վէճ իմն ազգայնոց որ յԵգիպտոս ընդ աթոռն Երուսաղէմի; զի 'ի հոգեւորականս Եգիպտոս ընդ իշխանութեամբ աթոռոյն Երուսաղէմի գոլով յառաջ, յամի (1832)ի; նստէր անդ յԵգիպտոս 'ի կողմանէ աթոռոյն առաջնորդ Գաբրիէլ վարդապետ Գերմանիկեցի, ուստի 'ի զօրանալ Մէհմէտ Ալի բաշային որ յԵգիպտոս, Թարգման նորա Հայկազն Պօղոս Նուպարեան կոչեցեալ, որ յոյժ սիրելի էր բդեշխին՝ միաբանեալ ընդ Հայոց եղելոց յԵգիպտոս կամեցան զի լիցի առաջնորդն իւրեանց եպիսկոպոս որպէս զի փառաւոր հանդիսասցին 'ի մէջ այլոց քը-

քրիստոնեայ՝ ազգաց, մանաւանդ 'ի մէջ Խալաւոց, որոյ վասն գրեցին առ Պօղոս եպիսկոպոս Նախկին պատրիարքն Կոստանդինուպօլսոյ, որ էր յԵրուսաղէմ որպէս ասացաք 'ի վեր անդր սակս պարտուց աթոռոյն, զի տացին յաթոռոյն վկայական վասն Գաբրիէլ վարդապետի զի գնացեալ ձեռնադրեսցի եպիսկոպոս, և վերադարձցի յԵգիպտոս. իսկ բարքն հակառակասիրութեան մարդկան յարոյց սատան այսմ խնդրոյ 'ի վարդապետաց անտի յԵրուսաղէմ. եթէ ո՞ էցէ Գաբրիէլ զի նախ քան զինքեանս լիցի եպիսկոպոս, և այսու զմիտս Պօղոս եպիսկոպոսի գրգռեալ, նա մանաւանդ Պօղոսս այս եւս խիթայր ընդ առաջնորդելն Գաբրիէլի յԵգիպտոս, ուստի գրեն պատասխանի յԵգիպտոս առ Պօղոս պէյ և առ ազգն թէ չկարէ Գաբրիէլ, եպիսկոպոս լինել յառաջ քան զինքն ձեռնադրեալ վարդապետսն որք աստ. վասն որոյ ասեն եթէ կամիք զի լիցի առաջնորդ ձեր եպիսկոպոս մեք առաքեմք աստի զայլ ոք, թողէք զԳաբրիէլ դառնալ յաթոռս. բայց ըստ որում կամք էին Պօղոս պէյի և ազգայնոցն. եթէ Գաբրիէլ եղիցի եպիսկոպոս, միանգամայն և առաջնորդ նոցա, նոցունց չկամեցան զայլ ոք, թէպէտ Դաւիթ վարդապետ առաքեցաւ 'ի տեղի Գաբրիէլի՝ բայց չընկալան, և այնուհետեւ թէպէտ և իւրաքանչիւր կողմն փութայր կատարել զկամս իւրեանց, սակայն որպէս ասացաք Պօղոս պէյ սիրելի գոլով բդեշխին հատեալ բաժանեաց իսպառ զԵգիպտոս, յաթոռոյն Երուսաղէմի յիշխանութենէ, և առաքեաց զԳաբրիէլ վարդապետ 'ի Սիս, հրամանաւ Մէհմէտ Ալի բաշայի, և ետ ձեռնադրել եպիսկոպոս, որ և եկեալ նստաւ առաջնորդ յԵգիպտոս անկախ յումեքէ, ընդ որս և զկալուածս աթոռոյն Երուսաղէմի, զորոց Գաբրիէլ վարդապետ 'ի փոխանորդութեան իւրում, զհասս առաքէր յաթոռն, անկաւ 'ի ձեռս ազգայնոց. Իսկ յԵրուսաղէմէ գրեալ ծանուցին 'ի Կոստանդնուպօլիս զվտարանջութիւն Գաբրիէլի, զի եթէ չհնազանդի Երուսաղէմի, հնազանդեսցի ազգին, և պատրիարքին Կոստանդնուպօլսոյ, որպէս զի այսու տացեն հանել անտի զԳաբրիէլ, սակայն առաւել եւս հեռացաւ Եգիպտոս յԵրուսաղէմէ, քանզի զանուն Երուսաղէմի եւս չը-

յիշեցաւ այնուհետեւ յԵգիպտոս . և պատրիարքն և ազգայինք ոչինչ կարացին առնել Գաբրիէլի , որեւ եկաց մընաց անդ յԵգիպտոս , մինչեւ ցամն (1867) և մեռաւ անդ ։ Յօրէ յայնմանէ մնաց զկալուածս աթոռոյն Երուսաղէմի 'ի ձեռս ազգայնոցն որ անդ մինչ (1867-68) ։

Եւ յաւուրս իշխանութեան իւրոյ այս Պօղոս ետ շինել զվերնատունն կանանց , յեկեղեցւոջ Սրբոց Յակոբեանց , և քանի մի սենեակ 'ի բնակութիւն միաբանից եւս և հաստատեաց զՏպարանն որ 'ի Վանս մեր ձեռընտուութեամբ բարեպաշտ ուխտաւորաց . սկիզբն եղեւ Յերուսաղէմ հաստատութիւն տպարանիս նախ քան զայլ ազգս ։ Ի սմին ժամանակի եկն զօրօք բազմօք յամի (1834)ի Իպրահիմ բաշայն Եգիպտոսի յԵրուսաղէմ , զոր առեալ զբռնանուաճ պաղեստին անց 'ի Դամասկոս ։

Յետ այսր ամենայնի Գաբրիէլ պատրիարք որ 'ի բազում ամաց հետէ էր իՋմիւռնիա , ըստ հաճութեան ազգային ժողովոյ , յամի (1834)ի , վերադառնայ յԵրուսաղէմ յաթոռն իւր , յետ տասն ամաց տարագրութեանն . յորում եկաց մինչ ցվախճան աւուրց կենաց իւրոց , մինչեւ ցամն (1840) որոյ պատրիարքութեան իշխանութեանն ամք հաշուեն զամս քսան և մի (21) ։

132°, Զաքարիա . Բ. (*) Տէր Գրիգորեան Կոբեցի 'ի Տարօնոյ , յաջորդէ զաթոռն զկնի ննջման Գաբրիէլի 'ի ձեռն սորա եղեւ նորոգումն հրովարտակին , զոր 'ի վերոյ յիշեցաք յորժամ էր փոխանորդ Երուսաղէմի 'ի Կոստանդնուպոլիս , ձեռնտուութեամբ Պիշմիշեան Միքայէլ ամիրայի ։ 1840

Սա արար հիմնարկութիւն միոյ թաղի սակս ուխտաւորաց , սակայն կանխեալ մահու , մնաց անկատար , որ և յետոյ շինեալ կոչեցաւ "Լեմնի թաղ" կամ "Նոր թաղ"։ էառ սա ։ և զբանալի արտաքին երկաթեայ դրան սրբոյ Ծննդեան ընկերութեամբ ընդ յոյնս , սակայն զկնի միոյ ամի կաշառացն զօրութեամբ առին յոյնք և զմեր բանալին ։

Յաւուրս սորա յամի (1841)ի , եկն յԵրուսաղէմ եպիսկոպոս մի անգղիոյ , և սկսաւ շինել զեկեղեցի ինք-

(*) Ա. եւ Բ. յիշատակարանք ։

եանց յԵրուսաղէմ որ մինչ ցայն վայր չգոյր, և այսպ լրումն յեօթն ամաց միջոցի (1848)․ զի 'ի ժամանակին յայնմիկ չէր ինչ դիւրին Եւրոպացւոց շինել զեկեղեցի 'ի տէրութեանն Օսմանեան ։

Եւ յամի (1845)ին, պատրիարքն յուսաց որ յառաջն 'ի Կոստանդնուպոլիս մնայր և յԵրուսաղէմ փոխանորդն կառավարէր զաթոռն նորա, իբրև ինչ գրով հարցանելով, յայսմ ամի եկն և նստաւ յԵրուսաղէմ կալ այնուհետեւ յաթոռն իւր ։

Կեցեալ Զաքարիա յիշխանութեան պատրիարքութեանն զամս վեց (6) վախճանի ։

1847 133°. Կիրակոս Մնացականեան Երուսաղէմացի յաջորդէ Զաքարիայ, և վարեալ զիշխանութիւն պատրիարքութեան զամս երիս (3) վախճանի ։

Սա 'ի կատար հասոյց զշինութիւն նոր Թաղին, որ 'ի Զաքարիա պատրիարքէն էր հիմնարկեալ, նաև զկաչկաւան երից տաճարացն այն է, Սրբոց Յակոբեանց, Սուրբ Հրեշտակապետի և Սուրբ Ծննդեան տաճարի արտաքոյ այրին եղեալ երկուց խորանացն, որ 'ի մեր բաժնի, ետ ոսկեզօծել գեղեցիկ յօրինմամբ, այլ և մի քանի սենեակ ետ շինել նորոգ վասն ուխտաւորաց բնակութեան։

Ի ժամանակս սորա յամի (1847) հիմնարկեալ շինեցաւ եկեղեցին հռովմէականն յունաց, որ չէր յԵրուսաղէմ յառաջն, և (1848) յամին եկն յԵրուսաղէմ պատրիարք Լատինաց և նստաւ, յորմէ սկիզբն եղեւ պատրիարքութեան յԵրուսաղէմ, զի գրեթէ 'ի ժամանակէ վերջնայոյ խաչակրացն մինչեւ ցարդ, յորում գտանի (611) ամ միջոց, չէր ոք պատրիարք 'ի Լատինացւոց աստ յԵրուսաղէմ․ և զոր ասեմք, եթէ այժմ նստի պատրիարք 'ի Լատինացւոց յԵրուսաղէմ, դարձեալ այս պատրիարքութիւն նոցա չունի զիշխանութիւնն զայն՝ զոր ունին Հայոց և Յունաց պատրիարքութիւնքն, քանզի իբրև ինչ միաբանական կեցութեան և որ տնօրինական տեղեաց պատկանի փոխանորդն Պապին որ յԵրուսաղէմ, նա գիտէ տնօրինել․ իսկ պատրիարքն 'ի նոցին ազգարարութենէ ունի

(*) Ա. եւ Բ. յիշատակարանք ։

գործադրել, եթէ լինէր այնպիսի գործ ինչ 'ի տէրութե-
նէ կառավարութեանն որ 'ի վեր իցէ ձեռնհասութենէ
փոխանորդին, նաեւ 'ի հանդէսս եկեղեցական պատրի-
արքն 'ի հրաւիրելոյ փոխանորդին կարէ կատարել, եւս
և զթափոր և զպատարագ առնել 'ի վերայ գերեզմանին
Քրիստոսի և այլոց տնօրինական տեղեաց. գիտել արժան
է և թէ ունի պատրիարքն իւր յատկացեալ եկեղեցի
և միաբանութիւն ինչ, որ են ազգաւ Գաղղիացի որպէս
և ինքն, պատրիարքն, որոյ վասն տարազ սոցին չմիանան
ընդ միաբանութեան Լատինացւոց, որք յառաջն էին
յԵրուսաղէմ։

134'. Յովհաննէս. ԺԲ. (*) Մովսէսեան Զմիւռնիացի 1850
զկնի վախճանի Կիրակոսի Նատի յաթոռն։ Սա փոխանորդ
էր Երուսաղէմի 'ի Կոստանդնուպոլիս, ուր ընտրեցաւ
պատրիարք Սուրբ աթոռոյն, և եկն յԵրուսաղէմ զկնի
հինգ ամսոց զի ըստ հնացեալ սովորութեան գրեցաւ 'ի
միաբանութենէ զանուանս եպիսկոպոսացն աթոռոյն, 'ի
Կոստանդնուպոլիս առ ազգն, որք էին առաջին այս Յով-
հաննէս, երկրորդ Դաւիթ եպիսկոպոս, երրորդ Գէորգ
եպիսկոպոս, որ Լուսարարապետ էր եկեղեցւոյն Սրբոց
Յակոբեանց. Թէպէտ ունել ունէր աթոռն հնաւան-
դութեան, Լուսարարապետն չընտրել պատրիարք, սա-
կայն փառասիրութիւն մարդկան քաջ գիտէ յաւանդից
անտի մին պահել անփոփոխ, միւսն արհամարհել իբր ա-
ւելորդ. Ներումն յընթերցողաց խնդրեմք վասն երկա-
րելոյ մեր զբանս աստ. զի յայսմ ընտրութեան և յե-
տագայիցն ներքոյ գոլով մեր ճշմարտութեանն ևեթ կա-
միմք վկայ լինել որպէս իսկ վայելէ պատմչի։

Այս Յովհաննէս յերկրորդումն ամի իշխանութեան
իւրոյ ետ կառուցանել զպատրիարքարանն մեծ հոյակապ
'ի վերայ քառից կամարաց որ 'ի վերայ ճանապարհին յա-
րեւմտեան կողմն Վանուց, և յամի (1853) շինեաց մի
թաղ 'ի հիմանէ յարաւակողմն մեծի եկեղեցւոյն որ ասի
«չամ թաղ» 'ի բնակութիւն ուխտաւորաց. եւս և կանգ-
նեաց առ ընթեր նոյն թաղի ուսումնարան մի մեծ (1857).

(*) Երկրորդ յիշատակարանք։

գմբեթարդն որքաստաշ վիմօք. բայց 'ի յայսմ շինուածոյ, որք 'ի Վանս Սրբոց Յակովբեանց, գնեաց նաեւ. արտաքոյ քաղաքին զերկուս ընդարձակ արտս, մին՝ հանդէպ վանուցն Ռուսաց յարեւմուտս, որոյ երկարութիւնն է 'ի ճանապարհէ գերեզմանատան տաճկաց մինչ ցԹաղն Հրէից ցմիւս ճանապարհ. իսկ լայնութիւնն հասանէ մինչ 'ի գերեզմանատունն տաճկաց, բայց ոչ ամենայն կողմն է հաւասար: Իսկ միւս արտն յարաւակողմն վերոյիշեալ արտին ընդ այլ կողմն ճանապարհին, ուր շինեաց նա ինքն մի որձարան երեք կամարաւ (1859) Թուին. Եւս և գնեաց աղբիւրն Փիլիպպոսի առաքելոյ, յորում մկրտեաց զներքինին առաքեալն Փիլիպպոս և զայգին 'ի միջի որոյ գայ ջուր յաղբիւրն: Այլ և 'ի ներքս 'ի քաղաքն էառ մի մեծ տուն մերձ 'ի Վանս Հրեշտակապետի կից Վանուցն յունաց Սրբոյն Գէորգայ 'ի կողմանէ հիւսիսոյ, յորում պարունակի աւելի քան զյիսուն սենեակս:

Եւ յետ առնելոյ զայս ամենայն վախճանի (1860) 'ի Դեկտեմբերի (23), կառավարեալ զաթոռն զամս տասն (10):

Աստէն գիտել պարտ է, զի զկնի ննջման սորա աթոռն առանց պատրիարքի մնաց իբրեւ զամս երիս, և 'ի յայսմ միջոցի թէպէտ զիշխանութիւն կառավարութեանն 'ի ձեռն միաբանութեան գործադրիւր, սակայն 'ի կոնդակս՝ զորս տային ուխտաւորաց, զանուն այս Յովհաննէս պատրիարքի յիշէին. և զայս վասն այնր յիշեցաք, զի եթէ տեսանիցի գրութիւն ինչ յանուն Յովհաննու պատրիարքի, յետ վախճանի նորա գրեալ, մի տացի տեղի կասկածանաց, որպէս այլ անգամ գտեալ այսպիսի գրութիւնք երկբայութեան տեղի ետուն. Եւս և տարժանական են նաեւ 'ի յորոշել, և այսպիսի գրուածք ոչ միայն յայսմ դարու գտանի այլ և 'ի դարս առաջինս:

1864 135'. Եսայի, Դ. Կարապետեան 'ի Թալաս գեղջէ որ 'ի Կեսարիա, ընտրի պատրիարք զկնի երից ամաց. և ութն ամսոց վախճանի Յովհաննու պատրիարքի: Զսորա ընտրութեանն լուր հաղորդեցաւ մեզ յԵրուսաղէմ 'ի տասնեւչորս Օգոստոս ամսոյ:

Զընտրութենէ սորին հարկ համարիմ սակաւ ինչ երկար խօսիլ, քանզի ոչ ոք մինչեւ ցարդ գրեալ է ինչ զոր-

մանէ . ուստի մի ըստ միոջէ պատմել պարտ համարեցաք զճշմարտութեանն եւեթ գոլով քարոզ, որ իրաւասիրաց է ըղձալի, թողլով այլոց, զի ըստ հաճոյից իւրեանց յարմարել ոմն չափազանցելով գովութեամբ զպատմութիւնն, և ոմն գուցէ նուազեցուցանելով :

Յայսմ ժամանակի ազգն, սահմանադրութիւն կանոն ինչ յօրինեալ, վասն օգտի կառավարութեան ազգիս, և փոյթ մեծ էր յառաջացուցանել զայն . 'ի հասանել մահուան Յովհաննու պատրիարքի, հարկ էր ըստ ազգային սահմանադրութեան ընտրել պատրիարք ոչ միայն զաթոռոյն Կոստանդնուպոլսոյ, այլ և զաթոռոյն Երուսաղէմի, և քանզի ոմանք յազգայնոց անտի, որք 'ի Կոստանդինուպօլիս կամէին զպատրիարքն 'ի միաբանութենէ Երուսաղէմի չընտրել, այլ յայլոց եպիսկոպոսացն ազգին, ուստի միաբանք Սուրբ աթոռոյն ընդդէմ կացին այսմ որոշման նոցա . յերկուց պատճառաց պարտաւորեալ, մի՝ զի հակառակ աւանդութեանց նախնեացն էր չընտրել պատրիարքն 'ի միաբանութենէն . և երկրորդ՝ զի վնաս համարէին աթոռոյն ընտրութիւնն անհմուտ ուրուք ընթացիցն աթոռոյն կառավարութեան . քանզի այս կառավարութիւն ընդ այլ ազգ քրիստոնէից գործոց խառն գոլով, փոքր սխալն մեծամեծ վնասուց լինի պատճառ որով և պնդէին թէ չընդունիմք պատրիարք յարտաքին եպիսկոպոսաց . մեծ մասն ազգիս համամիտ գտաւ միաբանութիւնս, որոյ աղագաւ երկարէր միջոցն ընտրութեան : Բայց յուսկ ապա փոքր ինչ խաղաղեալ երկպառակութիւնս գրեցին յԵրուսաղէմ 'ի Պոլսոյ, զի միաբանութիւնն որոշեսցէ գաղտնի քուէարկութեամբ զեօթըն անձինս յեպիսկոպոսաց և 'ի վարդապետացն և գըրեսցեն զանուանս նոցա առ ժողովն ազգային, որպէս զի անդ 'ի խառն ժողովի յեօթն անուանց անտի զերիսն եւեթ որոշելով ներկայացուսցեն ազգային ընդհանուր ժողովոյն, և ժողովն տացէ քուէ նոյն երից արանցն, ապա ո՛ որ յերեցունցն առաւել քուէ շահեսցի նա լիցի պատրիարք աթոռոյն Երուսաղէմի . ըստ այսմ որոշման միաբանք աթոռոյն ընտրեցին ընդ միոյ եպիսկոպոսի և վեց վարդապետ, և առաքեցին զանուանս նոցա 'ի Կոստան-

դինուպօլիս, առ վարչութիւնն ազգային, և ապա զկնի քանի ինչ աւուր ընտրեցաւ անդ Եսայի վարդապետն ; 'ի պատրիարք աթոռոյն Երուսաղէմի յամին (1864 Օգոստոսի 14) ։ Եւ 'ի նմին ամի որ էր Սեպտեմբերի տասն, գնաց Եսայի վարդապետն 'ի Կոստանդնուպօլիս, և անտի յԷջմիածին և օծեալ եպիսկոպոս վերադառնայ գայ 'ի Կոստանդինուպօլիս յերեք թուոյն Դեկտեմբեր ամսոյն 1864 թուականին ։ և յետ քանի մի ամսոց, զոր անցոյց 'ի Կոստանդնուպօլիս ; սակս գործոց աթոռոյն ; անկանի 'ի ճանապարհ գալ յԵրուսաղէմ յաթոռն պատրիարքութեան, որ և եկն 'ի թուին (1865) Ապրիլ ամսոյ հնգին յերկուշաբթի օրն մեռելոցի զատկին, յերեկոյեան ժամու ;

Սա զկնի վերադարձին յԷջմիածնայ 'ի Կոստանդնուպօլիս ջանս բազումս եդեալ անդ վասն եկամտից Սրբոյ աթոռոյն Երուսաղէմի ; և յառաջարկեաց առ վարչութիւնն կ: Պօլսոյ զխնդիր կալուածոցն Եգիպտոսի, և վարչութիւնն գրեալ ծանոյց յԵգիպտոս ազգայնոց զխնդիր Եսայի պատրիարքին, որոց ատենապետ էր յայնժամ Նուպար բաշա հայկազն Զմիւռնիացի, որ էր արտաքին գործակալ Սայիտ բաշա խտիւէյին Եգիպտոսի ; և Նուպար բաշն յանձն առեալ վճարել զայն գործ [illegible] յառաջ քան զնալն Եսայեայ յԷջմիածին խոստացեալ էր նմա զի 'ի դարձցին յԵրուսաղէմ նախ եկեսցէ յԵգիպտոս ; և անդ խորհեսցին վասն կալուածոց աթոռոյն ։ Իսկ Եսայեայ վստահացեալ 'ի բանս Կոստանդնուպօլսեցւոց որք խոստանային առնուլ և յանձնել աթոռոյն Երուսաղէմի, ապախին արարեալ զհրաւէր Նուպար բաշային վարձեալ շոգենաւ մի յատուկ եկն ուղղակի յԵրուսաղէմ եդեալ 'ի մտի հասանել յաւուրս հանդիսից զատկի յաթոռն ; քանզի իղձ փառասիրութեան 'ի մտացօնս տայր արգելուլ զօրութոն աթոռոյն յայնմ աւուր, բայց յերկոցունցս մասին զգեցեալ զոտնս նորընտիր պատրիարքըն, քանզի յաւուրս հանդիսիցն որում ըղձայր, չկարաց ժամանել յԵրուսաղէմ այլ յօրն երկուշաբթի որ էր մեռելոց զատկի ; յերեկոյեան ժամու եկն եհաս 'ի Սուրբ աթոռս ։ Իսկ Նուպար բաշայ և ազգայինքն որք յԵգիպտոս, տեսեալ եթէ զանց արար Եսայի պատրիարքն զբան-

ԱՄԻ ՏԵԱՌՆ

խոք իւրեանց ցաւեցան ոչ սակաւ, որոյ վասն բացաւ նոր դուռն հակառակութեան, քանզի մինչդեռ զառաջինն խոստանային յանձնել զկալուածսն 'ի ձեռն պատրիարքին, այնուհետեւ խոստումն դարձաւ 'ի ժխտումն, վասն զի չկամեցան յանձնել, ասելով՝ ո և իցէ կալուած Վանուց, է ազգին. մեք եւս եմք ազգ և ունիմք աղքատս և վարժատունս վասն մանկանց ազգիս, ապա ուրեմն մեզ անկանի. եթէ աթոռոյն տայցեմք զի՞նչ ունիմք առնել, ոչ ապաքէն որպէս զայլ եկամուտս, նոյնպէս և զսոսա 'ի յադուրդ իւրեանց ծառայեցուցանել. և այնպէս մնաց խնդիրն, բազում անգամ վարդապետք և եպիսկոպոսք առաքեցան վասն այսր խնդրոյ, եւս և նա ինքն պատրիարքն Եսայի անձամբ գնաց (1866) Թուլին և եկաց անդ յԵգիպտոս զամիս իբր եօթն, բայց ոչինչ կարացին վճարել. և դարձեալ գրեցին 'ի Կոստանդնուպոլիս առ ազգային վարչութիւնն, նաեւ քանիցս անգամ առաքեցին վարդապետս սակս այսր խնդրոյ. հուսկ ապա խոստացաւ վարչութիւն ազգային, կատարել զխնդիր պատրիարքին և միաբանութեան, և պատրիարքն զկնի ութն ամսոց դարձաւ յաթոռն յԵրուսաղէմ. և այնուհետեւ յետ բազում գրութեանց երթեւեկելոյ յանձնեցին ազգայինքն որք յԵգիպտոս զայնոսիկ կալուածսն միայն՝ որք յանուն աթոռոյն իցէ գնեալ, բայց և զայսոսիկ ոչ հատուցին լիովին, քանզի առին մի քանի տեղիս յայնց կալուածոց, 'ի շահ եկեղեցւոյն և հիւանդանոցին, որ անդ յԵգիպտոս. և այսպիսեօք իբր թէ լրացեալ է առ այժմ։ Այս խռովութիւն ծագեցաւ յամին (1868)։ Են եւս այլ տեղիք, այն է պարտէզ մի և տունս քանի մի աթոռոյն Երուսաղէմի, այնոքիկ եւս այնպէս մնացեալ է 'ի ձեռս նոցա։

Առ սովաւ (1866) 'ի հիմանէ նորոգ շինեցաւ եկեղեցին Սրբոյն Սարգսի վանուցն՝ որ 'ի Դամասկոս, գմբեթաւոր, քարուկիր, և գեղեցիկ սրբատաշ քարամբք, հաստատեալ 'ի վերայ չորից կամարաց ձեռամբ պատմչիս, որ տեսուչ էի յայնժամ անդ 'ի Դամասկոս. սորին շինութեան ծախսն յարքունուստ տուաւ, փոխան այրեցելոյն, քանզի եօթն ամօք յառաջ քան զայս Թուականն (1859)

չկարեմք ներել զզայն ձեր 'ի վանս մեր առ 'ի պատարագել զի վնաս է այդ դայն ձեր մեզ. և ըստ որում իւրաքանչիւր ազգի է իւր սեպհական վանս, ուստի անպատեհ իմն է թոյլ տալ ձեզ այսուհետեւ գալ յեկեղեցիս մեր, և յեկեղեցւոջ մերում, զմեզ նեղել: Քանզի 'ի 1869 Դեկտեմբեր ամսոյն, Պապն Հռովմայ ժողով գումարեալ յԵպիսկոպոսաց իւրոց Տիեզերական ժողով անուամբ զիւր անսխալութեանն վարդապետութիւն տայր հաստատել որով 1870 Յունիս ամի 20 ի այն աստուածամարտ հպարտութեան ախտի ախտացելոց ընդհանրաբար հաղորդել չէր արժան. և որովհետեւ զատս այս կրօնական գոլով թէպէտ չվերաբերէր հիւպատոսին և բդեշխին, բայց և այնպէս Լատինք ջանային 'ի քաղաքական դատս վերածել, զի դիւրաւ միջի իւրեանց շահել. իսկ բդեշխն (Քեամիլ բաշայ) ծանոյց հեռագրաւորով 'ի Կ. Պօլիս առ եպարքոսն, թէ վէճն որ 'ի մէջ Հայոց և Լատինաց կրօնական է և ոչ քաղաքական:

Սա՝ այս Եսայի ցայժմ վարէ իշխանութիւնն պատրիարքութեան սրբոյ աթոռոյն Երուսաղէմի:



'ի ձեռն Մահմետական բնակչացն Դամասկոսի այրեցաւ տունք և եկեղեցիք քրիստոնէից . յորում և մեր եւս էր եկեղեցի մի և քանի տունս , և յայնժմ խռովայոյզ միջոցին , նաեւ մեռան 'ի քրիստոնէից սակս այսր անիրաւութեանց ոգիք իբրեւ հինգ հարիւր , բայց յետ ժամանակաց վճարեցաւ յարքունուստ վնասն քրիստոնէից , ուստի և մեր եւս առեալ զփոխարէնն վնասուց մերոց դրրամս , շինեցաք մի քանի տունս և եկեղեցին՝ զոր աստցաք 'ի վեր անդր . փոխանակ առաջնոցն՝ որք ստացուածք էին Սուրբ աթոռոյն :

Որպէս բազում անգամ պատահեալ է վէճ 'ի մէջ երից ազգաց , Հայոց , Յունաց , Լատինաց 'ի վերայ սրբազան վայրացն որ յԵրուսաղէմ , և յայսմիկ աւուրս (1870) եւս անդի գտաւ , քանզի Լատինք կամեցան բռնութեամբ արգելուլ զաւելածելն մեր հնգից աստիճանացն Սանդղխոյ այրին Սուրբ Ծննդեան որ 'ի Բեթղեհէմ , մինչդեռ յառաջ քան զպատահել գժտութեանս , մի շաբաթ մեք աւելածէաք , և մի շաբաթ նոքա , այսինքն Լատինք . այս վէճ որ սկսեալ էր նախընթաց յունիս 25 ին և դեռ՝ եւս տեւէր , վասն զի Լատինք միջոցաւ Գաղղիոյ հիւպատոսին գործէին , և տէրութիւնն Օսմանեան յաւուրս յայսոսիկ շնորհս առնէր տէրութեան Գաղղիոյ , որոյ վասն երկարաձգէր դատն զի և մերս իրաւունք 'ի ձեռն բդեշխին Երուսաղէմի կարէաք ընդունիլ , մինչ այս դատ երկարաձգմամբ անկատար մնացեալ էր ցՅուլիս 11 , 'ի նմին ժամանակի ծագեցաւ այլ եւս խնդիր , քանզի որպէս սովորութիւն էր լեալ 'ի բազմաց հետէ Լատինք ամ ըստ ամէ յաւուր Գլխադրի տօնի իւրեանց գային Սուրբ Պատարագ մատուցանել յեկեղեցւոջ մերում 'ի Սուրբ Յակոբ 'ի վերայ սեղանոյ գլխադիր առաքելոյն , յառաջին երեկոյին եւս նախատօնակ առնէին . բայց այս Գալուստ նոցա շնորհք իմն եղեալ էր 'ի մէնջ խնդրանօք Թագաւորացն Սպանիոյ , և թէ երբ իցէ սկսեալ այս սովորութիւն և կամ յումմէ զստոյգն չկարացաք գիտել , ուստի դարձցուք պատմութեանս յայսմիկ աւուրսն , 'ի 11 Յուլիս ամսոյ յորժամ կամեցան գալ նախատօնակ առնել որպէս առնէին յայլ անգամս , ասացաւ նոցա թէ յայմհետէ

չկարեմք ներել զգալն ձեր 'ի վանս մեր առ 'ի պատարագել զի վնաս է այդ գալն ձեր մեզ. և ըստ որում իւրաքանչիւր ազգի է իւր սեպհական վանս, ուստի անպատեհ իմն է թոյլ տալ ձեզ այսուհետև գալ յեկեղեցիս մեր, և յեկեղեցւոջ մերում, զմեզ նզովել: Քանզի 'ի 1869 Դեկտեմբեր ամսոյն, Պապն Հռովմայ ժողով գումարեալ յԵպիսկոպոսաց իւրոց Տիեզերական ժողով անուամբ զիւր անսխալութեանն վարդապետութիւն տայր հաստատել որով 1870 Յունիս ամի 20 ի այն աստուածամարտ հպարտութեան ախտիւ ախտացելոց ընդ հօգևորս հաղորդել չէր արժան. և որովհետև դատս այս կրօնական գոլով թէպէտ չվերաբերէր հիւպատոսին և բդեշխին, բայց և այնպէս Լատինք ջանային 'ի քաղաքական դատս վերածել, զի դիւրաւ մտցի իւրեանց շահել. իսկ բդեշխն (Քեամիլ բաշայ) ծանոյց հեռագրաւորով 'ի Կ. Պոլիս առ եպարքոսն, թէ վէճն որ 'ի մէջ Հայոց և Լատինաց կրօնական է և ոչ քաղաքական:

Սա՝ այս Եսայի ցայժմ վարէ իշխանութիւնն պատրիարքութեան սրբոյ աթոռոյն Երուսաղէմի:



# ՅԱՒԵԼՈՒԱԾ ԵՒ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՐՈՐԴ ԳՐՈՑՍ



Ի վեր անդր խոստացաք խօսել սակս Ծռազատկին որ պատահէր 'ի մէջ Հայոց և Յունաց, զոր և տեղիս տեղիս նշանակեցաք 'ի յընթացս պատմութեան երկրորդ գրոյս։ Այս թիւրութիւն զատկի, 'ի յիննսուն ամաց միանգամ պատահիւր, և որոյ աղագաւ բազում վէճ և կռիւ լինէր 'ի մէջ երկուց ազգացս, և նախապատճառն այսր վէճի էր լուսաւորեայն՝ զոր վառէին և վառեն մինչեւ ցարդ 'ի կանթեղացն անտի, որ 'ի գերեզմանն Քրիստոսի որպէս և յայլ ամենայն եկեղեցիս Հայաստանեայց օրէն է Զատկի ճրագալուցի երեկոյին լուցանել մի ևեթ կանթեղ առաջի Սուրբ սեղանոյն և 'ի ժամ երգեցման "Լուսաւորեա Երուսաղէմ" շարականի, վառել 'ի կանթեղէ անտի զամենայն կանթեղս և զջահս, որ և մինչեւ ցարդ անվթար պահի և մինչեւ ցյաւիտեան ունի այնպէս լինել, զոր կարէ իւրաքանչիւր ոք 'ի տօնացուցէ Հայաստանեայցս եկեղեցւոյ ուսանիլ և գիտել հաւաստի զորպէսն. արդ և մերս ազգի լուսաւորեայն որ 'ի շիրմէ կենսատուին մերոյ Քրիստոսի վառի, այն օրինադրութիւնն է, որ 'ի տօնացուցի և ոչ այլ ինչ նորահնար վարդապետութիւն. մանաւանդ թէ օրինակ գոլով Յարութեանն Քրիստոսի, առանց պարսաւանաց պատուի 'ի մէնջ որպէս և այլ խորհուրդք եկեղեցւոյ, և այս արարողութիւն յորում ժամու և պատահի, զկնի կէս աւուր չիք խտիր 'ի միջի, որպէս և միւս խորհուրդքն աւանդեալք 'ի սրբազան հարց անտի յեկեղեցւոջ. իսկ որպէս 'ի վերոյ ասացաք վէճ առնէին Յոյնք ընդ Հայս 'ի վերայ սորա, քանզի նոքա այս է ազգն Յունաց, որ անդ յԵրուսաղէմ ոչ այնպիսի աւանդութեամբ որպէս Հայոցն՝ կատարէին և կատարեն

զայս լուսաւորեայն, այլ ասէին և ասեն 'ի ժամ երեկոյի եօթն կիսոյ շաբաթ աւուր Ճրագալուցի Զատկի, յորժամ Թափօրն իւրեանց աւարտի, Նորաստեղծ իմն լոյս ելանէ 'ի գերեզմանէն Քրիստոսի, և 'ի Նորաստեղծ լուսոյ անտի վառեն զմոմս և շնորհեն արտաքոյ եղեալ ժողովրդեանն և այս լինի միայն 'ի մերս Ճրագալուցի Զատկին ասեն Յոյնք ժողովրդոց իւրեանց, և ոչ յաւուր Ճրագալուցի այլոց ազգաց: Ուստի 'ի հանդիպել Թիւրութեան Զատկի, որ յունացն միով շաբաթու յառաջ լինէր քան զմերն և յորժամ 'ի միւսում շաբաթուջ հայք ևս ունէին առնել լուսաւորեայն ըստ Նախնի սովորութեան իւրեանց, վառելով 'ի կանդեղէն գերեզմանին Քրիստոսի, որով և սուտ վարդապետութիւն իւրեանց խայտառակիլ ունէր եթէ ոչ 'ի Նորաստեղծ լուսոյ, այլ 'ի կանթեղէ գերեզմանին Քրիստոսի վառեն մոմս և տան արտաքս, որոյ աղագաւ գուն գործէին յոյնք, զի մի յայտնեսցի ժողովրդեանն այնպիսի ծածկեալ սուտութիւն իւրեանց, և չտային Թոյլ հայոց ուրոյն կատարել զԶատիկս իւրեանց և ահա վասն այսր էր որ լինէր մեծամեծ վէճք մինչև մարդասպանութիւն իսկ տեղի գտանէր: Այս է Ծռազատիկ ասացեալն զորս յիշեցաք 'ի տեղիս տեղիս 'ի վեր անդր:



ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ Ս. ԵԿԵՂԵՑՒՈՅ

ՍԿՍԵԱԼ ՅԱՌԱՔԵԼՈՑ ԱՆՑԻ

# ԹԱԴԷՈՍԷ

ԵՒ

# ԲԱՐԹՈՒՂԻՄԷՈՍԷ

ՄԻՆՉ ՅՍՈՒՐԲ ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Առաքելական յաջորդութիւն Հայաստանեայց եկեղեցւոյ սկսեալ 'ի Թադէոսէ առաքելոյ յառաջնոյ ընդ Բարթողիմեայ, եւ Յուդա Թադէի առաքելոյ մինչ ցԳրիգոր Լուսաւորիչ Հայրն մեր, զի միայր զքաղուած ամս 'ի միթան զանուանս յաջորդացն, որոյ փոյթ եղեւ ըստ մեր գիտութեան. առաջին հայր Միքայէլ Սալլանթեան 'ի լոյս ընծայել որքան եւ եղեւ ձեռնհաս, որում հետեւող լեալ նորին շաւղաց Յովսէփ քահանայ Ջուղայեցի կարգել Գաւազանագիրս, յորոյ միջի յաւելեալ քանի մի անձինս 'ի նշանակելոցն Սալլանթեանի եւ զկնի սորա Յովհաննէս եպիսկոպոս Շահխաթունեան յէջմիածին շարագրեալ ստորագրութիւն կաթուղիկէ Էջմիածնի, յաւել կարգադրել բաց յերկուց գրուածոցն քանի մի անուանս ժողովեալ 'ի հին ճառընտրաց եւ յայլ տեղեաց. իսկ թէ ո՞յք որոյ աթոռոյ հովիւ կացեալ են՝ խառնէին երիս գրուածս իսկ: Այս փոյթ կալաք դոյզն ինչ աշխատանօք որոշել ուրոյն ուրոյն աթոռոց իշխանութիւնս աստէն զպատմութիւնս նոցա համառօտեալ, եւ յետոյ զգաւազանագիրան կարգելով համդէպ դնելով զթուականս. եւ որչափ ձեռնհաս կարացաք լինել այլոց մատենից եւս ստուգեալ 'ի չորս աթոռոց ուրոյն յիշելով զանուանս տեղեացն ուր կարգեալ են սրբազան առաքեալքն վերոյիշեալ զհովիւս հօտին Քրիստոսի. եւ 'ի վերջոյ գաւազանաւ որոշ դասեմք յորոց հասեալ մինչ ցԳրիգոր Լուսաւորիչ ցամ տեառն 303 բովանդակութիւն չորից աթոռոցն 'ի մի հովուապետութիւն գումարի որ անուանեցաւ կաթուղիկոսութիւն, այս է ընդհանրութիւն ազգային Եկեղեցւոյ:



ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ

## ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՈՅ



### ԴԱՐ ԱՌԱՋԻՆ

ԱՄՔ ՏԵԱՌՆ

1°. Թադէոս առաքեալ (*) մի յեօթանասնիցն եղբայր Թովմայի առաքելոյ՝ գայ յՆդեսիա և զկնի լուսաւորելոյ զարքայն հայոց զԱբգար հանդերձ ժողովրդովք, ձեռնադրէ եպիսկոպոս զխոյրարարն արքային զԱդդէ, և ինքն երթայ 'ի Շաւարշան Յարտազ գաւառ և անդ քարոզելով լուսաւորէ զժողովուրդն և հաստատէ զեկեղեցի անդ'. և ձեռնադրեալ զԶաքարիա եպիսկոպոս Թողու անդ 'ի տեղի իւր, ինքն անցանէ յԱղուանս և 'ի Սիւնիս անդ եւս հաստատեալ զեկեղեցի վասն 'ի քրիստոս հաւատացելոցն և ձեռնադրէ նոցա եպիսկոպոս զմին յաշակերտաց իւրոց որում անուննէր Եւստաթէոս յաշխարհէն Սիւնեաց, յորմէ սկիզբն եղեւ նոյն աթոռոյ, իսկ առաքեալն գնացեալ 'ի Կեսարիա Կապադովկացւոց, և քարոզեալ զՔրիստոս հաստատէ և անդ զեկեղեցի ձեռնադրեալ նոցա միանգամայն եպիսկոպոս՝ զԹէոփիլոս Անտիոքացի որ մի էր յաշակերտաց իւրոց. և դառնայ անդրէն 'ի Շաւարշան և անդ յամին 48 նահատակի յարքայէն Հայոց Սանատրկոյ ընդ դստեր նորին Սանդխտոյ և թաղի անդ: 30

2°. Ադդէ եպիսկոպոս (**) զկնի մեկնելոյ առաքելոյն 30

(*) Պատմութիւն Հայոց Չամչեան հատոր Ա. երես 289: Կրօնագիտութիւն. երես 96: Ստորագրութիւն կաթուղիկէ Էջմիածնի. հատ. Ա. եր. 145: Ստորագր. կաթու. Էջմի. զգալն Թադէոսի առաքելոյն յՆդեսիա դնէ յամին 39 ի, բայց այս թիւ սխալ երեւի, զի թէ Ադդէ որ նահատակեցաւ որդւոյն Աբգարու է լեալ 37 թուոյն զիարդ կարէ դնել զթիւ գալստեան առաքելոյն 39 թուոյն թէ եւ եղեալ իցէ 'ի թուականէ ծննդեան Քրիստոսի չունի այդչափ տարբերութիւն:

(**) Պատմ. Հայոց Չամչեան. հատ. Ա. եր. 291: Կրօնա. եր.

առաջին կացեալ 'ի հովուապետական յիշխանութեան 'յԵդեսիա յամի 30 և վարեալ զայն հովուապետական իշխանութիւնն զամս եօթն (7) նահատակի Ցանանեայ որդւոյ Սրբոյն Աբգարու յամին 37 Թուականին Քրիստոսի ։

35 3°. Եւստաթէոս (*) առաջին Եպիսկոպոս եկաց 'ի Սիւնիս . սա որպէս ասացաւ ձեռնադրեալ յառաքելոյն Թադէոսէ յամի 35 կարգեցաւ հովուապետ հօտին Քրիստոսի , և կացեալ անդ յիշխանութեանն զամս քսան և հինգ (25) նահատակեալ Թաղի 'ի Սիւնիս որ այժմ կոչի Տաթեւ այն է վանքն Տաթեւու . 'ի հնդետասաներորդի ամի իշխանութեան սորա մին յաշակերտակցաց սորին Եղիշէ անուն զկնի մահուան Սրբոյ առաքելոյն Թադէի գնացեալ յԵրուսաղէմ և ձեռնադրեալ եպիսկոպոս 'ի Յակոբայ Տեառնեղբօրէ , երթայ անցանէ յԱղուանս հաստատելով զաթոռ եպիսկոպոսութեան որ հաստատեալ իսկ էր յառաքելոյ անտի Թադէոսէ որպէս յիշեցաք 'ի վերոյ ։

37 4°. Աքիաս եպիսկոպոս (**) նստի զկնի Ադդէի յաթոռն Եդեսիոյ յամի 37 և կացեալ 'ի պաշտօնի հովուապետութեան զամս տասն (10) մինչ ցհինգերորդ ամն Սանատրկոյ՝ նահատակի հրամանաւ նորին յամին 46 և թաղի 'ի դերեզմանի հաւատացելոց ։

40 5°. Թէոփիլոս եպիսկոպոս (***) ձեռնադրեալ 'ի Սրբոյն Թադէոսէ առաքելոյ եկաց առաջին հովուապետ յաթոռն Կեսարիոյ յամի 40 և կառավարեալ զամս քսան (20) հանդերձ յամին 60 ։ Սա էր Անտիոքացի աշակերտեալ առաքելոյն Թադէոսի յառաջ քան զեպիսկոպոսանալն իւր

---

96։ Սարգսագր. Կաթու. Էջմի. հատ. Ա. եր. 151։ Առաքէն յիշելն մեր զպատմութիւն Զամչեան չհամայ համել մի ըստ միոջէ յիշել զԿորնելեանցն եւ զայլս ։

(*) Պատմութիւն Հայոց Չամչեան. հատ. Ա. եր. 298։ Կրօնա. եր. 96։ Սարգսագր. կաթու. Էջմի. հատ. Ա. եր. 152 ։

(**) Սարգսագր. կաթու. Էջմի. հատ. Ա. եր. 145։ Յովսէփ քահանայ Ջուղայեցի 'ի գաւառագանագիրս ։

(***) Պատմ. Հայոց Չամչեան. հատ. Ա. եր. 296։ Կրօնա. եր. 97։ Սարգսագր. կաթու. Էջմի. հատ. Ա.

6°. Բարթողիմէոս առաքեալ (*) մի յերկոտասանից, զկնի նահատակման Թադէի գայ 'ի Հայս բերելով ընդ իւր զպատկեր Տիրամօրն և մտեալ 'ի վիճակ առաքելոյն Թադէի յԱրտազ, անտի գնայ յայլ և այլ գաւառս Հայաստանեայց, որ և գնացեալ 'ի Սիւնիս 'ի Գողթան գաւառ անդ ձեռնադրէ զմին յաշակերտաց իւրոց զԿումսի եպիսկոպոս և թողեալ անդ առ Սոսաթէի, ինքն դարձ արարեալ անցանէ հեր և զարեւանդ գայ հասանէ Յուրբանոս քաղաք և 'ի ձեռն որոյ հաւատայ 'ի Քրիստոս քոյրն արքային Սանատրկոյ Ողուհի և ապա նահատակի 'ի քաղաքի անդ հրամանաւ Սանատրկոյ յամին 65, և թաղի անդ։ 49

7°. Կումսի եպիսկոպոս (**) զկնի մահուանն Եւստաթէոսի ընկալեալ զնոյն իշխանութիւն հովուապետական աթոռոյն Սիւնեաց յամի 60 կառավարեաց զամս քսան և ութ (28), և վախճանեալ յԱքուլիս թաղի անդ։ Սա յառաջին մոգ էր, բայց յետոյ հաւատաց 'ի քարոզութիւնն Բարթողիմէոսի առաքելոյ և ձեռնադրեալ 'ի նմանէ եպիսկոպոս 'ի Գողթան, ապա զկնի մահուան Եւստաթէի հովուապետական իշխանութեամբ կեցեալ յաթոռն Սիւնեաց վախճանի յամին 88։ 60

8°. Դուբիաս եպիսկոպոս (***) եկաց երրորդ հովուապետ Եդեսիոյ յամի 65 որոյ իշխանութեանն ամք մինչ յաւուրս Տումիտիանոսի կայսեր այսինքն՝ զամս քսան (20)։ քանզի 'ի հալածանացն սորին Տումիտիանոսի նահատակեցաւ յամին 94։ Սա էր ազգաւ Հրեայ և որպէս հաւանական թուի էր յազգականութենէ Տուբիայ որ ասպնջական կալաւ զառաքեալն Թադէոս 'ի գալ նորա յԵդեսիա։ 65

9°. Յուդա Թադէոս (****) մի յերկոտասանից որ և Ղեբէոս անուանեալ. սա նախ քարոզեալ 'ի Հնդիկս զկնի Գալստեան հոգւոյն սրբոյ, ապա յամի 65 գայ 'ի Հայաս- 66

---

(*) Պատմ. Հայոց Չամչեան. հատ. Ա. եր. 297։ Կրօնա. եր. 96։ Ստորագր. Կաթու. Էջմի. հատ. Ա. եր. 146—148։

(**) Կրօնա. եր. 97։ Ստոր. Կաթու. Էջմի. հատ. Ա. եր. 154։

(***) Ստորագր. Կաթու. Էջմի. հատ. Ա. եր. 155։ Յովսէփ քահանայ 'ի գաւառագանագիրս։

(****) Կրօնա. եր. 96-97։ Ստորագր. Կաթող. Էջմի. հատ. Ա. եր. 155-156։

տան մինչդեռ կենդանի էր Բարթուղիմէոս առաքեալ, որ և 'ի քարոզելն և 'ի շրջելն 'ի Հայս պատահեալ միմեանց 'ի բլուրն Արտաշու խրախ լինէին 'ի տէր. և այս յամի 66 զկնի նահատակութեան Բարթուղիմեայ, գայ 'ի վիճակ Թադէի և Բարթուղիմեայ, և անդ կացեալ զամս երիս (3) նահատակի՝ 'ի Զարեւանդ գաւառի յորմէ քաղաքի, յարքայէն Հայոց Երուանդայ երկրորդէ 'ի 69 թուականութեան Քրիստոսի. և մարմին այսր Յուդայի թաղի անդ՝ 'ի հաւատացելոց յորոյ վերայ շինեցաւ եկեղեցի որ կայ ցայժմ։

69 10°. Զաքարիա եպիսկոպոս (*) սա որպէս ասացաք 'ի վեր անդր ձեռնադրեցաւ եպիսկոպոս յառաքելոյն Սըրբոյն Թադէոսէ յամի 31 Յարտազ գաւառի 'ի Շաւարշան և անդ հովուէր զհօտ հաւատացելոցն որ 'ի Քրիստոս, և զի այս վիճակ յատուկ էր առաքելոցն 'ի գնալ և 'ի գալ, յառաջ քան զսա զերիս առաքեալս դասեցաք 'ի թիւ յայսմ աթոռոյ և այս զկնի նահատակմանն Յուդա Թադէի սա ընկալաւ նոյն հովուապետական իշխանութիւնն զամս երկու (2), և նահատակեալ յերկրորդ յԵրուանդայ արքայէն Հայոց 'ի գրգռութենէ մոգուցն յամի 70 թաղեցաւ անդ 'ի Շաւարշան։

70 11°. Զեմենտոս եպիսկոպոս (**) յաջորդէ 'ի Շաւարշան Զաքարիայ յամի 70 և կառավարեալ զհօտն զամս ինն (9) նահատակեցաւ 'ի Մոգուց անտի 'ի Շաւարշան յ79 թըւականին Քրիստոսի։

89 12°. Բաբելաս եպիսկոպոս (***) նստեալ յաթոռն հովուապետական 'ի Սիւնիս յամի 89 զկնի մահուան Կումսեայ և կառավարեալ զամս երեսուն և մի (31) վախճանի յամին 120 լի աւուրբ ծերութեան. քանզի սա ձեռնադրեալ ընդ Կումսեայ 'ի Բարթուղիմէոսէ առաքելոյ, կեայր 'ի մի գաւառս Սիւնեաց եպիսկոպոսութեամբ ընդ

---

(*) Կրօնա. եր. 96—97։ Սոփերագր. Կաթուղ. էջմի. հատ. Ա. եր. 153։ Պատմ. Հայոց Չամչեան եւ այլք։

(**) Պատմ. Հայոց Չամչեան. հատ. Ա. եր. 291։ Կրօնա. եր. 97։ Սոփերագր. Կաթու. էջմի. հատ. Ա. եր. 153։

(***) Կրօնա. եր. 97։ Սոփերագր. Կաթու. էջմի. հատ. Ա. եր. 155—156։

իշխանութեանց հովուապետին Կումանեայ, իսկ զկնի վախ- ճանի նորա յաջորդէ նմա։

13°. Բարսումաս եպիսկոպոս (*) Հայկազն յաջորդէ Տուքիայ յԵդեսիա յամի 95 'ի հովուապետական աթո- ռոջն, և կեցեալ 'ի նոյն իշխանութիւն զամս քսան և հինգ (25) բազում չարչարանս կրեալ յաւուրս հալածանաց Տրայիանոսի կայսեր վասն համարձակ քարոզելոյ զՔրիս- տոս Աստուած. և ապա ազատ լեալ 'ի տանջանացն զկնի ինչ ժամանակի վախճանի 'ի բարւոք ծերութեան յամի 120 և թաղի անդ յԵդեսիա։ Այս զկնի Բարսումայ Ե- դեսացւոյ՝ չորից աթոռոցն եւս եպիսկոպոսունք թէ ոյք անունք իցեն լեալ մինչ 'ի մեծն, այն է յերեսուն ամաց միջոցի հովուապետացն, որոց յայտնութեանն ակն ու- նիմք յապագայ ժամանակի, 'ի ձեռն ազգասէր անձանց գուցէ յայտնեսցի, զի յայտ է թէ այս աթոռք չկարեն կալ պարապ առանց հովուապետի թէպէտ պատմութիւն ժամանակիս զլանան մեզ այժմ։ 95

14°. Մխիթար եպիսկոպոս (**) Վանահայր Թանահա- տի Վանուց 'ի թուին 150 հրաւիրի 'ի պաշտօն հովուա- պետական յաթոռն Սիւնեաց, զոր և ճգնողական վարուք կառավարեալ զամս քսան (20) հանդերձ խաղաղութեամբ 'ի 170 թուականին քրիստոսի և թաղի անդ 'ի փոքր բլ- րակի մերձ յեկեղեցին։ 150

15°. Զօթիկոս եպիսկոպոս (***) կացեալ 'ի հովուապե- տական պաշտօնի յաթոռն Կեսարիայ յամի 161, իսկ վասն հալածանաց ժամանակին նստէր 'ի Կոմանայ մերձ 'ի քա- ղաքն Եւդոկիայ, և հովուէր զհօտն Քրիստոսի, որ 'ի վի- ճակի իւրում։ Սա կեցեալ յաւուրց անտի հալածանացն Որեղիոս կայսեր մինչ յաւուրս հալածանացն Սեւերոսի կայսեր նահատակի 'ի սմին ժամանակի յամին 190։ Ա- ռէն եւս զկնի Զօթիկոսի 'ի քսան ամաց միջոցի անյայտ 161

(*) Կրօնա. եր. 97։ Ստորագր. կաթու. էջմ. հար. Ա. եր. 155—156։

(**) Կրօնա. եր. 98. Ստեփաննի Օրբէլ պատմութիւն Սիւնեաց։ Ստորագր. կաթու. էջմ. հար. Ա. եր. 157։

(***) Եւսէբիոս Կամբիւլեան տպ. Ն. գլ. 16։ Կրօնա. եր. 97։ Ստորագր. կաթու. էջմ. հա. Ա. եր. 157։

մնան 'ի մէնջ անուանք հովուապետացն չորից՝ աթոռոցն ։

210 16՝. Աղէքսանդր կամ Աղէքսանդրոս (*) եպիսկոպոս կեցեալ յաթոռն Կեսարիոյ զամս տասն (10) այսինքն 'ի յ210 ամին մինչ ցամն 220, և յետ տասն ամաց իշխանութեանն հրաժարեալ յաթոռոյն գնաց յԵրուսաղէմ ըստ խնդրելոյ Նարկեսոսի պատրիարքին Երուսաղէմի, զի այս Նարկեսոս ծերացեալ գոլով 'ի վերջին աւուրս իւրոյ կենդանութեանն տայ զպաշտօն հովուապետութեանն Երուսաղէմի այր Աղէքսանդրի յամին 220 ։

221 17°. Մեհրուժան եպիսկոպոս (**) կոչի 'ի պաշտօն հովուապետական յաթոռն Արտազու յամի 221 և կառավարեալ զհօտն որ 'ի վիճակի իւր զամս քսան և եօթն (27)։ Նահատակեցաւ 'ի մեծէն Խոսրովայ յարքայէն Հայոց յաւուր հալածանաց նոյն արքայի յամին 248. առ այս Մեհրուժան գրեաց գիրս վասն իրաց եկեղեցւոյ՝ եպիսկոպոսն Աղէքսանդրու այն է Դիոնեսիոս՝ նախ քան զնահատակութիւնն, որպէս յիշէ Եւսեբիոս Կեսարացի Պամփիւլեայ եպիսկոպոսն ։

240 18՝. Ակակիոս եպիսկոպոս (***) յաջորդ եկաց հովուապետական աթոռոյն Եդեսիոյ յ240 թուին և յաւուրս հալածանացն շրջէր աստ և անդ զհօտիւն որ և զհարուստ ժամանակս 'ի Տիգրանակերտ անցուցանէր. և կեցեալ 'ի նոյն հովուապետական իշխանութեան զամս քսան 'ի ժա-

(*) Կրօնա. եր. 99։ Ստորագր. կաթու. էջմ. հատ. Ա. եր. 158։ Յաջորդու. պատրի. Երուսղ։ Զիշխանութիւն սորին Աղէքսանդրի հայր Միքայէլ Սալլանդեան 'ի Կեսարիոյ համարի մինչ 230. սակայն ճշգագոյն օրինակք 220 ամի ասեն զայս. Երուսաղէմի. որում չմնայ տալ 20 ամ 'ի Կեսարիայ վարել զպաշտօնն հովուական ։

(**) Եւսեբի պատմ. եկեղ. գրքութիւն Զ. գլ. 45 համար։ Կրօնա. եր. 98։ Ստորագր. կաթու. էջմ. հատ. Ա. եր. 158։ Հայր Միքայէլ 'ի ժամանակէ գրոց Դիոնէսիոսի գրէ սկիզբն իշխանութեան սորին որ է 230. սակայն սա ոչ 'ի սոյն թուոյ այլ յառաջնմէ իսկ էր նստեալ յաթոռն որպէս ակնարկէ Եւսեբիոս յառաջ քան զայն գրութիւն, էր նա կոչեցեալ յայն պաշտօն առ որոյ անկանի սկիզբն իշխանութեան յամի 220—221.

(***) Կրօնա. եր. 99։ Ստորագր. կաթու. էջմ. հա. Ա. եր. 258.

մանակս հալածանացն Դեկոսի կայսեր նահատակեցաւ 'ի Տիգրանակերտ 'ի ձեռն Մարկիանոս հիւպատոսին. յ260 թուին, և թաղեցաւ անդ 'ի Տիգրանակերտ :

19°. Փերմիլիանոս եպիսկոպոս (*) եկաց յաւուրս 251
յայտնապէս յամին 251. հովուապետ աթոռոյն Կեսարիոյ որոյ նախորդքն սորա որք այսր աթոռոյ զկնի Աղեքսանդրի 31 ամ անծանօթ են 'ի մեզ :

Սա կեցեալ զամս քսան և մէկ (21) յիշխանութեանն հանդերձ խաղաղութեամբ յամի 269 կամ 272 : Այս Փերմիլիանոս գտաւ երկիցս 'ի ժողովն Անտիոքայ, որ ընդդէմ Սամոստացւոյն Պօղոսի աղանդոյն. նաեւ գիտել արժան է, զի սա էր աշակերտ Որոգինեայ առն իմաստնոյ և պատուականի :

20°. Արքեղայոս եպիսկոպոս (**) հրաւիրի յաթոռն 260
Եդեսիոյ զկնի Ակակիոսի յամի 260 որ և կառավարեալ զամս քսան (20) վախճանի 'ի Միջագետս յ280 թուոյն և թաղի 'ի հաւատացելոցն որ անդ : Սա ընդդէմ եկաց բանից Մանի աղանդապետի 'ի Միջագետս յամին 277 որպէս վկայէ Կիւրեղ Երուսաղէմացի 'ի կոչումն ընծայութեան :

21°. Կղէնէոս եպիսկոպոս (***) եկաց յաջորդ Փերմիլեայ 272
'ի Կեսարիայ յամի 272 'ի նոյն աթոռ հովուապետական իշխանութեան զամս տասն և հինգ (15) մինչ ցհալածանս Դիոկղետիանոսի կայսեր յորում ժամանակի և ինքն նահատակեցաւ 'ի ձեռն Խաս դքսոյ յ287 թուականին. 'ի ժամանակս յայտնի կային այլ և այլ եպիսկոպոսունք, որք են Վլլասիոս եպիսկոպոս 'ի Սեբաստիոյ, Աթանագինէ եպիսկոպոս Սեբաստացի 'ի Փիլակթոմիոյ որ զկնի Կղէնէոսի նստաւ յաթոռն Կեսարիոյ հովուապետական իշխանութեամբ :

---

(*) Եւսեբ. Եկեղ. պատմութիւն: Կրօնս. եր. 99: Սարգս. կաթու. էջմի. հատ. Ա. եր. 159: Տիեզերական պատմ. հա. Բ. եր. 247:

(**) Կրօնս. եր. 99: Սարգսագր. կաթու. էջմի. հատ. Ա. եր. 159: Տիեզերական պատմ. Ղամբրբեանի. հա. Բ. եր. 248:

(***) Կրօնս. եր. 9: Սարգսագր. կաթու. էջմի. հա. Ա. եր. 160:

280 22'. Կոն կամ Կոնոս եպիսկոպոս (*) կոչի 'ի պաշտօն եպիսկոպոսապետութեան զկնի մահուանն Արքեղայոսի յաթոռն Եդեսիոյ յամի 280, և կառավարեալ զեկեղեցի զամս եօթն (7), այսինքն մինչ ցաւուրս հալածմանց Դիոկղետիանոսի կայսեր նահատակի 'ի հալածմանցն որ 'ի դատաւորութեան Մուսիանոսի յ287 թուոյն և թաղի անդ 'ի հաւատացելոց։

287 23'. Աթանագինէ եպիսկոպոս (**) յաջորդէ Կղէնոսի յամի 287 զկնի մահուան նորա. սա որպէս ասացաք 'ի վեր անդր նախ լեալ էր եպիսկոպոս 'ի Փիլադելփեայ քաղաքի որ էր ընդ իշխանութեամբ աթոռոյն Կեսարիայ որ և զկնի նահատակութեան Կղէնէսի 'ի նոյն աթոռ հովուապետական կոչի, և կառավարեալ զամս չորս (4) նահատակի առ Դիոկղետիանոսիւ, Յադրիկողայոս դատաւորէ Սեբաստիոյ, յամին 290 և թաղի 'ի Կեսարիա։

290 24°. Ղեւոնդ կամ Ղեւոնդիոս եպիսկոպոս (***), յաջորդէ զաթոռն հովուապետական զկնի Աթանագինեայ յ290 թուականին, և հասեալ մինչ ցաւուրս ժողովոյն Նիկիոյ, ցամն 325։ Յերկոտասաներորդ ամի իշխանութեան սորա յ 302 թուոյն յաւուրս Տրդատայ արքայի Հայոց, կամ եղեւ Աստուծոյ ընդհանուր զազգն Հայոց 'ի լոյս գիտութեան վերածել, ուստի և յարոյց զմի հովիւն զքաջամաչարչար նահատակն զՍուրբն Գրիգոր զԼուսաւորիչն հանուրց ազգիս. որ յայն ժամանակս գնացեալ ձեռնադրեցաւ 'ի Կեսարիա յեպիսկոպոսէն Ղեւոնդեայ ընդհանուր հովիւ Հայկազնեանս սեռի այսինքն կաթուղիկոս, որ՝ է հանրական գլուխ Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ

(*) Ի հին ճառընտիրս 'ի վարս Շմոնայ եւ Գուրիասայ։ Ստորագր. Կաթու. Էջմի. հատ. Ա. եր. 156։

(**) Վարք սրբոց 'ի վարս իւր։ Ստորագր. Կաթուղ. Էջմի. հատ. Ա. եր. 161։

(***) Կրօնս. եր. 99. Ստորագր. Կաթու. Էջմի. հա. Ա. եր 154. Պատմ. Հայոց Չամչեան. հա. Ա. էջ. 390։

# ԱՂԻՒՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ ԴԱՐ Ա.

| Ամք Տեառն ըստ հասարակ Թուաց. | Յաջորդ. Գործոցն Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն Հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցաւուրսն Գրիգոր Լուսաւորչի | | | | Յիշատակութիւնք իրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Ի ՇԱՀԱՐՇԱՆ | ՅԵԴԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԻԱՑԻՈՑ | |
| 30 | Յակոբ առաքեալ Ա. յամն 30 | Թադէոս առաքեալ 18 | Ադդէ 7 | | | |
| 34 | | | | | | Քարկոծումն սրբոյն Ստեփաննոսի նախավկային |
| 35 | | | | Նեստորէոս 25 | | |
| 37 | | | Աբրիս 10 | | | |
| 40 | | | | | Թէոփիլոս 20 | |
| 42 | | | | | | Յակոբոս Զեբեդեայ գլխատի 'ի Հերովդէ. |
| 43 | | | | | | Հեղինէ դշխոյ կին Աբգարու՝ գայ յԵրուսաղէմ ընդ Խուրանայ. |
| 45 | | | | | | Վերափոխումն սուրբ Աստուածածնայ. |
| 48 | | | | | | Թադէոս առաքեալ նահատակի ընդ Սանդխոյ կուսին. |

# ԱՂԻՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ ԴԱՐ Ա.

| Ամք Տեառն ըստ հասարակ թուոյ | Յաջոր. Պորցն. Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն Հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցաւուրսն Գրիգոր Լուսաւորիչ | | | | Քրիստոնէութիւնք իւրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Ի ՇԱՒԱՐՇԱՆ | ՑԵԴԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԱՑՒՈՑ | |
| 49 | | Բարթուղիմէոս առաքեալ 16 | | | | |
| 50 | | | | | | Եղիշէ առաքեալ գնայ յաղուանս Դշխոյն Հեղինէ Հայոց կին Աբգարու թագաւորին մեռանի յԵրուսաղէմ. |
| 51 | | | | | | Ժողով առաքելոցն յԵրուսաղէմ |
| 60 | Շմաւոն առաքեալ 48 | | | Կուամիս եպիսկոպոս 28 | | Յակոբ Տեառնեղբայր նահատակի. |
| 65 | | | Դուբիա 29 | | | |
| 66 | | Յուդա Թադէոս 3 | | | | |
| 67 | | | | | | Առումն Երուսաղէմի 'ի Տիտոսէ. |
| 69 | | Զաքարիա եպիս. 2 | | | | |
| 89 | | | | Բարեղաս | | |

# ԱՂԻՒՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՅԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ ԴԱՐ Բ.

| Ամք Տեառն ըստ հասարակ թուականին | Յաջորդ. Աթոռոյն Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն Հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցսուրբն Գրիգոր Լուսաւորիչ | | | | Յիշատակութիւնք իրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Ի ՇԱՒԱՐՇԱՆ | ՅԵԴԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԱՑԻՈՑ | |
| 95 | | | Բարսումայ 25 | | | |
| 107 | | | | | | Շմաւոն ազգական Քրիստոսի նահատակի։ |
| 108 | Յուստոս Ա. 10 | | | | | |
| 118 | Զաքէ ժամանակն անորոշ | | | | | |
| „ | Տոբիթ | | | | | |
| „ | Բենիամին | | | | | |
| „ | Յովհաննէս Ա. | | | | | |
| „ | Մատաթիա | | | | | |
| „ | Փիլիպպոս Ա. | | | | | |

| Ամք Տեառն ըստ հասարակ Թուոց. | ԱՂԻՒՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ ԴԱՐ Բ. | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Յաջոր. Պորքն. Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցաւուրսն Գրիգոր Լուսաւորիչ | | | | Յիշատակութիւնք իրացն անցելոց |
| | Անուանք Պատրիարքացն | Ի ՇԱՒԱՐՇԱՆ | ՑԵԴԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԱՑՒՈՑ | |
| 118 | Սենեկա | | | | | |
| „ | Յուստոս Բ. | | | | | |
| „ | Ղեւի | | | | | |
| „ | Եփրեմ | | | | | |
| „ | Յովսէփ | | | | | |
| „ | Յուդա Ա. ժը-ն 20 ամ | | | | | Աւերումն Երուսաղէմի Ադրիանոս կայսեր հռովմայեցւոց. և նորոգումն անդրէն 'ի նոյն կայսերէ. |
| 138 | Մարկոս Ա. | | | | | |
| 150 | | | | Մխիթար 20 | | |
| 157 | Կասիանոս 7 | | | | | |

| Ամք Տեառն ըստ հասարակ Թուոյ | ԱՂԻՒՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ ԴԱՐ Բ· | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | Յաջորդ· Պետրոսի· Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն Հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցսուրբն Գրիգոր Լուսաւորիչ | | | | Յիշատակութիւնք իրացն անցելոց |
| | Անուանք Պատրիարքաց | Ի ՇԱՒԱՐՇԱՆ | ՅԵԴԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԱՑԻՈՑ | |
| 161 | Պապղոս Թիւ անորոշ | | | | Զօթիկոս 29 | |
| „ | Մաքսիմոս Ա· | | | | | |
| „ | Յուլիանոս Ա· | | | | | |
| „ | Գայիոս Ա· | | | | | |
| „ | Սիմաքոս | | | | | |
| „ | Գայիոս Բ· | | | | | |
| „ | Յուլիանոս Բ· էն 25 ամ | | | | | |
| 186 | Կապիտոն 4 | | | | | |
| 190 | Մաքսիմոս Բ· Թիւն անորոշ | | | | | |

## ԱՂԻՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ ԴԱՐ Գ.

| Ամք Տեառն ըստ հասարակ Թուոյ. | Ցաճոր. Պորքսն. Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն Հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցառըրն Գրիգոր Լուսաւորիչ | | | | Ցիշատակութիւնք իրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Ի ՇԱՒԱՐՇԱՆ | ՑԵՂԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԱՑԻՈՑ | |
| 190 | Անտոնինոս | | | | | |
| ” | Վաղէս | | | | | |
| ” | Դողիքիանոս գ-ն 8 ամ | | | | | |
| 199 | Նարկէսոս 17 | | | | | |
| 210 | | | | | Աղէքսանդր 10 | |
| 212 | Տիոս թիւն անորոշ | | | | | |
| ” | Գերմանիոն | | | | | |
| ” | Գրիգորիս գ-ն 8 ամ | | | | | Աղէքսանդր հրաժարի 'ի Կապադովկիոյ, գնայ յԵրուսաղէմ։ |
| [illegible] | Աղէքսանդր | | | | | |

| Ամք Տեառն ըստ հաշուական Թուոյ | Յաջոր. Գորքն. Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն Հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցաւուրսն Գրիգոր Լուսաւորիչ | | | | Յիշատակութիւնք իրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Ի ՇԱՒԱՐՇԱՆ | ՑԵՂԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԱՑԻՈՑ | |
| 221 | | Մեհրուժան 27 | | | | |
| 240 | | | Ակակիոս 20 | | | |
| 251 | Մղաբիանոս 42 | | | | Փիրմիլիանոս 21 | |
| 260 | | | Արքելայիոս 20 | | | |
| 264 | Նիմենոս 5 | | | | | |
| 269 | Դաճաս 19 | | | | | |
| 272 | | | | | Կղենես 15 | |
| 280 | | | Կոն 7 | | | |
| 287 | | | | | Աթանակինէս 4 | |

# ԱՂԻՒՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՑԵՏ ՔՐԻՍՏՈՍԻ ԴԱՐ Դ.

| Ամք Տեառն ըստ հասարակ Թուա. | Յաջոր. Պատրքն. Երուսաղէմի | Առաքելական յաջորդութիւն եկեղեցւոյն Հայոց Սկզբնաւորեալ 'ի չորս աթոռս մինչ ցաւուրքն Գրիգոր Լուսաւորիչ | | | | Ցիշատակութիւնք իրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Ի ՇԱՒԱՐՇԱՆ | ՑԵՆԴԵՍԻԱ | Ի ՍԻՒՆԻՍ | Ի ԿԵՍԱՐԻԱ ԿԱՊԱԴՈՎԿԱՑԻՈՑ | |
| 288 | Ըզըերդայ 10 | | | | | |
| 290 | | | | | Ղևոնդ մինչ ցաւուրքն Լուսաւորիչ 12 | |
| 298 | Զաբտաս 5 | | | | | |
| 299 | | | | | | |
| 301 | Հերմոնէ 11 | | | | | Սուրբն Գրիգոր Լուսաւորիչ ձեռնադրի Նախակաթողիկոս Հայոց և կաթողիկոս որ է ընդհանրական գլուխ եկեղեցւոյն Հայոց. յետ գլխոյն Քրիստոսի. |
| 302 | | | | | | |
| 312 | Մակար Ա. 23 | | | | | |
| 327 | | | | | | Խաչափայտն Քրիստոսի գտանի 'ի ձեռն դշխոյն Հեղինէ մօր Կոստանդիանոս կայսեր. |
| 328 | | | | | | |

| Ամք Տեառն ըստ հաշ. թուոյ | ԱՂԻՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԵՒ ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ ՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԴԱՐ Դ.-Է. | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Յիշատակութիւնք իրացն անցելոց | Ամք Տեառն | Անուանք Պատրիարքացն | Յիշատակութիւնք իրացն անցելոց | Ամք Տեառն | Անուանք Պատրիարքացն | Յիշատակութիւնք իրացն անցելոց |
| 335 | Մակարիոս Գ. 15 | | 424 | Յուվինաղիոս 4 | | 520 | Մակար Բ. 26 | |
| 350 | Կիւրեղ Երուսաղէմացի Ա. 16 | | 428 | Յորնաղ 27 | | 546 | Եւստաթէոս 2 | |
| 355 | Եւթիմէոս անորոշ թուով | | 452 | | Ժողովն լինի Քաղկէդոնի | 548 | Յովհաննէս Դ. 27 | |
| " | Կիւրեղ՝ Երկնոր Բ. | | 453 | Թէոդորոս Ա. 2 | | 575 | Ամոս 19 | |
| " | Հերակլիոս գ-ն 4 ամ | | 458 | Անաստաս 5 | | 594 | Սահակ Ա. 8 | |
| 359 | Յուդա Կիւրեղ Գ. | | 461 | Մարտիրիոս Ա. 17 | | 602 | Զաքարիա Ա. 27 | |
| 367 | Եւսեբիան թիւն անորոշ | | 478 | Սալուստիոս 7 | | 614 | | Աւերումն Երուսաղէմի ՚ի Պարսից Գերումն սուրբ խաչին և Զաքարիայ պատրիարքին |
| " | Դամասոս բ-ն 12 ամ | | 485 | Եղիա Ա. 17 | | 615 | | |
| 387 | Յովհաննէս Բ. 30 | | 502 | Յովհաննէս Գ. 14 | | 629 | Սոփրոնիոս 9 | Դարձ Ս. խաչին յԵրուսաղէմ ՚ի ձեռն Հերակլ կայսեր |
| 417 | Պրայիլոս 7 | | 513 | Պետրոս Ա. 7 | | 630 | | |

| Ամ Տեառն ըստ հայկ. թվ. | Անուանք Պատրիարքաց | Ցիշատակութիւնք իրաց անցելոց | Ամ Տեառն | Անուանք Պատրիարքաց | Ցիշատակութիւնք իրաց անցելոց | Ամ Տեառն | Անուանք Պատրիարքաց | Ցիշատակութիւնք իրաց անցելոց |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | ԱՂԻՒՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԵՒ ՅԱՋՈՐԴՈՒԹԵԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԴԱՐ Ժ Դ. | | | | | | | |
| 637 | Աբրահամ Ա. 32 | Առումն Երուսաղէմի յՕմէր խալիֆայէ. | 1076 | | Գրիգոր վկայասէր գայ յԵրուսաղէմ յերկրպագութիւն անօրինական տեղեաց. | 1187 | | Առումն Երուսաղէմի ՚ի Սալահատինայ սուլթանէն Եգիպտոսի. |
| 669 | Գրիգոր Ա. 12 | | 1080 | | | 1191 | Մինաս Ա. 14 | |
| 684 | Գէորգ 27 | | 1090 | Սիմէոն 19 | Գրիգոր վկայասէր կրկին գայ Եգիպ. գաւառաց | 1205 | Աբրահամ Դ. 13 | |
| 708 | Մկրտիչ Ա. 22 | | 1099 | | Առումն Երուսաղէմի ՚ի խաչակիր զօրաց Լատինացւոց. | 1216 | | Սարգիս եպիսկոպոս Սիւնեաց գայ յԵրուսաղէմ. և նահատակի անդ. |
| 730 | Յովհաննէս Ե. 23 | | 1109 | Մովսէս 24 | | 1217 | | |
| 758 | Սամփսոն 16 | | 1133 | Եսայի Ա. 19 | | 1218 | Առաքել 12 | |
| 774 | Եղիա Բ. 25 | | 1141 | | Գրիգոր Կաթող. եղբայր Շնորհալւոյն գայ յԵրուսաղէմ. և լինի ժողով ընդ Լատինացւոց. | 1227 | | Չեթում թագաւոր Հայոց գայ յԵրուսաղէմ և առնէ շինութիւնս |
| 885 | Աբրահամ Բ. 21 | | 1142 | | | 1228 | | |
| 981 | Գրիգոր Բ. 25 | | 1152 | Սահակ Բ. 28 | | 1230 | Յովհաննէս Զ. 8 | |
| 1006 | Արսէն 32 | | 1180 | Աբրահամ Գ. 11 | | 1238 | Յակոբոս Բ. 43 | |

| Ամք Տեառն ըստ հայկ. Թ. | Անուանք Պատրիարքացն | Ցիշատակութիւնք իրացն անցելոց | Ամք Տեառն | Անուանք Պատրիարքացն | Ցիշատակութիւնք իրացն անցելոց | Ամք Տեառն | Անուանք Պատրիարքացն | Ցիշատակութիւնք իրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1281 | Սարգիս Ա. 32 | | 1358 | Գրիգոր Գ. 8 | | 1417 | Պօղոս Բ. 2 | |
| 1286 | | Լեւոն Գ. արքայ Հայոց գայ յԵրուսաղէմ, և շինէ պարիսպն. | 1366 | Մկրտիչ Ա. 15 | | 1419 | Մարտիրոս Բ. 11 | |
| 1290 | | | 1381 | Յովհաննէս Ը. 4 | | 1430 | Եսայի Գ. 11 | |
| 1302 | | Հեթում Բ. արքայ Հայոց գայ յԵրուսաղէմ | 1382 | | Լեւոն Զ. Լուսինեան արքայն Հայոց գայ յԵրուսաղէմ ընդ թագուհւոյն իւրոյ և ընդ դստերն. | 1431 | | Վ. իրք առին զԳոգգոթա բռնութեամբ 'ի ձեռաց մերոց. |
| 1313 | Աստուածատուր Ա. 4 | | 1383 | | | 1432 | | |
| 1317 | Դաւիթ Ա. 4 | | 1385 | Գրիգոր Դ. 5 | | 1441 | Յովհաննէս Թ. 4 | |
| 1321 | Պօղոս Ա. 10 | | 1390 | Եսայի Բ. 5 | | 1454 | | Օսմանցիք առին զԿոստանդնուպօլիս և բարձաւ կայսրութիւնն Յունաց. |
| 1331 | Վարդան 10 | | 1393 | Սարգիս Բ. 24 | | „ | | |
| 1341 | Յովհաննէս Է. 12 | | 1405 | | Մարիամ թագուհի ընդ դստերն փախճանին յԵրուսաղէմ. | 1445 | Աբրահամ Ե. 9 | |
| [illegible] | Բարսեղ | | [illegible] | | | [illegible] | Մեսրոպ | |

| Ամք Տեառն ըստ հայկ. թը. | ԱՂԻՍԱԿ ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ԵՒ ՅԱՋՈՐԴՈՒԹԻՒՆ ՊԱՏՐԻԱՐՔԱՑՆ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ ԴԱՐ ԺԸ. | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| | Անուանք Պատրիարքացն | Յիշատակութիւնք իրացն անցելոց | Ամք Տեառն | Անուանք Պատրիարքացն | Յիշատակութիւնք իրացն անցելոց | Ամք Տեառն | Անուանք Պատրիարքացն | Յիշատակութիւնք իրացն անցելոց |
| 1461 | Գէորգ Բ. 15 | Սկիզբն պատրիարքութեան Հայոց 'ի Կ. Պօլիս Յովակիմ եպիսկոպոսէ ։ | 1523 | Աստուածատուր Բ. 21 | րիսպն Երուսաղէմի շըրջապատելով։ | 1684 | Յովհաննէս ԺԱ. 7 | |
| 1462 | | | 1542 | Փիլիպպոս Բ. 20 | | 1691 | Մինաս 11 | |
| 1476 | Մկրտիչ Բ. 3 | | 1564 | Անդրէաս 29 | | 1701 | Աւետիք | |
| 1479 | Յովհաննէս Ժ. 12 | | 1593 | Դաւիթ Բ. 20 | | 1705 | Մաթէոս | |
| 1491 | Մարտիրոս Գ. 10 | | 1613 | Գրիգոր Ե. 32 | | 1705 | Մարտիրոս | |
| 1501 | Գէորգ Գ. 6 | | 1645 | Աստուածատուր Գ. 22 | | 1706 | Միքայէլ | |
| 1507 | Սարգիս Գ. 16 | | 1651 | | Փիլիպպոս կաթողիկոս Էջմիածնայ և Ներսէս կաթուղիկոս Սսոյ գան յԵրուսաղէմ։ | 1707 | Սահակ | |
| 1517 | | Առումն Երուսաղէմի յՕսմանեանց 'ի Սուլթան Սէլիմէ Եաւուզ անուանելոյ։ | 1652 | | | 1708 | Յովհաննէս | |
| 1518 | | | 1664 | Եղիազար 14 | | 1714 | Յովհաննէս | |
| 1520 | | Քանունի Սուլթան Սիւ. | 1667 | Մարտիրոս Դ. | | 1745 | Գրիգոր Ձ. | |

| Ամ. | Պատրիարքացն | Իրացն անցելոց | Ամ. | Պատրիարքացն | Իրացն անցելոց | Ամ. | Պատրիարքացն | Իրացն անցելոց |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1749 | Յակոբ Գ. 3 | | 1819 | Գաբրիէլ 21 | | 1847 | Կիրակոս 5 | Շինեցաւ եկեղեցի հռոմէական Յունաց որ յառաջն չէր։ |
| 1752 | Թէոդորոս Բ. 9 | Նաղուշ ապա մեծատուն ամիրայ գայ յԵրուսաղէմ։ | 1824 | | Գաբրիէլ պատրիարք գնայ 'ի Կ. Պօլիս հրամանաւ ազգին։ | ” | | |
| 1761 | Կարապետ 6 | | 1825 | | | 1848 | | Եկն յԵրուսաղէմ պատրիարք Լատինաց յորմէ սկիզբն եղեւ։ |
| 1768 | Պօղոս Գ. 7 | | 1827 | | Պօղոս եպիսկոպոս Նախկին պատրիարք գայ յԵրուսաղէմ։ | 1850 | Յովհաննէս ԺԲ. 10 | |
| 1775 | Յովակիմ 18 | | 1828 | | | 1857 | | Սկիզբն կալաւ եպիսկոպոսի Ռուսաց նստիլ յԵրուսաղէմ որ յառաջն չէր։ |
| 1793 | Պետրոս Դ. 6 | | 1834 | | Իպրահիմ փաշայն Եգիպտոսի գայ զօրօք յԵրուսաղէմ։ | 1858 | | |
| 1799 | Թէոդորոս Գ. | Պոնաբարթ Ա. գայ 'ի Յոպպէ զօրօք և դառնայ անդրէն։ | 1835 | | | 1860 | | Շինեցաւ վանքն Ռուսաց արտաքոյ քաղաքին Երուսաղեմայ որ սկիզբն եղեւ յաճախելոյ Ռուսաց յԵրուսաղէմ։ |
| 1800 | | | 1840 | Զաքարիա Բ. 6 | | ” | | |
| 1808 | | Սուրբ յարութեան տաճարն այրեցաւ։ | 1841 | | Անգղիացիք հաստատեն եպիսկոպոս և շինեն եկեղեցի յԵրուսաղէմ։ | 1861 | | |
| 1810 | | Սուրբ յարութեան տաճարն նորոգեցաւ։ | 1842 | | | 1864 | Եսայի Դ. որ այժմ է | Խասանայ վարել զիշխանութիւնն սահմանադրական օրինօք։ |

# ՑԱՆԿ

## ԱՅԼ ԵՒ ԱՅԼ ԻՐԱՑ

## ՈՐՔ ԳՏԱՆԻՆ Ի ԳԻՐՍ ԱՅՍ ԸՍՏ ԿԱՐԳԻ ԱՅԲՈՒԲԵՆԻՑ





# ՔԱՂԿԵԴՈՆԵԱՆ ԺՈՂՈՎ

ԵՒ

# ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԵԿԵՂԵՑԻ

*Այլ է համբաւ, այլ է ճշմարտութիւն։*
*Եղիշէ։*

*Մխիթարեան Ցարգ. Հարք Վիեննայի իրենց հաստատութեան Երկհարիւրամեակի հանդիսին առթիւ, իբր յիշատակ ի պատիւ իւրեանց մեծի Հիմնադրին, նորա վարուց եւ գործոց պատմութիւնը հրատարակեցին (1)։ Գործ արդարեւ արժանի ընթերցման, ուր նաեւ զայս մեծագոյն բարոյական խրատն կ'ընդունիմք, թէ մեծախոհ միտք մը՝ հսկայ գաղափարաւ մը ըմբռնեալ, ինչպէս կարող է հասնիլ իւր բարձրր նպատակին, եթէ ունի յինքեան նաեւ զօրաւոր կամք եւ անվհատելի հաստատամտութիւն։ Այլ այս չէ որ պիտի պատճառ ըլլայ մեր այս բանասիրական քննութեան· այլ ուրիշ մասնական, եւ նշանաւորագոյն եւս խնդիր մը յառաջ կը բերէ մատեանս, յորմէ զանց չէր կրնար ընել. — Քաղկեդոնեան ժողովոյն խնդիրը, որ ոչ միայն այդ Մեծ Անձին կենաց եւ գործոյն հետ սերտիւ կապուած է, այլ նաեւ ազգային կենաց հետ, սկսեալ ի հին դարուց մինչեւ ցներկայս։ Բայց այս ծանօթ խնդիրըս՝ բաց ի այդ ազգային խնդիր մը դարձած ըլլալէն, նաեւ իւր խորհրդաւորութեամբն է նշանաւոր. գաղտնիք մի է թէ ի՛նչպէս ծնունդ առած եւ մնած է ազգին մէջ, թէ ի՛նչ կապակցութիւն ունի նորա կրօնական համոզմանց հետ, եւ ի՛նչ է այն անբացատրելի պարագայն, որ ազգն միշտ եւ յարատեւ հակառակութիւն մը ունեցած է այդ ժողովոյն դէմ, մինչեւ նաեւ հակասութեանց երեւոյթ տալ, եւ անհամաձայնութիւն մը գոգցես գոյացունել անկասկածելի իրականութեանց հետ։ Այս մտքերը կը հետաքրքրէ անշուշտ, երբ այդ խնդրոյն նկատմամբ կարդալու ըլլայ այն տխուր նկարագիրը, զոր ընել ստիպուած է նաեւ մեր անանուն կենսագիրը։ Նա սակայն զանց չըներ առաջին անգամ որ կը հարկադրի զայն յիշատակել, այն առթիւն՝ որ Աւետիք վարդապետ. Կար-*

(1) Վարք Մխիթարայ Աբբայի· տպ. Վիեննայի 1901· 8 ծր. պատկերազարդ։

նոյ առաջնորդ, խստիւ կը վարուէր այն անհատից դէմ, որք այդ ազգային հին աւանդական ոգւոյն հակառակ շարժելով, իբր անջատեալ մարմին կ'ուզէին երեւնալ յազգին, յորմէ եւ անհաճոյ շփոթք եւ խռովք կը ծնանէին. —այդ առթին. կ'ըսեմք, նաեւ Պատմիչն զմեր խորհրդածութիւն մը ընել հետեւեալ խօսքերով, զայն թէեւ կեղծեօք Մխիթարայ (վեշտասանամեայ պատանւոյ մը) բերանը դնելով. «Զուզելով Մխիթար «խառնել ինքզինքը այդ կռիւներուն մէջ, Բասենոյ վանքը քաշուած էր, «ուր հանդարտ գլխով կը խորհրդածէր եղածներուն վրայ, եւ չէր կրնար «զարմանքը բռնել, մտածելով թէ ի'նչպէս կը հալածէին ի Քրիստոս «Երկու բնութիւն դաւանողները, քանի որ իրենք եւս կը դաւանէին «զՔրիստոս ճշմարիտ Աստուած եւ ճշմարիտ մարդ. բան մը՝ որ յիրաւի «մինչեւ զարմանալի եղած է, եւ որ ուրիշ կերպով չի բացատրուիր, բայց «թիւրիմացութեան կամ տգիտութեան ընծայելով անոր շարժառիթը, «ուրիշ մեծագոյն բան մը չըսելու համար»։ Կը յաւելու դարձեալ. «Կ'ափսոսէր նա Աւետիքի եւ անոր համախոհից վրայ, թէ ի'նչպէս իրենք զիրենք հետեւող եւ որդի կը կոչէին այն սուրբ Հարց, որոնց վարդապետութեանց դէմ կը մաքառէին յայտնապէս»։

Շատ ճիշդ եւ պարզ եւ ամփոփ ձեւոյն մէջ ներկայացուցած է մեզ հատուածդ խնդրոյն էութիւնը ուր յայտնի կը տեսնուի արդարեւ հակասութիւն մը։ Այդ հակասութիւնն, ոչ թէ միայն այժմեան բանասիրաց, այլ եւ այլոց բազմաց ի վաղուց անտի, մինչեւ զարմանալի եւ մինչեւ անբացատրելի մնացած է, եւ ինչպէս մեր Պատմիչն իւր անխտաբանական քննութեամբք ոչ ինչ այլ, բայց տգիտութիւն կամ թիւրիմացութիւն այնմ պատճառ կը գտնէ, զնոյն գտած են եւ ամեն անոնք որ ուզած են զայն բարեկամ ներողամտութեամբ մը դատել, — սկսեալ ի Մխիթար Կաթողիկոսէ ի ԺԴ դարու (Պատասխանագիր առ Բենեդիկտոս ԺԲ Պապ), մինչեւ ցՄխիթարեան Հարս Վենետկոյ, որոց պարագլուխ, այս խնդրոյն մէջ, եղած է մեր Պատմահայրն Չամչեան։ Սոքա կը մեկնեն թէ այդ ժողովոյն գումարման ժամանակ Հայք իրենց առանձին պատերազմաւ զբաղեալ ընդդէմ Պարսկական-Մոգական յարձակման, կարող չեղան ներկայ գտնուիլ անդ. տարիներ վերջը երբ փոքր ինչ հանդարտութիւն գտան, Ասորի խաբեբայք ի Դիոսկորեանց աքսորեալ ի Հայաստան, այլ ընդ այլոց տեղեկութիւնս բերին, եւ մոլեբար պղտորեցին ընդդէմ ուղղադաւան ժողովոյն, կարծել տալով թէ Երկու բնութեան ասել դաւանութիւնն ընդունեցաւ նա ըստ Նեստորի՝ հակառակ սահմանաց Եփեսոսեան սուրբ ժողովոյն (Պատմ. Հյ. Բ. 223 եւն.)։ Նոյն պարագայի վրայ կ'աւելցունեն այլ բանասէր-քննադատք ուրիշ պարագայ մը եւս, զայդ կարծիս զօրացունելու մտօք, թէ՝ եւ Հայք որ ցրտացեալ էին արդէն ի Յունաց, որք զիրենք անօգնական թողուցին իրենց նեղ օրերուն մէջ, աւելի հեշտաւ դիւրալուր գտնուեցան այս ստայօդ տեղեկա-

*թեանց ․ ուզելով կրօնական Թշնամանօք անոնց անբարեկամութեանը փոխարինել ։ Այս է Թիւրիմացութեան մեկնութիւնն ։*

Se non è vero , è ben trovato ! *Առ ի չգոյէ լաւագունին , այս մեկնութիւնս ունեցած է, բայց ոչ բնաւ ընդունելի ողջամիտ մտաց․ քաղաքական է փոքր ուշադրութիւն մը նորա ակար կողմերը տեսնելու ։ Անընդունելի է նախ, որ այդպիսի մեծ կրօնական գործ մը՝ Հայոց, որ վերջին Արեւելից՝ Չինաց աշխարհին կողմերը չէին գտնուեր , խաղաղ անծանօթ մնացած ըլլայ, եւ տարիներ վերջը (ըստ կարծեացս՝ 50–60 տարի ետ Բադգէնէ) լուրը հասած ըլլայ իրենց , եւ այն՝ անծանօթ կամ կասկածելի Ասորիներու , կամ ինչպէս Աբուլֆարաջ (ԺԲ դար) կ՚աւանդէ , Շմուէլ անուն մէկու մը ձեռօք , եւ Հայք ալ անմիջապէս հաւատացած անոնց խօսքերուն կոյր զկուրայն, — մինչդեռ այլուստ անժխտելի հաւանականութիւն մը ունիմք, որ ըստ սովորութեան՝ նաեւ առ Հայս հրաւէր եկած ըլլալու է առ ժողովն. եւ եթէ եկած եւս չըլլար, անհնարին էր որ լսած չըլլային գոնէ Յունական բաժնին ազգայիններէն ։ — Իսկ միւս յաւելուածն թէ կամովին եւ հակառակութեան ոգւով ընդդէմ Յունաց՝ չարժած ըլլան մեր նախնիքը , քան զվերինն անտեղի է․ զի ի՞նչպէս միաբանեցուցանել այդպիսի ոգի մը՝ մեր երանելի Հայրապետաց այն բարձր եւ մեծահաւատ ոգւոյն հետ , որ վսեմ կերպիւ կը փայլի իրենց առ Յոյներս ուղղած հրաշալի եւ արիասիրտ պատասխանաց մէջ, յորում յայտնի կը քարոզեն որ աշխարհի չարերն ոչինչ են՝ իրենց երկնային յուսոյն եւ ճշմարիտ հաւատոյն առջեւ, — եւ այդ Հայրապետաց չարերն դեռ կենդանի էին , երբ Քաղկեդոնի ժողովոյն լուրն կը հասնէր ի Հայաստան․ — եւ կամ նոյնպէս , ի՞նչպէս համաձայնեցուցանել զնոյն ատելութեան ոգին՝ նոյն իսկ յաշխարհական դասէն՝ նախարարաց զգաստ եւ կրօնասէր հաւատոց հետ, ցայն վայր հասած, որ, ինչպէս կը պատմէ ժամանակակից պատմիչն Եղիշէ, ստոյգ գիտնալով իսկ որ Յոյները իրենց դէմ դաւաճանութիւն կը նիւթէ զիրենք ի Դուռն կոչելով, իրենք՝ աստուածային պատուիրանը մեզ «հնազանդ լինել տերանց մարմնաւորաց» կը հրամայէ ըսելով , «բարեմտութեամբ» եւ «անարատ խնդութեամբ» փութացան հրամանին ։ Ներելի՞ է ընդունիլ մեզ այժմ , որ այդ աստուածերկիւղ անձինք յանձն առած ըլլան կամովին եւ գիտութեամբ՝ հաւատոյ հիմնական վարդապետութիւն մը խախտել, ճշմարտութիւն մը խեղաթիւրել եւ աստուածային սրբազոյն խորհրդոց մէջ խառնել աշխարհական ոգի, արտաւորելով իրենց խիղճը , վաճառել իրենց անհնափափուկ զանձը՝ ի գին հակառակութեան եւ ատելութեան եւ վերջապէս պարտաւոր մնալ յաւիտեան իրենց ապագայ սերնդոց մաղթութեանն ։ Եթէ այդքան ատելութիւն բունեալ էր այդ երանելեաց սրտին մէջ , գոնէ «Զկատարելագոյն զնոսին ատեցուք զատելութիւն» ըսելով, ըստ կորովի լեզուին մեր Յովհաննու Իմաստասիրին , Նաւաքա-*

կանութեան դրօշը բանային համարձակ. քան թէ մեղմիկ խորհրդով մը նզովէին զՔաղկեդոն արտաքուստ, եւ ի ներքուստ անոր վարդապետութիւնն ընդունէին, անիմաստ եւ անհամ հակասութեան մը մէջ դնելով զիրենք։ — Կա՞յ քան զայս մեծագոյն անհաւանականութիւն, որում ոչ ժամանակագրութիւնն կը յարմարի եւ ոչ բարոյական անկարելիութիւնըն։ — Այս նշանաւոր եւ կարեւոր խնդրոյն պատասխանեաց ուրեմն ջանամք հասու ըլլալ՝ ոչ մեր ենթադրութիւններով, այլ թողլով որ պատմութիւնն ինքն խօսի փոխանակ մեր, եւ յետոյ յարեմք մեր խորհրդածութիւններն, զորս նա մեզ թոյլ պիտի տայ ընել անշուշտ։

∴

Ներուի մեզ փոքր ինչ ի վերուստ սկիզբն տալ մեր հետազօտութեանց։ — Նախկին քրիստոնէութիւնը չյապաղեց իւր հաւատալեաց օրինագիրքն (Code) ունենալ։ Զկնի Առաքելական ժամանից՝ Հանգանակ հաւատոյ (Symbole) կոչուածներն են, ուր համառօտ եւ ամփոփ ձեւով՝ ի գիր առնուած են քրիստոնէական կրօնից այն հիմնական վարդապետութիւնները, զոր պարտի ամեն ուղղափառ քրիստոնեայ դաւանել։ Սկիզբն առած են սոքա երեխայից (մկրտելեաց) պատճառաւ, որք երբ մկրտութեան գային, պարտաւոր էին նախ հաւատոյ դաւանութիւն տալ։ Ի սկզբան այդ խոստովանութիւնք անգիր էին, եւ կը կատարուէին հարցմամբք եւ պատասխանեօք, (եւ այս է մինչեւ ցարդ նաեւ ի մեր Մաշտոցըս անուանեալ Հաւատա՞ս եւն.), եւ էին միայն քանի մը գլխաւորագոյն կէտերուն վրայ. այն է՝ հաւատալ յԱմենասուրբ Երրորդութիւն, յորոյ անուն պիտի մկրտուէին (Մատթ. ԻԸ. 19), ի Մարդեղութիւնն Քրիստոսի եւ ի անօրինականսն, եւս եւ ի Մկրտութեանն խորհուրդ, զոր պիտի ընդունէին (եւ այդ է ցարդ պահուածն ի Հաւատամքին. «Հաւատամք... ի մկրտութիւն ապաշխարութեան» եւն.)։ Սակայն ոչ այդ բանացին եւ ոչ պարզութիւնն՝ ընդ երկար մնացին։ Քրիստոնէութեան սահմանք երբ ընդարձակեցան հետզհետէ, եւ մանաւանդ զկնի Կոստանդիանու պարգեւած ազատութեան, Քրիստոսի «աղէտ եւ սաանց դպրութեան» հօտին մէջ՝ սկսան նաեւ «իմաստունքն ըստ մարմնոյ» խառնուիլ յունական իմաստասիրութեամբ սնեալ մտքեր, բերին մուծին անոնց՝ Նախկին քրիստոնէական հաւատոյ ամենապարզ աստուածաբանութիւնը՝ Պղատոնական բնազանցական տեսութեանց պատշաճեցունել։ Ծագեցան արդարեւ ինչ ինչ կէտեր, սակայն չաւելցուցին հին պարզամիտ հաւատքին վրայ առաւելութիւն մը. նա ընդհակառակն՝ մութ տուին կերպ կերպ աղանդներու եւ օտարուսումն վարդապետութեանց։ Եկեղեցւոյ այս նոր վիճակն՝ հարկադրեց որ դաւանութիւնք աւելի ընդարձակուին, աւելի մանրամասնութեանց իջնեն, մանաւանդ երբ մկրտութեան մերձեցաղըն՝ աղանդէ մը կուգայր. իսկ ընդարձակուելուն՝ պէտք եղաւ որ եւ

ի գիր առնուին անոնք՝ Հանգանակ կամ Կանոն հաւատոյ անուամբ, եւ հաղորդուին նախ հաւատացելոց, զգուշանալու իրենց չուրջը թափառող աղանդներէն։

Այս յաւելուածք ոչ առանց խնամոց եւ ոչ առանց սկզբանց կը յօրինուէին. հիմնեալ էին այն աւանդութեանց վրայ, որ «Առաքելականք» կը կոչուէին, եւ որոց յիշատակութիւնը կը տեսնենք ստէպ Պօղոսի Թղթոց մէջ, մանաւանդ որք առ Տիմոթէոս գրուած։ Երբ նոր աղանդոյ մը ծաւալումն կը տեսնուէր, իսկոյն տեղւոյն եպիսկոպոսունք եկեղեցական ժողով կը գումարէին. կը քննուէր անոր մոլորութիւնն, կը դատապարտուէր նզովիւք, եւ անոր դէմ, երբ հարկ տեսնուէր, ուղիղ վարդապետութեան ամփոփ բանաձեւ (formule) մը կը յօրինուէր, եւ մասն մը կը կազմուէր այն Հանգանակին (1)։ Այսու՝ իւրաքանչիւր եկեղեցի իրեն յատուկ Հանգանակ մը կ'ունենար։

Երբ հասաւ Արիոսեան աղանդն, որ քան զնախորդսն աւելի ծաւալումն գտաւ եւ մեծ վէճեր յարոյց, հարկ եղաւ որ, առաջին անգամ ըլլալով, ժողովն ոչ տեղական ըլլայ, այլ ընդհանրական (տիեզերական), որ եւ խմբեցաւ ի Նիկիա (ի 325)։ Այս ժողովն զիւր խնդիրները լուծելէն ետեւ, եկեղեցեաց վարդապետական միութեան համար ընդհանրական Հանգանակ մը որոշեց, ոչ նոր յօրինելով, այլ արդէն յօրինուածներէն հատ մը, որ կատարելագոյն կը համարուէր, ընտրեց (2), եւ քանի մը յաւելուածներ ընելով, գլխաւորապէս Նոյնէութիւն (կամ ըստ մերում Հաւատամքին՝ Նոյն բնութիւն) բառն, յաւարտն կցեց զիւր նզովից բանաձեւն ընդդէմ Արիոսականութեան, որ է «Իսկ որ ասենն»։ Այս Հանգանակը որ Նիկիական կը կոչուի, վերջնական ձեւն առաւ երկրորդ Տիեզերական ժողովին ի Կոստանդնուպօլիս, յամին 381, որ նախորդին պէս՝ ինչ ինչ յաւելուածներ, զորս արդէն քանի մը եկեղեցիք ըրեր էին ընդդէմ Ապողինարեանց եւ Հոգեմարտից՝ ընդունեցաւ եւ վաւերացուց, դարձեալ Նիկիական անունը պահելով, թէեւ երբեմն Նիկիա—Կոստանդնուպօլսեան ալ կը կոչուի, բուն Նիկիականէն զանազանելու համար։ Իսկ երրորդ տիեզերականն որ յԵփեսոս յամին 431, զայս Հանգանակն յետ դարձեալ վաւերացունելու, իւր Զ կանոնովն վճիռ արձակեց՝ մի այլ եւս նոր վարդապետութիւն մուծանել մէջը, բաւական համարելով

(1) Առ այն իմն կ'ակնարկէ ըսելն. «Մշակ առանց ամօթոյ, ուղիղ հատանօղ զբանն ճշմարտութեան». (Բ Տիմոթ. Բ. 15)։

(2) Նիկիական Հանգանակին ընդհանուր ձեւն կը նկատուի, որով եւ իբր հնագոյն Հանգանակին մասն կը համարին ոմանք, այն հատուածոյն մէջ, զոր կ'ընթեռնումք Պօղոսի առ Տիմոթէոս Ա Թղթոյն մէջ (Գ. 15-16) «Եւ յայտնի իսկ մեծ է խորհուրդն աստուածպաշտութեան, որ երեւեցաւ մարմնով, արդարացաւ հոգւով, յայտնեցաւ հրեշտակաց, քարոզեցաւ ի հեթանոս, հաւատարիմ եղեւ աշխարհի, եւ վերացաւ փառօք»։ — Բղդ. եւ Հռոմ. Ժ. 10. — Ա Կորնթ. ԺԵ. 3-4. — Ա Տիմոթ. Զ. 20. — Բ Տիմոթ. Ա. 13-14։

անոր հաւատալեաց գլուխները, որք հարկաւոր էին քրիստոնէի մը դաւանելու։ Այս վճռոյն պատկառ կեցան հետագայ ժողովք (1), եւ ամեն ուղղափառ եկեղեցիք ընդունեցան զայն թէ յԱրեւելս եւ թէ յԱրեւմուտս, ինչ ինչ տարբերութեամբ ի մանրամասնութիւնս, բայց ոչ յէականս. — տանցմէ է՝ ասէ մեր Հաւատամքն (2)։ — Այս հանգանակին եւս, նախորդաց պէս ի պէտս մկրտելեաց էր, բայց սովորութիւն եղաւ երբեմն երբեմն ընթեռնուլ զայն ի լուր հաւատացելոց, եւ Պետրոս Անտիոքայ պատրիարքն՝ Կնափեցի (Թափիչ) անուանեալն (471-488)՝ գեղեցիկ խորհրդով Պատարագամատուցին մէջ մտուց զայն, որուն հետեւեցաւ եւ Տիմոթէոս պատրիարք ԿՊօլսի՝ զնոյն հրամայելով իւր թեմին յամին 511, ապա եւ Արեւմուտք, — այսպէս եւ միւսայինք. հաւանականաբար ոչ շատ յետոյ քան զԱսորիս, այս է ի վերջկոյս Ե դարու (3)։

Հանգանակք հաւատոյ արգելք չեղան անհանդարտ մաքերու իրենց բանականչա (rationaliste) հետամտութիւններն դարձեալ շարունակելու. իրենց հանճարը կը սրէին՝ աղանդաւոր վարդապետութիւն մը ջրել նոր աղանդաւորութեամբ մը, որ յաճախ հակառակ ծայրայեղութեան մը դիմել էր։ Այս դէմընդդէմ հակառակ սխոլեանք՝ երկու նշանաւոր դպրոցներն էին, Անտիոքայն եւ Աղեքսանդրիոյ, երկուքն ալ միանգամայն պատրիարքական աթոռներ։ Տեղւոյս չէ հակառակութեանց պատմութիւնն ընել մի առ մի. սակայն հարկ է որ, մեր խնդրոյն համար, կանգ առնումք ի Նեստորիոս, պատրիարք ԿՊոլսի (428-431)։ Աստ նոր երեւոյթ մը եւս կ'անցնին աստուածաբանական վէճք. նախորդ Արիոսական հակաճառութիւնք՝ որ Բանին կամ Որդւոյն Աստուծոյ ընդ Հօր համագո-

(1) Անյաջողութիւն կը նկատեն այս վճռոյն դէմ Արեւելեայք, որ Սպանիացիք իբր երկու դար յետոյ, յամին 589, Տոլետոյի ժողովով, որոց հետեւեցան Փրանկաց եւ Գերմանաց եկեղեցիք, «եւ յՈրդւոյ» բառերն աւելցուցին, որում ընդդէմ կեցան յԸ դարու Ադրիանոս Ա եւ Լեւոն Գ պապերը, երբ մեծն Կարոլոս ընդունել կ'ուզէր տալ նաեւ Հռոմայեցւոց եկեղեցւոյն. սակայն յետոյ Բենեդիկտոս Ը Պապն (1012-24) չկրցաւ դիմադրել Հենրիկոս Բ կայսեր, եւ զիջաւ ընդունիլ։ Սակայն գիտելի է որ նախադոյն քան զԿոստանդնուպոլսի իսկ ժողովն, սրբոյն Եպիփանու յառաջ բերած Հանգանակներէն մին (Խարիսխ. ՃԻԱ) նմանօրինակ յաւելուած մ'ունի այս ձեւով. «Որ ի Հօրէ ելանէ, եւ յՈրդւոյ առնու». որ անշուշտ քան զմիւսն աւելի Աւետարանական է։

(2) Զարմանալի է Յ. Գաթրճեանի խստիւ երկար հակառակելն՝ իւր Հանգանակ Հաւատոյ գործոյն մէջ (Վիեննա. 1891, էջ 2-4) մեր Հանգանակին Նիկիական անունը տրուած ըլլալուն, որ ոչ ինչ տարբեր առմամբ է, քան ինչ որ Արեւմտեայք ալ իրենց հին Հանգանակին «Առաքելոց» կ'անուանէին։ Կը սխալին յոյժ նոքա՝ որ հին լեզուի եւ բացատրութեանց մէջ այժմեան գիտական ճշդութիւններն կը պնդեն։

(3) Մեր Հանգանակին յունարէն բնագիրն երեւան ելաւ, իբր 50 ամօք յառաջ, յանուն սրբոյն Աթանասայ, որ եւ նոյն հայրապետին գործոց վերջին հրատարակութեանց մէջ կը տեսնուի. (Բղդ. Գաթրճեան, Հանգ. հաւ. էջ 34)։

*յութեան վրայ կը դառնային , յաջորդեց այժմ ուրիշ մը, որ էր՝ Մարդացեալոյ Բանին երկու, — աստուածային եւ մարդկային — բնութեանց վերաբերութեան վրայ, որուն կը պատկանի նաեւ մեր այժմեան խնդիրն ։*

*Նեստոր Անտիոքացի եւ Անտիոքեան դպրոցէն , ուզելով բնազանցօրէն հերքել Ապողինարի (Աղեքսանդրեան դպրոցէն) աղանդը, — որ կ'ուրանայր ի Քրիստոս մարդկային բանական հոգւոյն գոյութիւնը , անոր տեղ դնելով զաստուածութիւն Բանին՝ իբր հոգի, — ելաւ դաւանելու ի Քրիստոս, ըստ աստուածաբանական բանաձեւի,* Երկու բնութիւն *կամ* երկու անձն բաժանեալ *, յորմէ եւ կը հետեւցունէր ըսել թէ Ս . Կոյսն Քրիստոսի մարդկային բնութեան կամ անձին ծնող եղաւ եւ ոչ աստուածայնոյն, որով ներելի չէ զնա* Աստուածածին *կոչել՝ այլ* մարդածին *, կամ առ առաւելն՝* Քրիստոսածին (1) *։ Սակայն չեղան այս վարդապետութեան հետեւողք, որքէն նախապատրաստեալ ըլլալով յայն՝ Դիոդոր Տարսոնի (մ.* 394) *եւ Թէոդորոս Մոպսուեստիոյ* (393-428)*՝ մեծահամբաւ եպիսկոպոսաց գրութիւններովն . բայց որովհետեւ հետեւութիւնն խռովեցուց զժողովուրդն եւ շատ մը բարեպաշտ մտքեր , զայն անպատուութիւն իմն նկատելով առ Ս . Կոյսն, անոր ալէկոծութիւն մեծ սկըսաւ յուզուիլ ի Կ.Պոլիս ։ Արագ հասաւ համբաւն յԱղեքսանդրիա, հակառակորդ դպրոցին կեդրոնավայրը . եւ ահա Կիւրեղ , որ անդւոյն պատրիարքն էր (իբր* 412-444)*— բնութիւն մը կրակոտ, բուռն եւ յարձակող՝ քէն մը չափէն աւելի թափով , համանման իւր Թէոփիլոս հօրեղբօր եւ նախորդին՝ որ զՈսկեբերան չարաչար հալածեր էր , զինուեցաւ իսկոյն իւր գիտութեամբն եւ գրչով գերագոյն քան զնեստոր ։ Իւր շուրջն խըմբուեցան նաեւ մոլեռանդն վանականք Թեբայիդայ , եւ արտաքին խառվութեանց հետ, սկսան տեղալ զէմընդդէմ գրութիւնք եւ նզովք . եւ*

---

(1) *Զարմանալի է տեսնել որ նեստորականութեան գոյն մը կը կըրէ մեր Սր. ած. ին կցորդ երգն . «Փառաւորեալ եւ օրհնեալ միշտ սուրբ կոյս աստուածածին Մարիամ* մայր Քրիստոսի*, մատո զաղաչանս մեր Որդւոյ քո եւ Աստուծոյ մերոյ» ։ Սմին զուգակից է եւ Շարականն . «Ի քեզ եմք ապաւինեալ,* Քրիստոսի մայր *Աստուծոյ մերոյ» ։ Քննադատօրէն այս բաւական ապահով նշան մի է այդ երգերուն Ե-դարեան հնութեան, հաւանականաբար այն իսկ ժամանակին , յորում տակաւին Հայք բարեկամ էին (զորմէ պիտի խօսիմք այլ առթիւ) Թէոդորոսի Մոպսուեստացւոյ , որ Նեստորի վարդապետն եղած էր , եւ նորա գաղափարացն նախահեղինակ . քանզի զգուշալի էր* Քրիստոսի մայր *բացատրութիւնն Եփեսոսի ժողովէն ետեւ ։ Զայս մեր կարծիքն կը հաստատէ այդ* փառաւորեալ *երգոյն* աստուածածին *բառը, որոյ յետամուտ ըլլալն յայտնի կ'երեւի . զի դիւրին չըլլալով այդպիսի ծանօթ երգ մը բոլորովին ջնջել , զայդ յաւելուածն ընել հարկ սեպած են յաջորդք ։ Կը յիշեն անշուշտ մեր բանասէրք որ նոյնպիսի հնարք գործածուեցաւ առ Ռուբինեանսք, նոյն Սր. ած. երգոյն նախընթաց* Գոհանամք զքեն *աղօթքին վերջը՝* Քրիստոս ած. մեր *բառերը աւելցունելով, որպէս զի ապահով ըլլան Յոյնք թէ զայն ոչ ի դէմս Երրորդութեան կ'երգեմք, ինչպէս իբենք , այլ Քրիստոսի .*

խնդիրն այնքան զայրացաւ եւ տարածուեցաւ, որ հարկ եղաւ Տիեզերական ժողովոյ դիմել։ Գումարեցաւ ժողովն յԵփեսոս (Ամ Տն. 431) դատապարտեցաւ Նեստոր եւ աքսորուեցաւ. բայց չանհետացաւ իւր հետ նաեւ իւր վարդապետութիւնը։ Ճակատամարտն աւելի զայրացան Անտիոքեան դպրոցին կուսակիցք, գլխաւորապէս Ասորւոց մեծ մասն պինդ կեցան. բայց վերջ ի վերջոյ երբ հահանջել ստիպուեցան, Եդեսիոյ դպրոցն եղաւ իրենց ապաստանարանն, որ նոյնպէս երեւելի եղած էր յԴ դարէ. եւ երբ այն եւս փակուեցաւ Զենոն կայսեր հրամանաւ 489, երբ Նեստորականութեան վառարան, փոխադրուեցան հետեւողքն Մծբին, որ 363 Թուականէն ի վեր Պարսից ձեռքն անցած էր, եւ ան գլուխ կենալովն Բարծումայի, եւ պաշտպանութիւն ալ գտնելով Պարսից Թագաւորներէն, տարածուեցաւ աղանդը մինչ ի Տիգրիսեան նահանգները եւ յԱսորեստան, եւ անտի ի Պարսկաստան, ուր բաւական զօրացած էր այն դարերուն մէջ քրիստոնէութիւնը. եւ գլխաւոր աթոռանիստն էր Սելեւկիա-Տիզբոն։ Անտի եւ անդր ապա գործունեայ առաքելութեամբ տարեր արձակեց աղանդն մինչեւ ի Խորասան, ի Հնդիկս եւ մինչեւ ի Զին։ Եւ ինչպէս յայտնի է, մինչեւ ցայսօր իսկ կը տեւէ Նաստուրի կոչուած Ասորւոց մէջ։

Բայց վէճն երբ տակաւին կռուոյ դաշտին վրայ էր, եւ երկու հակառակ կուսակցութիւնք, Կիւրեղականք եւ Նեստորականք, իրարու հետ կը մաքառէին. վերջնոց բանաձեւն էր, ինչպէս տեսանք. Երկու բնութիւն բաժանեալ (յերկուս դէմս կամ յերկուս անձինս) ըսել, որոյ դէմ Եփեսոսի ժողովն Երկու բնութեանց բաժանումն վերուց, եւ վարդապետեց միաւորումն անշփոթ։ Բայց որովհետեւ այս երկու բանաձեւներուն մէջի բաժանեալ եւ միացեալ բառերը՝ այնչափ ազդու չէին ընել հակադրութիւնը լսողներուն ականջաց, եթէ Երկու բնութիւն ազդողական բառերը, որ Նեստորականաց բանաձեւին հիմնական տարրերն էին, իրենց տեղը մնային, ջերմ հակաՆեստորականք լաւագոյն համարեցան իրենց բանաձեւ ընտրել. Մի բնութիւն Բանին մարմնացելոյ ասացուածը, որ ոչ միայն ի Կիւրեղէ բազմիցս գործածուած էր (1), եւ Եփեսոսի ժողովէն անզա-

(1) Ահա Ս. Կիւրղի այդ համբաւաւոր խօսքին վկայութիւնքն, — զորս ի մէջ կը բերեմք Թէոփիանէի բանակցութենէն քաղելով, զոր ըրած է նա ընդ մերում Հայրապետին Ներսիսի Շնորհալւոյ (ի 1170), որոյ եւ հայերէն թարգմանութիւնն հրատարակուած է, ինչ ինչ յապաւմամբք, ի Պատմութեան Կաթողիկէ վարդապետութեան ի Հայս՝ Հ. Աղեք. Պալճեանի (Վիեննա. 1878) էջ 204-259. — Նախ ի թղթին առ Սուկեսոս այսպէս կ'ըսէ. «Թէպէտ եւ ասիցէ նա [Նեստորիոս] երկու բնութիւնս, ցուցեալ զխտիր մարմնոյ եւ Բանին, — քանզի այլ բնութիւն է Բանի եւ այլ մարմնոյ, — սակայն զմիաւորութիւնն ոչ խոստովանի ընդ մեզ. քանզի մեք ի միաւորութեան սոցա՝ մի Քրիստոս, մի Որդի եւ մի Տէր խոստովանիմք, եւս եւ՝ մի բնութիւն Բանին մարմնացելոյ». (էջ 209. — տես եւ էջ 213)։ — Ի նմին թղթի կը կրկնէ վերստին. «Ցիրաւի՝ յորժամ

բեղմանէն (1)։ Ահա անհեթեթ յուշկապարկային վարդապետութիւն մը․ ուր յայտնի կը տեսնուի որ Կիւրեղեան բանաձեւին մի բնութիւն բառը ըստ գրոյն առած էր․ բայց զարմանալի՝ ոչ ուղղափառ, այլ հետեւողները, որ բարեպաշտաբար իւր վանականքն էին միայն․ (տես Գործք ժողովոց)։ Սակայն այդ արգելք չեղաւ խնդիրն արագ ի հրապարակ ելնելուն, եւ այն իւր իսկ ծանծաղամտութեամբն, զիւր այդ մեծ գիւտն չծածկեց հաղորդել Թղթովք։ Առջի տեղեկութիւն տանողներէն մին եղաւ Թէոդորետոս Կիւրոսայ (Կիլիկիա) եպիսկոպոսն, որ Անտիոքեան դպրոցէն էր, հմուտ եւ զօրաւոր գրիչ, կանխաւ Կիւրղի հակառակորդն Նեստորի վէճին ժամանակ, եւ ինքն սիրահար Թէոդորոս Մոպսուեստացւոյ՝ Նեստորի վարդապետին գրութեանց․ ձեռք առաւ անմիջապէս հերքել զայն՝ (յամին 446-447) յերիս գիրս, Երանիստէս (Մուրացիկ) անուանեալ, յորս Եւտիքէսի վարդապետութիւնները ուրիշ բան չէր զաներ, բայց աւելի կամ պակաս գնոստիկեան տեսութեանց խառնուրդ, եւ այլեւայլ աղանդաւոր գրութիւններէ կարկատեալ խեչերանք․ բայց մի եւ նոյն ժամանակ զանց չէր ըներ Երկու բնութեան ջատագով ըլլալ, ծանր հարուած մը տալով Կիւրեղեանց (Եփեսոսեանց)։ Մի բնութեան այդ հրատարակութիւնն խռովեց դարձեալ մտքերը, եւ Փլաբիանոս, պատրիարքն Կ.Պոլսի (447-451) զԵւտիքէս յատեան կոչեց քաղաքաւն եպիսկոպոսաց (12-27 Նոյ. 448), եւ դատակնիք տուաւ իբր Վաղենտինեան եւ Ապողինարեան աղանդոցն հետեւող, եւ մերժեց ի հաղորդութենէ զինք եւ նորա հետ իւր հետեւող վանականները։

Բայց Փլաբիանոսի ժողովոյն վճիռը՝ թէ եւ արդար եւ ուղիղ, բայց անիրաւ հետեւանք մը ունենալու էր, եւ ունեցաւ․ Եւտիքէսի ցնորից հետ՝ նաեւ մի բնութիւն բանաձեւն վտանգի ընկաւ, իբր նորա մոլորանն՝

---

(1) Եւտիքէսի վարդապետութիւնը երկմտեալ էր․ «Նախ՝ թէ «Քրիստոս երկու բնութիւն ունէր նախ քան զմարդանալն(!), եւ յետ մարդանալոյն՝ մի բնութիւն եղաւ»․ եւ երկրորդ թէ «Քրիստոսի մարմինն [illegible] զոր ի կուսէն էառ, տարբեր էր մեր մարդկային մարմնոյ գոյացութե[illegible] նէն»․ (Փրկ. առ Լեւոն Պապ, տես Մանսի, Ե․ 1351-8)։ Զայս վերջին[illegible] եւս, որ յայտնի հակառակ էր Կիւրղի բանից, որ զՔրիստոս «համագոյ[illegible] Հօր ըստ աստուածութեան, եւ համագոյն մեզ ըստ մարդկութեան» ըսա[illegible] էր, Եւտիքէս ուրիշ վարդապետութեան մը վրայ հիմնած է, այն թ[illegible] Քրիստոսի մարմինն յերկնուստ բերուեցաւ առ Կոյսն․ ինչպէս Պօղոս[illegible] խօսքին կրթնած, թէ «Են մարմինք երկրաւորք եւ մարմինք երկնաւորք»․ զի ըստ գրոյն առնող միտք մը ունէր Եւտիքէս, հանգոյն [illegible] Մարդակերպեայցն Թեբայիդայ, որք Աստուծոյ գլուխ, ձեռք, ոտք կ'ըն[illegible] ծայէին՝ Ս. Գրոց բացատրութիւնը նիւթապէս առնլով։ Զայս ինք[illegible] չուզեց խոստովանիլ Փլաբիանոսի ատենին առջեւ, բայց կը մղանէ ի[illegible] յետս կոչման Թղթոյն մէջ առ Լեւոն, երբ նզովելով զԱպողինար, զՎա[illegible] տար, եւ զայս, կ'աւելցունէ մասնաւոր կերպիւ թէ «Կը նզովեմ նա[illegible] զանոնք որք կ'ըսեն թէ Քրիստոսի մարմինն յերկնուստ բերուեցաւ» Ինքն հեռ էր ըսողն ընդ Ապողինարի՝ Զմեղանքն մեղանք։

դրած էր քանի մը անգամ, եւ Փլաբիանոս տեղեկացած էր այնմ․ ծանօթ է Թէոդորետոսի Կիւրրեայ եպիսկոպոսին, որ նոյն առիթներէն վիրաւորուած էր, առ Փլաբիանոս դրածն․ «Պանծալ կը պանծայ նա (Դիոսկորոս) թէ Մարկոսի է իւր աթոռն, մինչդեռ գիտէ եւ ինքն թէ Անտիոք՝ Պետրոսի աթոռն է, Մարկոսի վարդապետին եւ Առաքելոց գլխաւորին» (Թղթ․ ՁԶ)։ — Սոքա՝ մինչ աստ գիրար կը լլկէին եւ գիրար գլխ կը ջանային, անգուստ այդոնց երկուքին վրայ միանգամայն երրորդ ոտնող մը կար ի հեռուստ բարձր՝ աւելի ընդարձակագոյն յատակագծով — Հռոմ։ Մինչդեռ բարբարոսաց արշաւանք Կապիտոլիոնի նաեւ չէնքերուն չէին թողուր քար քարի վրայ մնալ, եւ Արեւմտեան կայսրութիւնն կծկեալ անիւ ի Ռաւեննա՝ իւր վերջին մահու հարուածոյն կը սպասէր, կրօնական ընկճեալ՝ բայց ամուր ջղոտ ոգի մը, գեհենադամբանաց խորերէն գլուխ դուրս հանելով, մեղմով բազմած էր աւերակադահոյն վրայ, եւ իւր ձեռքերն սակաւ առ սակաւ սողացունելով, գրաւեր Արեւմտից սահմանները, եւ հոգեւորական միահեծան հզօր իշխանութիւն մը կազմած։ Այս անյուսալի յաջողուած՝ աւելի եւս խրախուսուած էր առ քիչ անյուսալեաց յուսալ, եւ դարձան ուռնչացող աչքերն դէպ յԱրեւելս եւ Արեւելք՝ ոչ միայն անզգոյշ, այլ իւր անխորհուրդ աստուածաբանական-բնազանցական անվերջ եւ անհաշտելի վէճերով յիմարացած հրաւէր իսկ սկսած էր կարդալ առ ուռնչացողն։ Երկուստեք կռուարարք գիրար յաղթահարելու մօք՝ կը դիմէին ի Հռոմ, իբր անշահասէր դատաւորի մը, (ինչպէս երբեմն նաեւ արտաքին իշխանութիւնք ըրած էին առ հեթանոս Հռոմաւ, իրենց տուժիւք), իրենց խնդիրներուն իրաւարար ըլլալու։ Այսպէս ըրին Աթանաս, Ոսկեբերան, Կիւրեղ, Նեստոր այսպէս ջանաց ընել եւ Թէոդորետոս, թէեւ արգելուեցաւ․ այսպէս պիտի ընեն եւ այժմեան կռուողք։ Սակայն ներկայ պարագային բոլորովին տարբեր էր նախորդներէն․ Հռոմայ աթոռոյն վրայ բազմած էր Լեւոն Ա Մեծն (440-461), նա ինքն որ այդ միահեծան իշխանութեան գաղափարին բուն յղացողն էր, եւ արդէն անոր առաջին հիման քար դնել սկսած էր իւր նախորդին՝ Կեղեստինոս Պապին (432-440) օրով որուն խորհրդատուն էր։

Այս վտանգալից հանգամանաց մէջ ուրեմն՝ Եւտիքէս զիւր դատապարտութիւնը բարեքելու համար, ոչ միայն յԱղեքսանդրիա եւ յԵրուսաղէմ, այլ կը բողոքէր նաեւ ի Հռոմ, եւ այն պատճառաւ զնոյն ընել կը ստիպուէր նաեւ Փլաբիանոս ակամայ կամօք, զի Լեւոն զարմանաց թուղթ կը գրէ իրեն, թէ ինչո՞ւ լռած էր։ Լեւոն արհամարհեց զԵւտիքէս (1), այլ չարհամարհեց պատեհութիւնը, որ իւր խորհրդոց մեծ քայլ մը առնուլ կուտար։ Օրինակ մը ունէր իւր առջեւ զԿիւրեղ, որու կրնար թէ նմանիլ, եւ թէ կերպիւ իմն նաեւ խախտել անոր կաթողի

(1) «Աւելի տխմարութիւն կը տեսնեմ այդ ծերոյն վրայ՝ քան թէ չարամտութիւն», կը գրէր առ Պուլքերիա քոյր Թէոդոսի։

Ինչպէս նա Նեստորի դէմ թղթեր գրած էր, որք իրենց հզօր վարդապետութեամբն կանոնական գրութեանց կարգն անցած էին, մինչեւ ժողովոց մէջ իբր պատգամ կարդացուիլ, զնոյն զերն եւ ինքն Լեւոն այժմ կատարելու յորդորուեցաւ։ Իւր այն արհամարհուած «տոմար» ծերոյն խեղճուկ ցնդաբանութիւնները իրեն նիւթ առնելով՝ յօրինեց խնամեալ ոճաւոր վարդապետական գրութիւն մը, եւ ինչպէս Կիւրեղ իւր գրութիւնները թղթոց ձեւով առ այս ու կամ այն ուղղած էր, նաեւ Լեւոն ուղղեց զիւրն այժմ առ Փլաբիանոս, — եւ այս իսկ էր համբաւաւոր կոչուածն՝ Տումար Լեւոնի (449)։ Եւ այս տումարին եզրակացութիւնն էր՝ Կիւրեղեան բանաձեւին ընդդէմը պաշտպանել. Երկու բնութիւն ի միում անձնաւորութեան։

Դիոսկորոս, որ իւր գրիչն Կիւրեղականաց պարագլուխն ըլլալու [illegible] ունէր, տեսաւ վտանգը, յոր գլորեցուցեր էր զխնդիրն Եւտիքէսի անհանճարութիւնը, եւ զինուեցաւ դարմանել։ Հարկ էր փութալ նախ անյապաղ բե՛կանել Փլաբիանեան ժողովոյն որոշումն։ Իւր ազդեցութեամբն զոր ունէր յարքունիս, հրաման հանել տուաւ ի Կայսերէ, որ ընդհանրական ժողով մը գումարուի, եւ գումարուեցաւ յԵփեսոս (8 օգոստ. 449), նոյն Մարիամ եկեղեցւոյն մէջ, ուր 19 ամօք յառաջ Գ տիեզերականն կատարուած էր։ Հաւաքուեցան 150 եպիսկոպոսք, յորս կային նաեւ Հռոմայ ներկայացուցիչք, հետերնին բերելով Լեւոնեան Տումարը։ Դիոսկորոսի խորհած յատակագիծն գուշակելի է. ծածկել Եւտիքէսի սխալը, եւ անպարտ արձակել տալ, ոչ թէ նորա անձին համար փոյթ ունենալով, եւ կամ ուղղամիտ ու զնա ճանաչելով, (կը լսեմք յետոյ զիւր բուն դատապարտանն անոր վրայ), այլ զի նորա ազատելովն միայն՝ կարելի էր ազատել Կիւրեղեան բանաձեւն, եւ նոյն իսկ Կիւրղի ուղղափառութիւնը։ Միակ հնարքն էր առ այս ուրեմն ժողովոյն դռները փակել ընդդէմ Թէոդորետոսի Կիւրրեայ եւ Եւսեբիոսի Դորիլեայ եպիսկոպոսաց, երկուքն ալ Եւտիքեայ հակառակորդքն, եւ երկուքն ալ քաջ տեղեակ նորա վարդապետութեանց աղտաւոր կողմերուն, եւ վերջապէս, երկուքն միայն կարողք եւ պատրաստուած զայնս անխնայ ժողովոյն առջեւ խայտառակելու։ Ուստի առաջնոյն ի Թէոդոսէ հրաման ղրկել տուաւ որ իւր քաղաքը անշարժ մնայ (ի Կիւրրոս), եւ միւսոյն՝ Ելպիտոսի արքունականին բերանով լսել տուաւ ի ժողովին, թէ Եւսեբիոս արդէն զիւր դատախազութիւնն ըրած է Փլաբիանոսի ժողովոյն մէջ, ուստի իւր ներկայութիւնը կարեւոր չէ (1)։

(1) Ինքնատիպ (caractéristique) բարոյից տէր էր Եւսեբիոս, որ մեծ մասն ունի այս վէճերուն մէջ։ Աշխարհիկ եղած ժամանակէն, սիրահար աստուածաբանական խնդրոց եւ հակաճառութեանց, հոն ստացակելով միշտ ուր հերետիկոսութեան հոտ կ'առնոյր, աքիսի նման զանոնք հալածելու. ինքն եղած է առաջին անգամ Նեստորի դէմ յարձակողն յեկեղեցւոջ, եւ ինքն դարձեալ յետոյ, ինչպէս կը տեսնեմք, Եւ-

դրած էր քանի մը անգամ, եւ Փլաբիանոս տեղեկացած էր այնմ. ծանօթ է Թէոդորետոսի Կիւրրեայ եպիսկոպոսին, որ նոյն առիթներէն վիրաւորուած էր, առ Փլաբիանոս դրածն. «Գանձալ կը պանծայ նա (Դիոսկորոս) թէ Մարկոսի է իւր աթոռն, մինչդեռ գիտէ եւ ինքն թէ Անտիոք՝ Պետրոսի աթոռն է, Մարկոսի վարդապետին եւ Առաքելոց գլխաւորին» (Թղթ. ՁԶ). — Սոքա՝ մինչ աստ գիրար կը լրտեսէին եւ գիրար գլել կը ջանային, անդուստ այդոնց երկուքին վրայ միանգամայն երրորդ սա-ւառնող մը կար ի հեռուստ բարձր՝ աւելի ընդարձակագոյն յատակագծով — Հռոմ: Մինչդեռ բարբարոսաց արշաւանք Կապիտոլիոնի նաեւ չէնքերուն չէին թողուր քար քարի վրայ մնալ, եւ Արեւմտեան կայսրութիւնն կծկեալ ահիւ ի Ռաւեննա՝ իւր վերջին մահու հարուածոյն կ-սպասէր, կրօնական ընկճեալ՝ բայց ամուր ջղոտ ոգի մը, գետնադամբանաց խորերէն գլուխ դուրս հանելով, մեղմով բազմած էր աւերակագահուն վրայ, եւ իւր ձեռքերն սակաւ առ սակաւ տողացունելով, գրաւ Արեւմտից սահմանները, եւ հոգեւորական միահեծան հզօր իշխանութիւն մը կազմած: Այս անյուսալի յաջողուած՝ աւելի եւս խրախուսած էր ս քիչ անյուսալեաց յուսալ, եւ դարձան տենչացող աչքերն դէպ յԱրեւելս. եւ Արեւելք՝ ոչ միայն անզգոյշ, այլ իւր անխորհուրդ աստուածաբանական-բնազանցական անվերջ եւ անհաշտելի վէճերով յիմարացած հրաւէր իսկ սկսած էր կարդալ առ տենչացողն: Երկուստեք կռուարար գիրար յաղթահարելու մօք՝ կը դիմէին ի Հռոմ, իբր անշահաւէր դատաւորի մը, (ինչպէս երբեմն նաեւ արտաքին իշխանութիւնք ըրած էին առ հեթանոս Հռոմաւ, իրենց տուժիւք). իրենց խնդիրներուն իրաւարար ըլլալու: Այսպէս ըրին Աթանաս, Ոսկեբերան, Կիւրեղ. Նեստոր այսպէս ջանաց ընել եւ Թէոդորետոս, թէեւ արդելուեցաւ. այսպէս պիտի ընեն եւ այժմեան կռուողք: Սակայն ներկայ պարագայն բոլորովին տարբեր էր նախորդներէն. Հռոմայ աթոռոյն վրայ բազմած էր Լեւոն Ա. Մեծն (440-461), նա ինքն որ այդ միահեծան իշխանութեան գաղափարին բուն յղացողն էր, եւ արդէն անոր առաջին հիման քար դնել սկսած էր իւր նախորդին՝ Կեղեստինոս Պապին (432-440) օրով որուն խորհրդատուն էր:

Այս վտանգալից հանդամանաց մէջ ուրեմն՝ Եւտիքէս զիւր դատապարտութիւնը բարեքելու համար, ոչ միայն յԱղեքսանդրիա եւ յԵրուսաղէմ, այլ կը բողոքէր նաեւ ի Հռոմ, եւ այն պատճառաւ զնոյն ընել կը ստիպուէր նաեւ Փլաբիանոս ակամայ կամօք, զի Լեւոն զարմանաց թուղթ կը գրէ իրեն, թէ ինչո՞ւ լռած էր: Լեւոն արհամարհեց զԵւտիքէս (1), այլ չարհամարհեց պատեհութիւնը, որ իւր խորհրդոց մի քայլ մը առնուլ կուտար: Օրինակ մը ունէր իւր առջեւ զԿիւրեղ, որուն կրնար թէ նմանիլ, եւ թէ կերպիւ իմն նաեւ խախտել անոր կոթողը

(1) «Աւելի տխմարութիւն կը տեսնեմ այդ ծերոյն վրայ՝ քան թ չարամտութիւն», կը գրէր առ Պուլքերիա քոյր Թէոդոսի:

Այսու նախազգոյշ պատրաստութեամբ ուրեմն բացաւ Դիոսկ ժողովը, եւ իբր նախագահ՝ իւր առաջին յայտարարութիւնն այն է թէ ժողովոյս նպատակն ոչ է հաւատոյ նոր վարդապետութիւն առ նել, այլ քննել միայն թէ Փլաբիանոսի որոշումն զոր ըրաւ իւր ժ ողովին մէջ, համաձա՞յն է թէ ո՛չ Նիկիոյ եւ Եփեսոսի ժողովոց, որ եւ երկու, բայց զմի եւ նոյն հաւատոյ ուղղափառութեան ունին։ յայտարարութիւնն յայտնի կը ցուցընէ թէ յո՞ կը հայէր Դիոսկո րոսը։ Քննութիւնք եւ հարցափորձք կատարուեցան ըստ օրինի, ներկայ էին եւ Կայսեր արքունականք, իբր հսկողք. արդարացաւ Ե ւտիքէս իբր հարազատ Կիւրեղական, նորա վարդապետութեանց ան մասերը միայն յառաջ հանելով, — այնպէս որ նաեւ Հիլարոս՝ մայ նուիրակն զիւր հաւանութեան քուէն տուաւ, եւ, — եւ դատա պարտեցաւ Փլաբիանոս. իբր հակառակ (Նեստորական) վարդապետութ եան մուծիչ ի հաւատս, եւ Դիոսկորոս հետեւցուց որ այս կը դրկէ զն յաթոռոյն։ Այս վերջինս յորում կասկածելի է որ հաշուած ըլլայ պատրիարքական գերազանցութեան խնդիրը, Փլաբիանոսի կուսակ կողմանէ մեծ ընդդիմութիւն եւ շփոթումն յարոյց ի ժողովին. այ որ հաստատամիտն Դիոսկորոս հարկ եղաւ բռնութեան դիմել եւ ա զՓլաբիանոս յեկեղեցւոյն դուրս հանել. բայց մոլեռանդն զօրակ քան կշռափին անդր անցան, մանաւանդ Բարծումա անուն մէկը, (մի կեռոյ Քաղկեդոնի ժողովոյն մէջ յայտնուեցաւ), որ պարտական Փլաբիանոսի մահուան, որ երեք օր յետոյ պատահեցաւ երբ հա եղած էր յաքսորավայրն երթալու ի Գանգրաս (1)։

Իբր յաղթական դարձաւ Դիոսկորոս ուրեմն յԵգիպտոս, առ ատանց անդրադառնալու, որ ծանր քրէական յանձանք մը գործած Լեւոն Պապին Տոմարը կարդալ տուած չէր ի ժողովին։ Պատճառն յայտնի է, որ ոչ էր ի նախատինս զայն յօրինող անձին, այլ զի ջուրնէ ահեղեակ էր (Tillemont, XV, 559), որ այդ գրութիւնք՝

---

տիքէսի դէմ, թէեւ Նեստորի բոլորովին հակադարձն, անոր բերնէն տալով նախ անոր ամեն գաղտնիքը՝ իբր մտերիմ բարեկամ։ Սա եթէ անհաճոյ կերպարանք մը միանգամայն կը ներկայացունէ Եւտի մոլեռանդութիւնը, իւր անգութ եւ լիրբ յարձակումներն են, որ մի ցվերջին կէտն ճզմել կը ջանայ զիւր հակառակորդն, այնպէս նոյն ինքն Փլաբիանոս յայն ակնարկել տուած է իւր ժողովոյն ընելով առ Եւտիքէս. «Աչքդ լաւ բաց, զի առջիդ այնպիսի մէկն ա որուն ուղղափառութեան տաքութեան դիմաց՝ կրակն ալ պաղ ի վարձ իւր այդ արդեանց անշուշտ եպիսկոպոսական աթոռ մը ապ է. բայց այնպիսի՝ որոյ համար ոչ շատ գոհ՝ կը գանգատէր, թէ չկ իւր աղքատութեամբն՝ փարթամ Եւտիքէսի հետ ի վեճ գալ։

(1) Թէոդորետոս կը գանգատի իւր Թղթոց մէջ (Թղթ. 169) որ ոսի (Գ տիեզերական) ժամանակ՝ կղերն եւ վանականք քարկոծ էին զինքը։

կու բնութիւն բանաձեւին ջատագով էր (1)· բայց աններելի զանցառու-
թեան էր այդ Լեւոնի աչքեւ, որ այն ինչ ժողովոյն լուրն առաւ, իսկոյն
գահերատանց թղթեր տեղացուց ի ԿՊոլիս. Դիոսկորեան ժողովը «Աւա-
զակաց ժողով» կոչելով, (որ եւ ցարդ ընդունուած է առ պատմիչս,
անշուշտ իբր Պապական ձեռքէ առնուած մկրտութեան անուն), եւ կը
պահանջէր ի Թէոդոս Կայսերէ որ նոր ժողով մը գումարուի վերստին
անոր դէմ։ Բայց Թէոդոս՝ ականջ չդրաւ· պատասխանեց որ ինքն Եփե-
սոսեան (Դիոսկորոսի) ժողովը շատ կանոնաւոր կը գտնէ, ուր իւր իսկ
ներկայացուցիչք կային, եւ թէ Փլաբիանոս արժանի էր պատժոյն, զի
նոր դաւանական ձեւ կ'ուզէր մտցունել յեկեղեցին։

Երկար չտեւեց այս արգելքը· տարի մը չլրացած, Փլաբիանոսի
դէմ՝ նաեւ Թէոդորոս ինքն վաղամահ կ'ըլլայ, որոյ ժամանակ (ինչպէս
կը պատմեն) ձիէն ընկնելով, 50ամեայ (29 Յուլիս 451), 41 տարի գա-
հակալելէն վերջը. եւ իրեն կը յաջորդէ իւր քոյրն Պուղքերիա (451-453),
որ արդէն կառավարութեան մէջ ի վաղուց մասն ունէր. բայց վերջերը
երեսէ ընկած, եւ գահ ելածին պէս՝ իրեն ամուսին եւ գահակից կ'ըն-
տրէ Մարկիանոս (451-457) անուն՝ զինուորութենէ յառաջ եկած սինկղի-
տոս մը՝ վաթսնամեայ։ Սոքա երկոքին կը փութան անմիջապէս սիրա-
լիր ընդունելութիւն ընել Լեւոնի թղթոց եւ դեսպանաց, եւ ըստ նոցա
խնդրանաց՝ այն եպիսկոպոսներէն, որ իրենց չնորհաւորութեան եկած
էին ի ԿՊոլիս. ձեռնագիր պահանջել Լեւոնեան Տոմարին, եւ զնոյն ընել
տալ նաեւ գաւառաց մէջ. Լեւոն յաջողելով նաեւ ջնջել տալ Դիոսկորո-
սի եւ անոր համախոհից անուանքն Պատարագի ցուցակէն, իւր նպա-
տակին ինքն զինքն հասած նկատելով, միտք կը յայտնէ Մարկիանոսի
որ ինքն այլ եւս պէտք չտեսնէր նոր ժողով գումարելու (Թղթ. ՉԲ, 23
Ապր. 451)։ Բայց այս անգամ ալ Մարկիանոս ականջ չկախեր, — գուցէ
իրեն տարօրինակ երեւնալով որ հաւատոյ խնդիր մը՝ այսպէս ցրիւ
անհատականներէ ձեռնագիր ժողվելով վճռուի, (որ մեզ՝ ներուի ըսել՝
1870 Թուականը կը յիշեցունէ), գուցէ նաեւ խիղճ մը առնելով որ ինքն
ալ Կոստանդիանոսի պարծանքն ունենայ՝ մեծ տիեզերական ժողովոյ մը
հովանի իւր անունն դրոշմելով ի յաւիտենական պարծանս, որուն եւ

(1) Կ'աւանդուի թէ Դիոսկորոս ի դարձին յԵգիպտոս, բանադրանք
արձակած ըլլայ ընդդէմ Լեւոն Պապի, եւ փոխարէն նաեւ Լեւոն զնա
նզոված. մեզ հաւանական չերեւիր այս. զի թէ նզովելու առիթ մը
կայր, Տոմարն ըլլալու էր այն, եւ ոչ թէ Լեւոնի անձն. ուստի մեզ
ճշմարտագոյն կ'երեւի զպատմութիւնդ յետսընդդէմ կարդալ, այս է որ
Լեւոն նախ զնա նզոված ըլլայ. քանզի ուրիշ առիթներէ գիտեմք որ
Հռոմ այդ ժամանակները՝ զիւր գերագահութիւնն ցուցընելու համար
անշուշտ, ամեն կողմ զայդ ցոյցն փայլատակելու փութկոտ էր. ինչպէս
ըրած է Կեղեստինոս Պապ. (անշուշտ Լեւոնի խորհրդատուութեամբ) զՆես-
տոր նզովելով, յետոյ եւ Փելիքս Գ զԱկակիոս, ԿՊոլսի պատրիարքնե-
րը, եւ անոնցմէ զփոխադարձն ընդունած։

յետոյ յայտնի ակնարկութիւն ըրած այդ ժողովոյն Զ նստին փակման ճառին մէջ, եւ ժողովն ալ անոր արձագանգ տուած. ուստի եղաւ հրովարտակն, եւ տեղն Քաղկեդոն նշանակուելով, որպէս զի կայսեր մօտ ըլլայ։ Սակայն եւս Լեւոն տեղի տալ եւ զիւր նուիրակներն ալ յղել՝ չմոռնալով իւր Տօմարը, սակայն խրատ տալով իւր Ապրիլ 23, 451 թղթովն, որ մէկ դին թողուի վիճելն թէ Եւտիքէս ամբարիշտ մի էր, եւ կամ թէ Դիոսկորոս «կամակորութեամբ թիւր դատաստան տուաւ»։ զի այդ խնդիրք իրենց լուծումն առին, կ՚ըսէր. պէտք է այժմ ժողովոյ երկու երկպառակ կողմերն հաշտեցունելու աշխատիլ, գլխաւորապէս ներումն շնորհելով անոնց, որ յանցած են Դիոսկորոսի հետեւելով. — որպէս կ՚երեւի որ Լեւոն կարծած է թէ Դիոսկորոս նոր խնդիր մը առեղծած էր ինքն իրմէ, որով այժմէն կը նշմարուի որ սխալ հիւանդութեան ախտադեղ կը տրուէր եւ թէ իւր խրատուն ինքն իսկ պիտի չհետեւէր։ Որպէս եւ է, հաւաքուեցաւ վերջապէս յ՚8 Հոկտ. վերջանալու ի 1 Նոյ. 451, Քաղկեդոնեան Դ Տիեզերական կոչուած մեծանամբաւ Սինոդոսն, աշխարհի խաղաղութիւն պարգեւելու պաշտօնով։

* * *

Ինչ որ պատմեցինք ցարդ, այդ ժողովոյն ծագման պատճառն էր, լսենք նաեւ այժմ իւր գործերն եւ հետեւութիւնն դարձեալ պատմագրաբար, որ անոր վրայ կարող ըլլամք ճշդիւ եւ լուսաւոր կերպիւ մեր վերջնական խորհրդածութիւնքն ընել։

Ժողովոյդ բովանդակ նիստերն տասնեւհինգ եղած են թուով, բայց առաջին վեց նիստերն են միայն, որ բուն նպատակին, եւ միաբ-գամայն մեր հետազօտութեան վերաբերեալ խնդրովք կը զբաղին։ Ցան-ջորդ միացեալ գումարմունք՝ օտար եւ երկրորդական նիւթովք աշխատ-ած են, յորս են ինչ ինչ եկեղեցական նոր կանոններ հաստատել։

Գալով ուրեմն մեր մասին, երեք գլխաւոր խնդիրներէ կը կազմուի

Ա. Դատաքննել Դիոսկորոսի (Բ Եփեսոսեան) ժողովոյն գործերը որ ինքն ալ դատաքննող եղած էր Փլաբիանոսի ժողովոյն։

Բ. Լեւոնի Տոմարն ընդունել։

Գ. Հաւատոյ Հանգանակ մը յօրինել։

Հետեւեալդ այդոնց պատմութիւնն է. ըստ ժողովոյն Տեղեկագրու-թեանց, մեզ կարեւոր եղածները քաղելով։

Ա Նիստ (8 Հոկտ.). Եւսեբիոս Դորիլեայ եպիսկոպոսն, որ իւ- դատախազ Դիոսկորոսի՝ անոր հետ ատեանին մէջտեղն նստած էր, ամբաստանագիր մը կը ներկայացունէ, յորում՝ բաց յայլոց՝ կ՚ըսէ Դիոսկորոս խառնիխուռն մարդիկ ժողվեց կաշառօք, եւ անոնցմով ուղ-կաթողիկէ հաւատքը կործանել՝ Եւտիքէսի մոլար վարդապետութիւնն ընդունել տալով։ Դիոսկորոս հանդարտութեամբ կը պատասխա

«Ժողովը ոչ իմ, այլ կայսեր հրամանաւ եղաւ. ես իսկ կ'ուզեմ որ այդ ժողովոյն գործերը կարդացուին եւ քննուին»։ — «Զնոյն ես ալ կ'ուզեմ,» ըսաւ Եւսեբիոս։ — «Բայց կը խնդրեմ որ նախ հաւատոյ խնդիրըն մէջ տեղ դրուի, որոյ ակնարկութիւն կ'ընէ Եւսեբիոս»։ — «Ոչ, ըսին իշխանք, պէտք է որ նախ քու անձիդ վերաբերեալ ամբաստանութիւնք լսուին»։

Իշխանաց հրամանաւ Թէոդորետոս (հակակիւրեղական) ի ժողով կ'ընդունուի, որովհետեւ Լեւոն Պապ, եւ իւր Պատրիարքն Անտիոքայ՝ զնա արձըկած էին իւր բանադրանքէն. բայց երբ ներս կը մտնէ, Եգիպտոսի եպիսկոպոսք (Կիւրեղականք) բողոքոյ ձայներ կ'արձակեն. «Ողորմեցէք մեզի. մի՛ թողուք որ հաւատքը կործանի. հանեցէք դուրս զայդ Նեստորական հրէայն»։ Երբ իշխանք կը յանդիմանեն թէ այդպիսի լեզու ռամկին անգամ չվայլեր, «Ի պաշտպանութիւն ուղղափառ կրօնից. խօսեցանք» կ'ըսեն։ — Իսկ Դիոսկորոս. «Նորա ընդունելութիւն, զԿիւրեղ դուրս արտաքսել է»։

Երբ գանգատ ըրին ոմանք թէ Դիոսկորեան ժողովոյն մէջ բռնութեամբ ձեռնագիրներ առնուեցան, պատասխանեցին Եգիպտացիքն. «Ուղղափառ ճշմարիտ Քրիստոնեայն բռնութիւն ի՛նչ է՝ չգիտեր»։ Եւ Դիոսկորոս. «Մանաւանդ եպիսկոպոս մարդ։ Սակայն ճշմարտութիւն չկայ բնաւ այդ ամբաստանութեան մէջ»։

Կարդացուեցաւ Դիոսկորոսի ըսելն թէ «Կը քննեմ Հարց վճիռները»։ Ասոր Եւսեբիոս. «Տեսէք, որ կը քննեմ կ'ըսէ. իմ ըրածս ալ քննել է»։ — Դիոսկորոս. «Ես քննել ըսած եմ, եւ ոչ թէ նորաձեւս մտցունել։ Ինքն Տէր ըսած է. «Քննեցէք զգիրս», այլ ոչ թէ փոփոխեցէք»։

Երբ յիշուեցաւ թէ ի ժողովին (Բ Եփեսոսի) «Պահապան հաւատոց» կոչուեր է Դիոսկորոս, «Այդպիսի բան ըսող չեղաւ,» կանչեց եպիսկոպոսներէն մին։ — «Լաւ եւս է ըսելնիդ թէ Հոն չէինք» պատասխանեց Դիոսկորոս։

Ցիշուեցաւ Եւտիքէսի (1) խօսքը թէ Եփեսոսեան տիեզերականը արգիլած է նոր յաւելուած ընել Նիկիական Հանգանակին մէջ. «Սուտ է», կանչեց Եւսեբիոս։ — «Քեզ զայն չորս ձեռագրի մէջ ցուցընեմ,» ըսաւ Դիոսկորոս։

Կարդացուելով Եւտիքէսի դաւանութենէն թէ «Կը նզովեմ զանոնք որ Քրիստոսի Տեառն մերոյ մարմինը յերկնուստ բերուած կ'ըսեն,» — «Բարի է, ըսաւ Եւսեբիոս. բայց Եւտիքէս բնաւ երբեք ըսել ուզած չէ թէ ո՛ւստից եղաւ մարմնաւորութիւնը»։ Երբ զնոյն հաստատեցին նաեւ Դիոգինէս եւ Բասիլ (Սելեւկիոյ), կանչեց Դիոսկորոս. «Եթէ Եւտիքէս յերաւի ուղղափառ դաւանութեան հակառակ կարծիքներ ունի, ոչ թէ

(1) Գիտնալու է որ Եւտիքէս ներկայ չէր ի ժողովին. Պուղքերիա զինքը հեռացուցած էր ի ԿՊօլսէ։

*պատժուք կ'ըսեմ, այլ այրուք։ Ես զիմ ուղղափառ հաւատքս կը պաշտպանեմ, ոչ թէ այս կամ այն մարդուն հաւատացածը»։ Եւ դառնալով յետոյ առ Բարսեղ, «Կը զարմանամ վրադ, ըսաւ, որ կերպ մը կը խօսիս ի ԿՊօլիս, եւ ա՛յլ կերպ յԷփեսոս»։— «Երկիւղ կար վրաս»։—«Ո՛ւրեմն առ երկիւղի կը մատնե՞ս հաւատքդ»։*

*Երբ յիշուեցաւ թէ նաեւ Եւստաթէոս Բերիւդայ՝ իբր Աթանասեան ընդունած է Կիւրղի՝ Մի բնութիւն Բանին մարմնացելոյ խօսքը, Արեւելեանք (Անտիոքեան դպրոցէն), «Զայդ խորհողն Եւտիքէս է, Դիոսկորոս է», կանչեցին։ Առ որ Դիոսկորոս զայս նշանական յայտարարութիւնն ըրաւ. «Նզովեալ նա որ այդ խօսքով շփոթումն կամ խառնակումն կամ փոփոխումն կը դնէ (1)»։*

*Իսկ երբ Երկու բնութիւն բացատրութեան վրայ եկաւ խօսքը, «Թէ առ ի՞նչ դատապարտուեցաւ Փլաբիանոս՝» պատճառն պարզապէս այս է, ըսաւ Դիոսկորոս. զի երկու բնութիւն կը խոստովանէր յետ մարդեղութեան։ Բնաւ տեսած չեմ Հարց գրութեանց մէջ, Աթանասայ, Գրիգորի, Կիւրղի, որ զկնի մարդեղութեան երկու բնութիւն ըսեն, այլ միշտ՝ Մի բնութիւն Բանին մարմնացելոյ ըսած են։ Ես անոնց վարդապետութեան աշակերտ եմ, եւ անոնցմէ չեմ բաժնուիր։ Կ'ընդունիմ ըսել Յերկուց բնութիւնս, բայց ոչ երբեք թէ ի Քրիստոս Երկու բնութիւնք գոն, [իբր Նեստորական լեզու]։ Համարձակ կը խօսիմ. կը խօսիմ իմ հոգւովս, որ պատասխան պիտի տամ Աստուծոյ»։*

*Եւսեբիոս երբ կշտամբեց զԴիոսկորոս իւր ըրած բռնութեանց համար իւր ժողովոյն մէջ, «Ես այդ խնդրոյն պատասխանը Աստուծոյ կուտամ», ըսաւ Դիոսկորոս. «Այո, պատասխանեց միւսն վրէժխնդիր ոգւով մը. բայց տալու ես նաեւ աստ օրինաց առջեւ։ Ինչո՞ւ եկած եմք աստ. զիրա՞ր բարեւելու»։*

*Հուսկ ուրեմն երբ հաստատուեցաւ որ Դիոսկորոս բռնի զՓլաբիանոս դատապարտած եւ իւր աթոռէն զրկած էր, արքունական իշխանք, որ կայսեր կողմանէ ներկայ էին, յայտարարեցին որ եւ ինքն Դիոսկորոս եւ իւր համախոհ գործակիցք զնոյն պատիժը կրելու են։ Այս յայտարարութեան վրայ անհագին ձայնից աղմուկ բարձրացաւ եկեղեցւոյն մէջ, որոց մէջ կը խառնուէր հանդիսապէս, «Սուրբ Աստուած, սուրբ հզօր, սուրբ անմահ, ողորմեա մեզ» երգը, եւ պոռութեամբ կը գոչէին. «Տապալե՛ց աթոռէն Քրիստոս զմարդասպանը»։*

*Ժողովոյս մէջ Դիոսկորոսի կուսակիցքն էին Եգիպտացիք, Պաղեստինացիք եւ Լիւրիկեցիք. իսկ հակառակ կողմէն էին, Արեւելեայք։*

---

(1) *Սոյնպէս ինչ կ'ըսէ եւ առ մեզ Պօղոս Տարոնացի, որ ջերմ Մի բնութիւն բանաձեւին պաշտպաններէն էր. «Ոչ փոխեցաւ աստուածային բնութիւնն ի մարդկային բնութիւն, եւ ոչ մարդկայինն յաստուածային բնութիւն, այլ երկաքանչիւրքն անարատ միացին». (Բզզ. Չամչեան, Բ. 481)։*

Ասիացիք, Պոնտացիք, Թրակացիք եւ Հռոմ։ Վիճաբանութեանց ժամանակ այս վերջնոց կողմն անցան Պաղեստինացիք։

Բ նիստ (Հոկտ. 10), յորում ներկայ չէր Դիոսկորոս. յետ ԿՊօլսական Հանգանակին եւ Կիւրղի քանի մը կանոնական թղթոց ընթերցման, կարդացուեցաւ վերջապէս Լեւոնի Տոմարը. ասոր ընթերցման ատեն՝ քանի մը կէտերու վրայ, ուր Նեստորականութեան չոչորդք կը նշմարէին, Լիւրիկեցի եւ Պաղեստինացի եպիսկոպոսք բացատրութիւն խնդրեցին. Թէոդորետոս եւ ԿՊօլսի Նորընտիր պատրիարքն Անատոլ, Կիւրղի համապատասխանող խօսքերը յառաջ բերին։ Երբ ընթերցմունք աւարտեցան, աղաղակեց ժողովն, թէ «Լեւոն եւ Կիւրեղ համաձայն խօսեցան», եւ Դ նստին թողին ձեռնագիր դնելը, յետ լաւ մը քննելու խնդիրը։

Գ նիստ (Հոկտ. 13). ներկայ չէին արքունի իշխանք, եւ ոչ Դիոսկորոս. Եւսեբիոս նախ, ապա ուրիշ եօթն, ութ վկայք եւս ներկայացուցին ուրիշ ծանր ամբաստանութիւններ ընելով Դիոսկորոսի վրայ, ամեն տեսակ եղեռնագործութիւն վրան պատմելով (1). ուստի եռ կանչուեցաւ նա, բացարձակ մերժեց ներկայանալ յատեան. ուստի ժողովն Նախագահին (Պասքասինոս) թողուց ի գործ դնել ինչ որ կանոնք կը հրամայէին. եւ նա պարտաւոր դատեց զԴիոսկորոս հետեւեալ գլխոց մէջ. Ա. – որ զԵւտիքէս՝ հակառակ բանադրանաց նորա մեծաւորին, ի հա-

---

(1) Խոհական արդի պատմագիր մը այս առթիւ կը յանձնարարէ ընթեռնուլ Ս. Աթանասայ վարքը, որոյ վրայ եւս ժողովոյ մը մէջ ոչ նուազ ծանր (սուտ) ամբաստանութիւնք եղեր էին։ Ցիշեմք մեք նաեւ զՈսկեբերան, կամ նոյն իսկ զԿիւրեղ. կամ զնոյն իսկ զԹէոդորետոս, որոյ սքանչելի քաղցր եւ մարդասէր համակրելի բարքն արդէն կը փայլին իւր թղթոց մէջ, կ՚աւանդէ որ իւր վրայ եւս ամբաստանութիւն եղած է. թէ Կիւրղի (որոյ հակառակորդն էր ըստ վարդապետութեան) կենաց դաւաճանը եղած է. (Թղթ. 86)։ Սոյն Թէոդորետոս, որ Դիոսկորոսի եւս համակարծիք չէր, առ նա ուղղեալ թղթոց մէջ կը գովաբանէ նորա առաքինի վարքը, մանաւանդ նորա [illegible] հեզութիւնն եւ պարկեշտութիւնն։ Եւ զայս կը հաստատէ կերպիւ ինն այն՝ որ Դիոսկորոս երբ յաքսորս ի Գանգրաս ապրեցաւ մինչեւ երեք տարի (+454), եւ ր ժողովուրդն անդ [illegible] զնա միայն իրենց օրինաւոր եւ սիրելի պատրիարքն ուզեցին ճանչնալ։ Հեզութիւն բարուց չպահանջէր, որ Եգիպտական արիաբար վարուիլ՝ ուր սկզբանց պաշտպանութեան խնդիր կայ։ Այլ ինչ է որ այդ պաշտպան կռուող ոգիները երբեմն կորուսած ըլլան իրենց հաւասարակշռութիւնը. այդ ամբարիշտ չըներ զմարդ։ Դիոսկորոսի հաստատամտութիւնն եւ ամուր յարեալ մնալն Եփեսոսեան ժողովոյն եւ Կիւրղի սկզբանց, ամենայն ուղղափառութեամբ, անժխտելի է – բայց եթէ ուզենայ մէկը խեղաթիւրել իրերը, եւ կամ հարեւանցի անուշադիր կամ աղանդաւոր մտօք ընթեռնուլ պատմութիւնը, առանց կարող ըլլալու դատել զատոյդն, եւ իրաց ճիշդ կապը գտնել, այդ ինքնին է գիտելի։ Մեք շատ լաւ տեղեակ եմք, որ մոլեռանդութեամբ ջեռեալ յոյն պատմիչք, անխիղճ գտնուած են զամեն ինչ բարդել, մանաւանդ այն անձին (կամ նոյն իսկ ազգաց) վրայ, որք իրենց աչքին անուանեալ մը [illegible] ճանչցուած է։

ղորդութիւն ընդունէր էր․ Բ․ Չէր կարգալ առած Լեւոնի Տոմարը․ Գ․ Մերժեր էր զՆեստորիոս ընդունել ի ժողով․ Դ․ Չկեւոն պաղ յանդգ[illegible]ած էր նզովել․ Ե․ Հեստած էր ժողովոյն հրամանաց ներկայանալու [illegible]տեան։ Ուստի գատապարտուեցաւ զրկուիլ իւր եպիսկոպոսական [illegible]ճանէն եւ քահանայական կարգէն, եւ վճռոյն ձեռնագրեցին ժողովական[illegible]։

Դ նիստ (Հոկտ․ 17)․ ընդհանուր համաձայնութեամբ ձեռնագրիր [illegible] դրուի Տոմարին, եւ յետոյ, բաց ի Դիոսկորոսէ, նոցա որ իրեն [illegible] դատապարտութիւն կրած էին Ա նստին մէջ, ներումն կը շնորհուի, [illegible] կը մտնեն ի ժողով։—Կը ներկայանան ապա տասներեք Եգիպտացի եպ[illegible]կոպոսք, որք խնդրով մը բացակայ էին ժողովէն․ երբ իրենց կ'[illegible]ջարկուի որ զՆեստորէս նզովեն, եւ ձեռնագիր դնեն Տոմարին, [illegible]նոյն կը հպատակին առանց երկար վարանելու․ բայց երկրորդին համա[illegible] (որ Երկու բնութեան բանաձեւը կը պարունակէր), գետին ընկած [illegible] խնդրեն ի ժողովոյն, որ չստիպեն զիրենք այդ մասին, զի չեն կար[illegible] ընել զայն իմքնագլուխ, քանի որ պատրիարք չունին․ ապա թէ [illegible] «Գիտցէք, կ'ըսէին, որ ի դարձին մեր յԵգիպտոս մեք ամենքս սպա[illegible]նուած ենք։ Եթէ մեր մահը կ'ուզէք, այժմէն ձեր իսկ ձեռօքը խող[illegible]դեցէք զմեզ»։ Ժողովն չուզեց լսել, զի «Աւազակաց» ժողովէն էի[illegible] բայց կայսեր ներկայացուցիչք հրամայեցին որ ի ԿՊոլիս մնան՝ մինչ[illegible] իրենց պատրիարքին ընտրութիւնն։—Ներկայացան այլ եւս ութ եւ[illegible]ըն վանականք, որք Եւտիքէսի հետեւող եղած էին, եւ ներուեց[illegible] իրենց, բաց ի մէկէն, որ ամենուն աչքը խայթեց․ Բարծումա անու[illegible]ն մէկը (1), որ իսկոյն ճանչցուեցաւ թէ նա էր որ վանականաց խումբ[illegible]ը մտուց յԵփեսոս յեկեղեցին, եւ ինքն զՓլաբիանոս չարաչար յլկ[illegible] «Դուրս, դուրս կորուսիչ մարդասպանն» եղաւ միաձայն աղաղակն։

Ե նիստ (Հոկտ․ 22)․ թէ այս նստին եւ թէ մանաւանդ ի Զ-ին (Հոկ[illegible] 25), ուր ներկայ գտնուեցան կայսրն եւ կայսրուհին, խնդիր եղ[illegible] նոր Հաւատոյ հանգանակ մը յօրինելու ժողովոյն կողմանէ․ ժողո[illegible] պէտք չտեսաւ․ բայց Մարկիանոսի ստիպման վրայ՝ զիջաւ ընել, [illegible] չարադրուեցաւ զկնի երկար խորհրդակցութեանց։

Այս գործերէն դուրս, եթէ կայ բան մի եւս արժանի մեր յիշ[illegible]տակութեանը, ժողովոյն ԻԸ կանոնն է, որ Արեւելեան եկեղեցեա[illegible] պատրիարքական աթոռոց աստիճանները եւ սահմանները կ'որոշէ, ա[illegible]չուշտ առաջք առնլոյ համար այն աջարձակութեանց, որոց նշաննե[illegible]րը բաւական սկսած էր զգալի ըլլալ, որոյ վերայ խօսեցանք վերեւ[illegible] Այս կանոնին մէջ ԿՊոլսի պատրիարքական աթոռն երկրորդ կը դասուի ըստ պատուոյ աստիճանի՝ զկնի Հռոմայ, բայց ոչ Առաքելական արո[illegible]

(1) Սաեմանի կ'աւանդէ, որ սա յետոյ յԱսորիս գնալով՝ Եւտիքականն (!) աղանդը տարածեց յԱսորիս, եւ սորա ալ աշակերտն Շմուէլ ոմն բրաւ ի Հայս (՛), զորմէ տես եւ ի Չամչեան, Գ․ 488-9։

ըլլալուն սկզբամբ, (որ այն ատեն պէտք էր Անտիոք ամենուն առաջինը համարուէր) , այլ Արեւելեան կայսրութեան քաղաքամայրն ըլլալուն պատճառաւ , ինչպէս միեւնոյն պատճառաւ եղած է , յայտարարեցին , Հռոմայ պատրիարքական աթոռ ըլլալը Արեւմտեան կայսրութեան մէջ ։ Այս սկզբանց ձեւն հաճոյ չանցնելով Լեւոնի՝ բողոքեց առ կայսրն Մարկիանոս եւ առ Պուղքերիա , բայց պատասխան չընդունեցաւ , եւ ինքն ժողովոյն ամեն մասերն ընդունելով , զայս վերջին կանոնն մերժեց , ինչպէս ցարդ իսկ կը մերժէ Հռոմ ։

Զկայ պատմութեանց մէջ յիրաւի , ինչպէս կ՚ըսէ պատմագիր մը , երեւելագոյն օրինակ հեղինական խնդակցութեան՝ քան զայն զոր ի վախճան Քաղկեդոնական ժողովոյդ ըրին իրարու Մարկիանոս եւ եպիսկոպոսունք ։ Գրեթէ յաջորդ օրէն պայթեցաւ փոթորիկն · Կիւրեղականք յԱնտիոք , յԵրուսաղէմ , յԱղեքսանդրիա՝ ոտք ելան միահաղամայն ընդդէմ ժողովոյն եւ ընդդէմ Լեւոնեան Տոմարին · ոչ ինչ նուազ եւ յԱրեւմուտս ի Լիբերիէ (1) · եւ ցարդ որ մէկ եւ կէս հազարեակն ամաց լրացած է , դեռ սպառելու եմք այդ խնդակցութեան կատարմանը ։ Դար մի եւ աւելի եպիսկոպոսական աթոռք խաղալիք եղան երկուց կուսակցութեանց , որք զիրար կը տապալէին , կը նզովէին , կ՚աքսորէին · չիշխեցաւ նաեւ Հռոմ անոնց մէջ մտնել զիւր խաղը խաղալու եւ աւելի չփոթեցունելու · ասոնց գեղեցիկ օրինակէն խրախուսեալ՝ ետ չմնացին եւ ժողովուրդք , անշուշտ աւելի եռանդեամբ զիրար բզքտելու , մինչեւ նաեւ կրօնական պատերազմաց անդրանիկը յաշխարհ բերել · եւ երբ վերջ ի վերջոյ ալ ուժաթափ տեղերնին նստիլ ստիպուեցան կուսակցք , կռուոյ դաշտին վրայ մնաց իւր մրուրը , որ եկեղեցի ընդ եկեղեցւոյ , ազգ ընդ ազգի գժտի , իրարու ատելութեամբ նային , զիրար յարմար անյարմար մակդիրներով նախատեն , — եւ այս մինչեւ ցայսօր իսկ ։ Ահա արդիւնք Քաղկեդոնեան ժողովոյն ։ Բայց մեք թողումք այդ անհաճոյ պատմութիւններն , եւ բուն ժողովոյն արժէքը քննեմք իւր պատմութեան վրայ՝ զոր համառօտեցինք ։

* * *

Առաջին աչքի զարնողն անդ՝ անակնկալ մի է ։ Ո՞չ ապաքէն եւ մինչ հաստատուած է թէ , ինչպէս Նիկիոյ ժողովն Արիոսականութեան , Եփեսոսինը՝ Նեստորականութեան , այսպէս եւ Քաղկեդոնինը՝ Եւտիքականութեան դէմ գումարուեցաւ · բայց ի՞նչ զարմանալի երեւոյթ , որ ի Քաղկեդոն՝ Եւտիքէս , որ աղանդապետն էր , եւ ոչ իսկ երեւեցած է , թէեւ կենդանի էր , եւ ոչ ալ իւր ներկայութիւնն հարցուած , որ անհրաժեշտ էր անտարակոյս , եթէ իւր աղանդոյն վրայ պիտի վճռուէր , — ինչպէս ի Նիկիա՝ ներկայացաւ Արիոս , եւ կամ յԵ-

(1) Այս նահանգը 431էն ի վեր Հռոմայ թեմէն անցած էր Կ.Պոլսի ։

Դամք երկրորդին․ Կը գահակալէ մեծն Յուստինիանոս Ա (527-565)․ Սա զկնի բազմամեայ բազմադիմի փորձերու, ըղձացեալ հանդարտութեան չհասնելով, կը դիմէ Զենոն կայսեր խորհրդոյն, բայց աւելի բռնական եւ վճռական հնարք մը խորհելով․ Ընդհանուր ժողով մը գումարել տալ ի Կ.Պոլիս (Մայ. 553) 165 եպիսկոպոսօք, որ յետ նախ ւրեղալիանաց հաճոյ գործ մը կատարելու, — որ էր Թէոդորոսի, Թէոդորետի եւ Իբասայ ինչ ինչ գրուածքները (որ Եկեղեցական պատմութեան մէջ Երեք գլուխք անուամբ կը ճանչցուին) նզովել տալու, իբր նեստորականս (1), — Ժողովն իւր Հաւատոյ հանգանակին մէջ երկու անուանի գլուխներ ալ մտուց, Է եւ Ը կանոնները․ առաջինը՝ Երկու ութեան բանաձեւը, եւ երկրորդը՝ Մի բնութիւն Բանին մարմնացելոյ նաձեւը, իբր կատարելապէս ուղղափառականս կը յայտարարէին, ՝է ոք զանոնք ուղիղ մտօք, ինչպէս սուրբ Հարք, դաւանելու ըլլայ՝ ելով (2)․ Զայս ժողով, որ յԱրեւմտեան Եկեղեցւոյ ընդունուած չէր՝

մ որ զայդ ամենը հաւաքելու համար՝ քանի մը տարիներ անցուցած յալու եւս․ (Բղդ. առ Պալճեանի, էջ 212)։

(1) Այս առթիւ էր, որ ի մէջ մերուեցաւ եւ կարգաչուեցաւ այն ամակն զոր Հայք (առ Մեծն Սահակաւ) ուղղած էին առ Պրոկղ՝ իբր վըյութիւն թէ Թէոդորոսի Մոպսուեստիոյ գրութիւնք նորա են արդաւ, եւ Հայք եւս կ'ամբաստանեն զնա իբր Նեստորական։

(2) Զայս երկու կանոնները Չամչեան (Բ. 265) այս կերպ ձեւով ամփոփէ․

«Կանոն Է․ Եթէ ոք յասելն երկուս բնութիւնս՝ իմանայ զբաժանումն բնութեանց, եւ ոչ խոստովանի զմի Տէր Յս. Քս. կատարեալ աստուածութեամբ եւ կատարեալ մարդկութեամբ՝ անշփոթաբար միաւորեալ, առանց աստուածութեանն փոփոխելոյ ի մարդկութիւն, եւ մարդկութեանն յաստուածութիւն, նզովեալ եղիցի։

«Կանոն Ը․ Եթէ ոք ի խոստովանելն զմիութիւն յերկուց բնութեանց, եւ կամ յասելն՝ Մի բնութիւն բանին մարմնացելոյ, ոչ իմանայ այնպէս՝ որպէս Հարքն ուսուցին, այսինքն՝ թէ յաստուածային բնութենէ եւ ի մարդկային բնութենէ միով անձնաւորութեամբ է մի Քս., այլ իմանայ թէ այնու եղեւ մի պարզ էութիւն աստուածութեան եւ մարմնոյն, եւ կամ շփոթմամբ մի գոյութիւն, նզովեալ եղիցի»։

Այդ է եւ Ը կանոնաց ողւոյն ճշդիւ համաձայն՝ քանի՛ յատակութեամբ նաեւ մերս Ներսէս Լամբրոնացին՝ իւր Ատենաբանութեան մէջ ի Տարսոնեան ժողովին ի 1178, զնոյն երկու բանաձեւներն իբրեւ ուղղափառ կ'ընդունի, զայս ուղիղ տեսութիւն նախ սկզբունք դնելով, է «Զիք ի ծագս աշխարհի եկեղեցի Քրիստոսի, որ ոչ զՔրիստոս՝ աստուած եւ մարդ դաւանէ. եւ եթէ այս այսպէս է, ապա ընդէ՞ր այսչափ հակառակութիւնք ի մէջ մեր բանակցելոյ»․ (Տպ. Վենետ. 1838, էջ 6). եւ թէ վէճն բանաձեւներու լոկ վէճ է․ «Բառս իմն եւ քննութեանս ընդդէմ միմեանց ուսոյց (բանսարկուն չար) բաղբաղել»․ (էջ 145)․ ով, կ'ըսէ, մի կողմն կը կարծէ որ Երկու բնութիւն ըսողք՝ Նեստորապէս կը բաժնեն, եւ միւսն՝ թէ Մի բնութիւն ըսողք՝ ըստ Եւտիքէսի շփոթեն. (էջ 149 եւ 151), եւ ապա կ'առնու ինքն զայդ երկու բանաձեւներն զատ զատ մեկնաբանել ըստ իւրեանց ուղղափառ մտաց, ՝ 149-151, եւ 151-156)․ Վերջնոյն համար կ'ըսէ այսպէս․ «Առնում

Երից գլխոց դատապարտութեան պատճառաւ, Գրիգոր Ա Պապ (590-604) ընդունել տուաւ, եւ այն է ցարդ իբր Ե տիեզերականն ճանչցուածն։ Ցետոյ նաեւ Մարտինոս Ա Պապ (649-653) իւր Ա Լատերանեան ժողովոյն մէջ (ի 649) որ ընդդէմ Միակամեայց, վերոյիշեալ երկու կանոններն վերահաստատեց՝ իւր Ե եւ Զ կանոնօք. (Մանսի, Ժ. 1154)։— Արդ մեր խորհրդածութիւնն այս պատմութեան վրայ՝ այս է. Թէ այս կրկին ժողովոց մէջ յանկարծ այդ մեր երկու հակադիր բանաձեւներուն մէջտեղ բերուիլն միանգամայն, եւ իբր ուղղափառական վաւերացուիլն, յի՞նչ այլ կրնայ մեկնուիլ, բայց նախ թէ այդ երկու բանաձեւոց խնդիրն իրօք երկու հակառակութեանց գժտութեան խնձորքն էին, (ինչպէս ցուցընել ուզեցինք զայն իւր համառօտ ամբողջ պատմութեամբն), եւ հարկ էր վերջապէս զայդ գժտութիւնը բառնալու համար՝ զերկուսն եւս միանգամայն ընդունել, որ կերպիւ իմն Քաղկեդոնականաց յաղթանակութիւն մի է, — եւ թէ, երկրորդ, անիրաւ էր Կիւրեղականաց վրայ դրուած արատն, թէ զմի բնութեան բանաձեւն դաւանելով, նոյ[…] խակ գործով՝ Եւտիքականք էին (1)։

---

զմի բնութիւն ասել Բանին մարմնացելոյ՝ անճառ խառնմանն հաչակ ըն[…]դէմ Նեստորի, եւ բան ասելով եւ մարմնացեալ, զյատկութիւն այլ- այլ բնութեանցն հաստատեմք զորոյն Կիւրղի։ Եւ ոչ ասեմք ի վեր[…] Բանին մարմնացելոյ զմի բնութիւնն՝ զյատկութիւն էութեանցն չփ[…]թելով, որպէս նոքայն կարծեն, այլ ըստ անճառ միաւորութեան ե[…]կուցն ի մի անձնաւորութիւն» եւն. (էջ 153)։ Այսպէս Լամբրոնացի բ[…] իւր Եկեղեցւոյն վարդապետութեան ուղիղ մեկնութիւնը կուտայ, հ[…]ւանականաբար առանց տեղեկութիւն ունենալու վերոյիշեալ ժողով[…]ն կանոնաց. ապա թէ ոչ՝ յետ երկու բանաձեւոց երկուստեք ուղղափառա[…]կան ըլլալը հաստատելու, չէր հետեւցուներ եւ յորդոր տար իւրոցն՝ […]ր տեղի տան Հոռոմոց, եւ անոնց բանաձեւը ընդունին, այլ նաեւ Հոռ[…]մոց կը յիշեցունէր որ ըստ իրենց մեծի ժողովոյն որոշման, ուղիղ […]ր նաեւ Հայոց բանաձեւը, եւ հարկ չկայր փոխել տալու, քանի որ ու[…]ղափառապէս կ'իմանան զայն։— Թէ Յոյնք եւս նոյն ԺԲ դարուն մէ[…] այդ ժողովոյն որոշումն մոռացութեան տուեր էին, յայտնի կը տեսն[…]ւի Թէորիանէի ըսելէն առ Ներս Շնորհալի, թէ «Մի բնութիւն աս[…]լ ի Քրիստոս՝ արգելեալ է»։ (Պալճեան. էջ 216)։ — Բայց մեզ այնք[…]ն զարմանալի չէ Թէորիանէի ագիտանալն, որչափ Պալճեանին անգիտա[…]նալը, որ իւր այդ Պատմութիւն Կաթողիկէ վարդապետութեան ի Հա[…] մատեանն գրելու ատեն (տպ. Վիեննա, 1878) ուշ դրած չէ Զամչեան[…] Պատմութեան, ուր այդ կանոններն յիշատակուած են, որով եւ Թէ[…]րիանէի հակաճառութիւնն ինքն՝ իբր հրաշալի քարոզութիւն Քաղկեդ[…]նական՝ բերնին ջուրերը վազցունելով պատմելէն վերջը, կը յաւելու[…] «Ինչպէս կը բաղձացուէր՝ յուսացեալ նպատակին հասան. քանի մը հ[…]ւատոյ գլուխները պարզուեցան, գլխաւորաբար Քրիստոսի երկու բնու[…]թիւններն ընդունուեցան, եւ Քաղկեդոնի ժողովոյն՝ ուրիշ տիեզեր[…]կան սինհոդոսաց հաւասար՝ հաւատք ընծայուեցաւ»։ որ բոլորովին ս[…]խալ է. (Անդ. էջ 32)։

(1) Եթէ Կիւրեղականաց Երկու բնութիւն ըսելու հակակրութիւն[…] Քաղկեդոնականք՝ իբր Նեստորականութեան նշան կը համարէին, չէ[…]

Իսկ թէ ցայժմ Քաղկեդոնականք , անտես ընելով այդ երկու մեծ ժողովոց որոշումն , տակաւին կը յամառին Եւտիքական՝ անգոյ իրի մը անուամբ՝ անուանել Մի բնութեան դաւանող Արեւելեան եկեղեցիները · եւ առ հէրէտիկոսս գրել , այդ գաղտնեաց մեք չեմք հասու · հարկ կ'ըլլայ նոցա դառնալ հարցունել , որ բացատրեն մեզ պատճառն ։

Լ· Դիւշէն , Հռոմէական քահանայ եւ համալսարանական դասախօս Աստուածաբանութեան ի Սորբոն Պարիսի , յետ սոյն այս մեր խնդիրն քննելու եւ նշմարելու որ վէճն աւելի բառական էր քան այլ ինչ, առանց թէեւ բուն գաղտնեաց յստակ հասու ըլլալու , դիւր խօսքը այս մանրավէպով կը փակէ · «Արիոսեան կռուոյն ատեն , քանի մը ուղղափառ եպիսկոպոսներ Մեծին Աթանասայ քովը հաւաքուելով՝ վէճի բռնըւեցան · ոմանք յԱստուած մի անձն կը դնէին , եւ այլք՝ երեք · մտիկ ընելով հայրապետը բաւական ատեն , յանկարծ դարձաւ , «Կը տեսնեմ, ըսաւ , սիրելիք, որ խօսքերնիդ տարբեր է, բայց մտքերնիդ նոյն · ուրեմն տուէք համբոյր իրարու , եւ երթայք սիրով ի Տէր» ։ Եւ կը յարէ Դիւշէն · «Շատ մեծ աստուածաբաններ ունիմք, բայց ոչ եւ Աթանաս մը» ։

∴

Իսկ ի՞նչ կ'ընէր այս երկար Քաղկեդոնեան կռուոյն ժամանակ մեր Հայաստանեայց Եկեղեցին , — ժամ է մեզ հարցունել այժմ , ըստ մեր գրութեան բուն նպատակին ։ Պատասխանն սակայն յայտնի է ։ Վսեմագոյն պատերազմ մը կը պատերազմէր մենիկ միայնիկ , ոչ անգոյ Եւտիքականութեան դէմ սպառազինեալ , եւ զաշխարհ իրար անցունելով՝ քրիստոնէական սէրը քայքայելու , այլ ընդդէմ ահեղ Պարսկական բռնութեան, քրիստոնէական կրօնքը հաստատելու ։ Բայց , աւա՜ղ, չկրցաւ զիւր դռներն մինչեւ ցվերջ փակ պահել այդ սնոտի եւ անիմաստ կռուոյն համաճարակ արշաւանաց դէմ · ցաւով կը տեսնեմք որ այդ վեհ եւ կորիճ պատերազմողք կը ստիպուէին վերջապէս իջնել իրենց բարձունքներէն , եւ կերպ մը գռեհիկ կռիւներու մէջ խառնուիլ · սակայն ուրախ եմք նկատել , որ անդ եւս իրենց արժանապատուութիւնը կը գիտնան պահել իրենց արիական հաստատամտութեամբ ։

Զգիտեմք թէ կա՞յ հարկ երկայնաբանել այս մասին , քանի որ մեր նախորդ պատմութեանց ընդհանուր նկարագիրն եւ խորհրդածութիւնք , զոր եւ դիտմամբ մանրամասնեցինք , ինքնին լռելեայն մե-

---

նն որ այդ ընդդիմութիւնն՝ նախ քան զԵւտիքէս , նոյն իսկ Կիւրղի օրէն կայր , որ երբ առ սէր խաղաղութեան զիջաւ զայդ բացատրութիւնն շնորհել Յովհաննու Անտիոքայ · Արեւելեայք , իւր կուսակիցքն՝ սկսան խոժոռ հայիլ վրան ։ (Բղդ. Գաթրճեան , Բ , 427-8)

ծաւ մասամբ գուշակել կուտան, թէ ի՛նչպէս վարուեցան, կամ պէտք էին որ վարուած ըլլան մեր նախնիք այդ խնդրոյն նկատմամբ, իրենք ալ մի եւ նոյն պայմանաց մէջ գտնուելով, յորում էին Կիւրեղականք։ Սակայն եւ այնպէս կան ինչ ինչ մասնաւոր պարագայք, զորս հարկ է մեզ, մեր ուսումնասիրութիւնը ամբողջացունելու համար, առանձինն քննութեան առնուլ, գոնէ համառօտիւ. մանաւանդ այն կէտերը, որոց մասին ոչ փոքր սխալ տեսութիւններ եղած են մեր արդի պատմչաց կողմանէ, մասամբ օտար ազդեցութեանց անզգուշաբար հետեւելով։

Նախ առաջին գիտելիքն եւ ճշդելիք այն է, որ Հայոց Եկեղեցին, որ ի Միբնութենականաց է, զայդ բանաձեւն՝ ոչ թէ, ինչպէս կը կարծեն դոքա, շատ յետոյ քան զՔաղկեդոնեան ժողովն ընդունեցաւ՝ վէ[ճ]երու առթիւ եւ հակառակութեան ոգւով, այլ ընդհակառակն՝ [illegible]կ քան զժողովդ՝ Եփեսոսականէն ընդունած է զայն առ մեծն Սահակ հայ[illegible]րապետաւ։ Ծանօթ է մեր ազգային պատմութեան տեղեակ եղողներուն[illegible], որ թէ եւ մերայինք ներկայացուցիչներ չունեցան Եփեսոսի ժողովոյ[illegible]ն մէջ, բայց նոյն ժողովոյն գործք եւ կանոնք, թարգմանչաց ձեռօք՝ ո[illegible]ր ի ԿՊօլիս կը գտնուէին յայնժամ, վաղ բերուեցան առ մեծն Սահակ եւ [illegible]ւ Մեսրոպ, եւ այդ առթիւ թղթակցութիւնք եւս տեղի ունեցան ըն[illegible]դ մերոն եւ ընդ գլխաւոր Հարս նոյն ժողովոյն, Կիւրեղ, Պրոկղ, եւն[illegible]. (Բղդ. Կորիւն, Խորեն.)։ Այդ թղթոց միոյն մէջ, որ պահուած է ցարդ, Պրոկղի առ Հայս գրած նշանաւոր նամակը (ի 435), յայտնապէս ի մէ[ջ] կը բերուի Մի բնութիւն Բանին մարմնացելոյ (1) բանաձեւը, հանդեր[illegible]ձ մեկնաբանութեամբ, որ անկասկած կ՚ընէ զմեզ թէ իրօք ծանօթ է[ր] բանաձեւս մեծին Սահակայ, եւ ի նմանէ եւ յիւրոցն ընկալեալ, իբրեւ Կիւրեղեան եւ Պրոկղեան աւանդութիւն. մանաւանդ երբ կը տեսնեմք եւս,

(1) Դիտելի է որ Պրոկղի յունարէն բնագիրն՝ Կիւրեղեան բնութիւն (փի՛սիս) բառին տեղ՝ հիպո՛ստասիս ունի. թէ արդեօք այդ ընթերցուածըն Պրոկղի՞ է թէ Քաղկեդոնիկ ընդօրինակողի մը, աւելորդ է քննել. մեզ այն յայտնի է որ Ե դարու Մեսրոպեան դպրոցին ներսէն չելլալով զայդ բառն ենթակայութիւն թարգմանել, բնութիւն բառն պատշաճագոյն համարած են, (ինչպէս՝ Եբրայեցւոց թղթոյն մէջ ալ էութիւն թարգմանուած է. «Որ է լոյս փառաց եւ նկարագիր էութեան նորա». Ա. 3)։ Այդ բնութիւն բառը ոչ թէ միայն Կիւրեղեան էր, այլ զի նաեւ ճիշդ կը համապատասխանէր հեղինակին մտքին, որ է՝ էութիւն, իսկն, իսկութիւն, որ եւ ըստ յունաց՝ անձնաւորութիւն, լտ. persona, — մինչ լտ. natura առումն՝ երկրորդ եւ յետնորդ նշանակութեամբ է։ — Աստուածաբանական խնդրոց վրայ վիճողք, ոչ պատմականին միայն, այլ եւ լեզուականին հմուտ պէտք են լինել երկուստեք, եւ իրենց թեթեւ գիտութեամբն՝ չմեղադրեն մեր հին հարց բացատրութիւնները, եւ կասկածներ չհանեն անոնց հաւատոյը վրայ։ Բայց թէ յետնորդ ագիտութիւնն խեղաթիւրած է ուրիշ բառերուն իմաստը, այդ ագէտին է յանցանքն, եւ ոչ թէ բնագրին. ապա թէ ոչ՝ կը ստիպուիմք նաեւ զՍ. Գիրս մեղադրել եւ սրբագրել։

որ սոյն բանաձեւն կը գտնուի նաեւ այն Հաւատոյ դաւանութեան մէջ, զոր Գաթրճեան Հայրն՝ յիւրում Հանգանակ հաւատոյ մատենկան մէջ (Վիեննա, 1891, էջ 35-37) ի մէջ կը բերէ յանուն Աթանասայ, անգաւորն ի Ե դարէ Թարգմանեալ, ինչպէս անտարակուսելի կ՚ընէ լեզուն. անդ կը կարդամք. «Իսկ Որդի մարդոյ ըստ մարմնոյ, ոչ երկուս բնութիւնս՝ զմին երկրպագելի եւ զմին աներկրպագելի. այլ մի բնութիւն Աստուծոյ Բանին մարմնացեալ, եւ երկրպագեալ հանդերձ մարմնով իւրով՝ միով երկրպագութեամբ»։ Արդ այս պատմական եւ վաւերագրական վկայութեանց վրայ տեղի չմնար երկբայութեան, որ Հայք ի սկզբանէ անտի Եփեսոսականք (Կիւրեղականք) էին, եւ ջերմ հակառակորդք ընդդէմ Նեստորականութեան, (Բղդ. Թուղթ Հայոց առ Պրոկղ, նաեւ առ Չամչեան քաղուածոյ, Բ, 261-264, ուր կը տեսնուի եւ Աստուածաբանական ատելութեան (Odium theologicum) կծու լեզուն), եւ թէ ստոյգ էր մերազնեայց յետոյ ստէպ յեղյեղելն, — ինչպէս նաեւ ի Մանազկերտեան ժողովին, (Չամչեան, Բ, 352) — թէ ի նախնեաց եւ ի Թարգմանչաց աւանդաբար ունիմք զայդ բանաձեւն., եւ անոնցմէ հաւատարմաբար մինչ առ մեզ հասած է այժմ երկար դարերէ անցնելով (1)։

Արդ այս միբնութենական պայմանին մէջ կը գտնուէր Հայաստանեայց Եկեղեցին այս բանաձեւից նկատմամբ, երբ Քաղկեդոնեան ժողովէ Երկու բնութեան բանաձեւն կը հռչակէր։ Պատմութիւնն կը լռէ մեզ բոլորովին թէ ե՞րբ եւ ի՞նչ կերպիւ հասաւ անոր համբաւը ի Հայաստան, եւ թէ ի՞նչ ընդունելութիւն գտաւ ի Հայոց։ Այս լռութեան վրայ՝ ենթադրութեանց կը մտնեն մեր արդեան պատմիչք, Չամչեան եւ Պալճեան, բոլորովին անհաւանական։ Վերջինս մանաւանդ իւր Պատմութիւն

---

(1) Չամչեան վկայութիւն մը ի մէջ կը բերէ (Պտմ. Հայ. Ա, 527) ի Վահանայ եպիսկոպոսէն Նիկիոյ (ի 862), իբր թէ Մեծն Սահակ Աշտիշատայ ժողովոյն մէջ (Խորեն. Գ. 61) Նեստորականաց խնդրոյն առթիւ՝ Մարդեղութեան խորհրդոյն վրայ ատենաբանելով, զայս բանաձեւն արտաբերած ըլլայ. «Խոստովանիմք զՔրիստոս յերկուց բնութեանց մի անձնաւորութիւն եւ մի դէմ եւ մի Քրիստոս»։ Բացարձակ անընդունելի է որ Քաղկեդոնական բանաձեւդ իրօք Սահակայ ըլլայ։ Սահակ կրնար համաձայն վարդապետութիւն մը ընել, բայց Եփեսոսական լեզուաւ։ Ինքըն Վահան՝ Սահակայ ըսածն ի Քաղկեդոնական ձեւն փոխած, եւ այնպէս հարկ համարած է իւր ունկնդրաց հաղորդել զանոնք դիւրաւ համոզելու համար. խօսքին իմաստը, եւ ոչ թէ բուն բառերը՝ յառաջ բերած է։

Այս առթիւ ի դէպ կը համարիմք երկուց ժողովոց՝ Եփեսոսի եւ Քաղկեդոնի, մեզ նիւթ եղած բանաձեւները աստ ի մէջ բերել, հանեալ իրենց Հանգանակներէն.

Եփեսոս. «Քանզի եղեւ միաւորութիւն երկուց բնութեանց, եւ վասն այնորիկ խոստովանիմք մի Քրիստոս, մի Որդի եւ մի Տէր».

Քաղկեդոն, որ կը բառնայ միաւորութիւն կամ միութիւն բառը, եւ կ՚ըսէ. «Զմի եւ զնոյն Քրիստոս Որդի, Տէր միածին, յերկուց բնութեանց անշփոթ, անփոփոխ, անբաժանելի եւ անանջատելի ճանաչեմք». (Մանսի. Է, 116)։

*Կաթողիկեայ վարդապետութեան ի Հայս տարօրինակ մասերին մէջ. առե-
լի տարօրինակ ջերմեռանդութեամբ ։ (առանց ուշ դնելու կամ անդրա-
դարձած ըլլալու բանաձեւոց խնդրոյն), կ՚ուզէ կարծել թէ «Հայք Քաղ-
կեդոնի վճիռներն անմիջապէս ընդունեցան՝ մերժելով Եւտիքական հայ-
հոյութիւնը ... քաջ տեղեակ ըլլալով նոյն Սիւնհոդոսին բոլոր ընթաց-
քին ։ վճռոցն եւ սահմանադրութեանց» (էջ 14), եւ թէ անով ընդ-
ամս 90 խաղաղութեամբ ապրելէն ետեւ, յանկարծ օրին մէկը՝ կէս մ—
ի գրգռութենէ ցեղ ցեղ Եւտիքական աղանդաւորաց, եւ կէս մը Հենո-
տիկոն «ներգաւոր հրովարտակին» ազդեցութենէն պղտորեալ (էջ 17),
կ՚ընդվզին, եւ միանգամայն ի դուրս կը վտարեն իրենց եկեղեցիէն Քաղ-
կեդոնն ալ, Լեւոնն ալ, պարագլուխ կենալով այդ անակնկալ նորա-
ձեւութեան՝ Ներսէս Բ Աշտարակեցին (527-535), (կամ ըստ Զամչեանի
Բաբգէն) «որ ոչ հովիւ ոչխարաց էր, այլ վարձկան, մանաւանդ թ— է
գայլ յափշտակող, որ առաջին անգամ բաժնեց իւր հօտն ի միութենէ
եւ ի հաղորդակցութենէ Կաթողիկէ Եկեղեցւոյ եւ Հռոմէական աթոռոյ (!)։
Աննմանելի՜ն ապիրատութիւն, որ այնչափ մոլորութեանց սկիզբն., վէ— մ
գայթակղութեան եղաւ Հայաստանեայց ժողովրդեան հետագայ դարուց
մէջ», եւն. եւն. (Անդ, էջ 19)։ Ահա պատմութիւն մը, որում եթէ
ներելի է նմանութիւն մը բերել, հագուստ մի է ներսը դուրս, դուրսը
ներս ըրած՝ միամիտ ընթերցողի մը հագուեցունելու (1)։*

*Մեք աւելորդ կը համարիմք երկար վիճել այդ ենթադրութեանց
հետ. միայն զայս կը հարցունեմք. Կա՞յ իրօք Հայոյն բնութեան մէջ
այնքան դիւրաշարժ փոփոխամտութիւն, մանաւանդ ի կրօնականս. որ
այդպէս նախ յԵփեսոսեանն, ապա անտի անցնի ի Քաղկեդոնականն,
եւ ի Քաղկեդոնականէն յանկարծ յետս ոստնու դարձեալ յԵփեսոսին—,
կամ ըստ Պալճեանի, աւելի անհեթեթ, յԵւտիքականութիւն, առանց*

---

(1) *Այս ճարտարութեան օրինակք բազում են, բայց հատ մը եւս
մէջ բերեմք մեր դիտողութեան ստուգանութեանը համար։ Թէորիան— ի
հակաճառութեան առեն՝ ներկայ գտնուելով Գրիգորիոս եպիսկոպոս մը,
տեսնելով որ Յունաց (Քաղկեդոնեան) բանաձեւն հակառակ չէ Հայոց
(Եփեսոսեան) բանաձեւին, «Ես ալ ուրեմն Հռոմ եմ» կը կանչէ։ Զա—
Հռոմ բառը Պալճեան՝ իւր թարգմանութեան մէջ Հռոմէականն կը յեղու-
եւ զայն գլխագիր տառիւք (էջ 214), որք, կարծեմք, չատ տարբեր
բառեր են հայերէն լեզուի մէջ՝ սկսեալ յԵղիշեան դարէն, եւ այժմ մա-
նաւանդ բոլորովին հեռու խմաստներու կը տանին ընթերցողին միտքը,
եթէ շլակնութեամբ չկարդայ։ Այս մասին իրաւունք ունէր Թարգմանի-
չը զայդ անմեղ այլայլութիւնը գործելու, իւր մասնին նպատակին
զայդ կէտն ալ համաձայնեցունելու համար. զի եթէ այդ Գրիգոր եպիս-
կոպոսն իւր Շնորհալւոյն հետ, այդ ԺԲ դարուն մէջ Հայ եկեղեցին
Հռոմ եկեղեցին անցնէր. — որ Հռոմէականէն երկու դարէ ի վեր բա-
նուած էր, — մէկ խեղճութենէ ուրիշ խեղճութեան մէջ պիտի ընկ— ծ
ըլլար, եւ երկու բնութեան դաւանութիւնք զայն արդիւնքն յառաջ բե-
րած պիտի չըլլար, ինչ որ կը սիրէ ցուցընել մատենագիրն ամեն հնար—*

խակ բնաւ ճանչելուն , թէ ո՞ է Եւտիքէսդ ։ Եթէ Հայք իրօք , ինչպէս կ'ըսէ «քաջ տեղեակ էին Սիւնհոդոսին բոլոր ընթացքին» , շատ աւելի լաւ քան զմեզ հմուտ ըլլալու էին թէ ի՞նչ կը նշանակէին այդ «Եւտի-քական հայհոյութիւնքն» , զոր ինչպէս տեսանք , բոլորովին առասպե-լական հիւսուածք էին , որով Պատմչիդ գոյն այդ ենթադրութիւնն իսկ ինքնիրենքն կը ջրէ ։ — Բայց Պալճեան դիւր այդ պատմական չէնքն իրողութեան մը վրայ կը կանգնէ · ի Գործս Քաղկեդոնի ժողովոյն՝ ժո-ղովոյն ժողովականաց Թուոյն մէջ եւ Նորա Հանգանակին ձեռնագրողաց մէջ կը գտնէ քանի մը եպիսկոպոսներ , որք գրենք՝ Եպիսկոպոս Թէո-դուպօլսի· Հայոց Մեծաց· Երիզայ , Արճիշոյ , Եկեղեաց , Վաղարշապօլսի կ'անուանեն ։ Աներկբայ աննշան ինչ չէ այս պարագայն · սակայն չեմք կրնար համոզել զմեզ , որ լուրջ ներկայացուցիչ եղած ըլլայ այդ Հայոց եկեղեցւոյն կողմանէ . այնպիսի ժամանակի՝ յորում քան զԴիոսկորոսի մը դատն , շատ աւելի մեծ եւ կարեւորագոյն դատ մը կայր լուծելու ա-անիրն սահմանաց մէջ ։ Եթէ դոքա մինչեւ իսկ եղած ըլլան ազգային եպիսկոպոսներ , եւ ոչ յոյն կամ յունամէտ , — ինչպէս կասկածել կու-տան անոնց՝ Մանասէ , Պապիաս , Պրոկղ , Կիրակոս անուանքն , գըլ-խովին աննմանք նոյնաժամանակ Աշտիշատայ ժողովոյն հայկական ա-նուանց՝ որ առ Եղիշէի , — աննշան եւ երկրորդական անձինք եղած ըլլալու են , եւ կամ ղրկուած Թերեւս առ մարդահաճոյ քաղաքավարու-թեան առ Մարկիանոս , յուսալով տակաւին քաղաքական օգնականու-թիւն անկէ ընդունելու (Բղդ. Եղիշէ , Դ) ։ Իրենց ներկայութիւնն ալ ի ժողովին՝ բնաւ գրաւական մը չէր կրնար համարուիլ , որ ի նոցա դար-ձին՝ ազգային եկեղեցին պիտի «անմիջապէս ընդունէր ժողովոյն վճիռ-ները» · առանց զանոնք նախ վերաքննելու , իւր անկախութեան իսկ իրաւունքով ։ Բայց զայս վերջին կէտն հարկ կը տեսնեմք փոքր ինչ ա-ւելի լուսաբանել , որ ամեն տարակոյս վերնայ ։

Տեղեկացուցինք արդէն ի սկզբան բանիցս , թէ երբ տեղ մը ա-ղանդ մը երեւար , Եկեղեցական ժողով կը գումարուէր տեղական՝ զայն քննելու եւ դատելու համար · եթէ ընդարձակագոյն ըլլար աղանդոյն ճա-րակումն , ժողովն եւս անոր համեմատ ընդարձակագոյն կը լինէր ։ Զկնի ժողովոյն , վճիռքն կը հաղորդուէին պատրիարքական եւ գլխաւոր եպիս-կոպոսական աթոռոց · եւ սոքա այդ վճիռները իրենց ժողովովն վերաքն-նութեան կ'առնուին · եթէ կարեւոր ինչ էր իրենց համար եւ ընդունե-լի · կ'ընդունէին , թէ ոչ՝ լռութեամբ կը թողուին ի բաց , եւ կամ երբեմն՝ հակառակ վճիռ եւս կ'արձակէին ։ Այսպէս Գանգրայ ժողովն (իբր 380) իւր սիւնոդոսական թղթով կը ծանուցանէր առ Հայս՝ Եւստաթէո-սի Սեբաստիոյ եպիսկոպոսին կրած դատապարտութիւնը , — եւ Արե-ւելեան եպիսկոպոսաց ժողովն (371-2) որ ընդ նախագահութեամբ Ս. Բար-սղի , ուր ներկայ էր նաեւ մերս Ներսէս Մեծն , կը ծանուցանէր առ

Դամասոս Ա. Պապ ի Հռոմ՝ իրենց վճիռը Արիոսական վէճին վրայ։ — Այսպէս եւ ինքն Դամասոս՝ գիր վճիռն Ապողինարեան աղանդոյն վրայ (յ՚378) կը հաղորդէր յԱնտիոք, եւ սա իւր ժողովոյն կ՚ընդունէր զայն ի յաջորդ տարին, եւ յամին 381 կը վերահաստատէր վերջնականապէս Բ Տիեզերականն ի ԿՊօլիս։ — Նոյնպէս էր եւ Արմէս քաղաքի Ս. ժողովն յ՚314, որ վերաքննութեան կ՚առնոյր Մելքիադէս Պապին ըրած որոշումները, ընդ որ Դոնատեանք գոհ եղած չէին, եւն. եւն.։

Այս ժողովոց կարգին մէջ քան զամենքն ընդարձակագոյն կը համարուէր Տիեզերական կոչեցեալքն, որ անշուշտ տեսականապէս կը նշանակէ՝ որ համաժողով գումարումն ըլլայ բոլոր քրիստոնէական աշխարհներէ եւ եկեղեցիներէ, ինչպէս եղած է միայն Ա Նիկիոյ ժողովն (325). սակայն ի գործնականին բոլորովին տարբեր նշանակութիւն ունէր, նոյն իսկ Տիեզերական բառէն սկսեալ։ Այդ բառն, որ յունական œcuménique բառին թարգմանութիւնն է ի մեզ, ոչ այլ ինչ կը նշանակէր, բայց Հռոմէական կայսրութեան աշխարհաց սահմանք (1), այնպէս որ այդ անունը կը տրուէր ոչ միայն միահեծան Հռոմէական կայսրութեան, այլ նաեւ անոր երկու՝ Արեւելեան եւ Արեւմտեան՝ բաժանեալ մասանց զատ զատ։ Արդ ճիշդ այդ առմամբ կը յորջորջին եւ ընդհանրական ժողովք — այնպէս որ, Ա. եւ Բ ԿՊօլսի ժողովները, որ միայն յԱրեւելեան կայսրութեան եպիսկոպոսներէն գումարեալ են, դարձեալ Տիեզերական կը կոչուին, իրենց ընդհանուր ընդունելութիւնը յեկեղեցեաց շատ ամօք յետոյ ըլլալով՝ եւ այն մասնաւոր վերաքննութեամբք։ Այնպէս եւ առ Արեւմտեայս Տիեզերական կը կոչուի Ս. Լատերանեան ժողովն (649), թէ եւ Արեւմտեան կայսրութեան սահմաններէն միայն գումարեալ (2)։ — Թէ այդպիսի սահմանափակ գործադրութիւն մը ունեցած են միշտ Տիեզերական կոչուած ժողովները յայտ է եւ անակէն, որ այդ ժողովոց հրաւիրանք միշտ կայսերական հրովարտակօք եղած են, (գուցէ ծախուց պատճառաւ, որ յարքունուստ կը լեցուէր, կամ թէ՝ զի չկայր միահեծան պատրիարգութիւն մը). ինչպէս Նիկիականն ի

(1) Բղդ. «Ել հրաման յՕգոստոս կայսերէ աշխարհագիր առնել ընդ ամենայն տիեզերս» (Ղկ. Բ. 1)։ — Զնոյն եւ մեր Շարականն մեծին Թէոդոսի համար կոչած է. «Տիեզերական իշխանութիւն», — երեւի ի յունէն թարգմանեալ, կամ յունական երգի մը հետեւելով։

(2) Այս առմամբ է որ նաեւ ԿՊօլսի պատրիարքութիւնն Յունաց, ի Զ դարէ անտի, յեցեալ Քաղկեդոնեան ժողովոյն որոշման վրայ, (Տես վերեւ), զինքն Տիեզերական պատրիարգ սկսած է անուանել, — յայտ է Արեւելեան կայսրութեան իմաստիւ. որոյ դէմ հակառակած են Հռոմայ Պապք, իրենց զայն յետոյ անշուշտ վերապահելու մտօք։ Սոյն սահմանափակ իմաստիւ նաեւ մերս Ներսէս Լամբրոնացի զնոյն աթոռ «Տիեզերաց արքունական աթոռ» կը կոչէ. (Ատեն.), եւ կամ Քաղկեդոնեան ժողովոյն առեն՝ Աղեքսանդրացիք զԼեւոն Պապ կոչած են. «Տիեզերական պատրիարք (Արեւմտից) եւ եպիսկոպոս մեծին Հռոմայ»։

մեծէն Կոստանդիանոսէ , Ս. ԿՊօլսին՝ ի մեծէն Թէոդոսէ , Եփեսոսին՝ ի Փոքուէն , եւ Քաղկեդոնին՝ ի Մարկիանոսէ · նոյնպէս եւ յաջորդ չորս Տիեզերականքն · եւ ինքն իսկ Լեւոն Ս. Պապ , երբ կը փափաքէր ընդդէմ Բ Եփեսոսին (Դիոսկորոսի) ուրիշ ժողով մը գումարել յԻտալիա , կը դիմէր առ Վաղենտիանոս Գ եւ առ Թէոդոս Բ կայսերս : — Բայց աւելի զարմանալին կայ · այդ Տիեզերական ժողովոց վճիռք հաւատոյ եւս՝ դարձեալ կայսերական հրովարտակօք կը հռչակուէր : — Իսկ այն քրիստոնեայ աշխարհաց համար (ինչպէս էին Հայք, Պարսք եւ Եթովպացիք) , որ Հռոմէական կայսերութեանց սահմաններէն դուրս էին , բնականաբար նոցա ոչ այդ կայսերաց հրաւէրն կը զօրէր օրինաւորապէս , եւ ոչ յետոյ վճռոց հրովարտակն եւ նոքա իրաւունք ունէին զայդ Տիեզերական ժողովս , ոչ իբր ընդհանուր նկատել , այլ տեղական , եւ իրենց ներկայութիւնն , — ինչպէս եղաւ միայն ի Նիկիայն, — բոլորովին կամայական էր , եւ հրաւէրն եւս որ եղաւ ի Կոստանդիանոսէ առ մեր Տրդատ , բոլորովին բարեկամական կը նկատուի :

Կը հետեւի ուրեմն ըսել այս տեղեկութեանց վրայ , որ այդ Տիեզերական ժողովոց վճիռները վերաքննութեան դնել Հայոց եկեղեցւոյն կողմանէ , — զի սորա վրայ է առանձինն այժմ մեր խօսքը , — կրկնակի գլխով օրինաւոր էր · իբր անկախ եւ ազատ եկեղեցի թէ՛ եկեղեցականապէս , եւ թէ՛ քաղաքականապէս : Իրօք ալ կը տեսնեմք որ նախ ինքն Ս. Գրիգոր Լուսաւորիչ՝ զայդ անկախութիւնն ի գործ դրած է՝ Նիկիոյ ժողովոյն վճիռները ի վերաքննութիւն առնլով , յոր կերպիւ իմն ակնարկութիւն է համառօտախօս պատմչին բանն · «Սուղ ինչ գլուխըս յինքենէ ի կանոնս ժողովոյ յաւել , վասն առաւել զգուշութեան իւրոյ վիճակին» · (Խոր. Բ , 90) : Սոյնպիսի ինչ ըրած է եւ մեծն Սահակ Եփեսոսի ժողովոյն նկատմամբ , ինչպէս կը մակաբերուի իւր թղթակցութիւններէն ընդ Եփեսոսական Հարս (1) : Եւ միթէ տարբե՞ր վարուած են եւ այլ եկեղեցիք՝ նոյն իսկ Տիեզերական ժողովոց նկատմամբ : Յիշեցինք վերեւ թէ ինչպէս Ս. ԿՊօլսի Տիեզերականն՝ վերաքննութեամբք ընդունուած է յԱրեւմտեայց · ո՞չ եւ Բ Նիկիոյ ժողովն (Է Տիեզերականն յ'787) երկար ընդդիմութիւններով եւ վէճերով ընդունուած է յԱրեւմուտս , յոմանց եւ իսպառ մերժուած : Ո՞չ եւ ինքն Լեւոն Ս. Պապ , ընդունելով հանդերձ զՔաղկեդոնի ժողովն , որոյ նախագահ էր իւր իսկ նուիրակն , յետոյ մերժեց իւր առանձին ժողովովն անոր ԻԸ կանոնն · (Տես վերեւ) :

(1) «Autonomie et séparation ne sont pas synonymes. Bien que le culte du particularisme ait parfois grandement uni à la conservation de l'unité chrétienne , on aurait tort de croire que cette unité est incompatible avec de légitimes diversités , exclusive de toute vie locale *organisée*» . L. Duchesne : Églises séparées. 1898.

Այս տեսութեանցս եզրակացութիւնն ուրեմն յայն կ՛ածէ զմեզ , որ Հայք նաեւ Քաղկեդոնեան ժողովոյն վրայ իրենց վերաքննութիւնն ընելու թէ իրաւունք ունէին եւ թէ պարտաւորութիւն , «ի զգուշութիւն իւրեանց վիճակին»· զի հնար էր, որ անյարմարութիւն մը ունենար , եւ կամ ,— ինչպէս տեսնուեցաւ այլուր ,— մինչեւ իսկ յուղումն յառաջ բերելու պատճառ ըլլար յԱզգին ։ Եւ զայդ օրինաւոր իրաւունքն ի գործ իսկ դրած կ՛երեւին , որով եւ կրնամք գուշակել թէ ի՛նչ եղած է իրենց ժողովոյն խորհրդածութիւնքն եւ որոշումն ։ Երբ ժողովոյն լուրը , հաւանականաբար նաեւ պաշտօնական Արձանագիրք՝ ժողովոյն կողմանէ հասան ի Հայս, մեր եռանդաշնորհ Հայրապետք ի ժողով գումարեցան ի քննութիւն, եւ նկատելով որ ժողովոյն գործն (որ էր Դիոսկորոսի ժողովոյն գործերը քննել) , բնաւ կարեւոր խնդիր մը չէր Հայոց համար , եւ հաւատոյ վարդապետութեան մասին (որ եղած էր ստիպմամբ Մարկիանոսի) նոր ինչ չէր բովանդակեր, այլ վերադարձութիւն էր նախորդ երից ժողովոց , եւ յաւելուած մասն ալ որ կայր՝ հանդերձ Լեւոնեան Տոմարաւ , հերքումն էին անծանօթ եւ աննշան Եւտիքէս անուն յոյն վանականի մը ցնորաբանութեանց , — որպիսի աղանդներ եւ հերքումներ այլ եւ այլ ժողովներէ շատ եւ շատ լսած էին , որ այդ դարերուն Հռոմոց ախորժակին նորաձեւութիւններն էին, նիւթեր էին, որ բնաւ զՀայոն ոչ կը շահագրգռէր , եւ ոչ օգուտ մը անկէ կրնար քաղել զայնս ընդունելով ։ Իսկ գալով Երկու բնութեան բանաձեւին փոփոխման , գուցէ ուշադրութեան անգամ չառին , եւ եթէ առին՝ լաւ եւս , քանզի ճիշդ նոյն դրից եւ պայմանաց մէջ կը գտնուէր նաեւ Հայաստան , յորում կը գտնուէին միւս Արեւելեան եկեղեցիք· այս ինքն՝ եթէ նոքա մեծին Կիւրղի զաւանդութիւնն ունէին , որում հաւատարիմ կ՛ուզէին մնալ , Հայք եւս ունէին իրենց մեծին Սահակայ աւանդութիւնը , որում եւ ինքեանք կ՛ուզէին հաւատարիմ մնալ · եւ եթէ նոքա ունէին զայն մեծ դժուարութիւնն , որ մօտակայ Նեստորականաց համաձայն պիտի գտնուէին մի բնութեան տեղ՝ երկու բնութիւն ընելով , ճիշդ մի եւ նոյն դժուարութեան մէջ էին նաեւ Հայք , գուցէ աւելի եւս , զի Նեստորականութիւնն ոչ միայն ի Միջագետս՝ իրենց ճիշդ դըրացի կից աշխարհին մէջ կեդրոնացած՝ զօրաւորագոյն մարմին մը կը կազմէր , այլ նաեւ ի Պարսս տարածուած էր , դարձեալ իրենց դըրակից (1) , — եւ ասոր վրայ կարեմք յաւելուլ նաեւ երկրորդ նման դժպատեհութիւն մը , պարսկական երկարմատեան կամ երկու աստուածութեանց կեղտը ,— նա որ դժբաղդաբար մուտ իսկ գտած էր յայն ժամանակս իրենց (Հայոց) սահմանաց մէջ ։ Հետեւապէս այս ամեն խորհրդ-

(1) Գուցէ մասամբ եւ Հայոց սահմանաց մէջ ։ Ստեփ. Ուռպելեան կը յիշատակէ Ս. Գրիգոր Մանաճիհր Դաժիկ անուն վանք մը Նեստորականաց , ի Զ դարու · (Ս. իբ) ։

գածութեանց առջեւ յի՞նչ յանգած կրնայ ըլլալ ժողովոյն վճիռն , եթէ ոչ բացարձակ լռութեամբ մը ծածկել խնդիրը, առանց աղմկի, առանց ինչ հակառակութեան , բնաւ ի հրապարակ չհանելով զայն ի լուր ժողովըրդեան, որ արդէն ունէր նա զիւր աւելի ծանր կրօնական խնդիրներ զբաղելու , եւ իրենք (Հայրապետք) դարձունել իրենց ուշադրութիւնը վերատին իրենց հօտին կարեւորագոյն խնամոց (1) ։ Կարծեմք այս էր եւ այս ըլլալու էր, ինչպէս բանական խելքը մեզ կը ցուցընէ ; Հայոց վերաքննող ժողովոյն վճիռն , այնպէս որ ոչ այնչափ զարմանալի պիտի երեւէր մեզ մերժելն, որչափ զարմանալի ընդունելն ։ Եւ արդարեւ այդ ծածկութեան նշան կը համարիմք մէկ կողմանէ՝ ժամանակակից պատմչաց (Փարպեցւոյն) եւ այլ ժամանակակից յիշատակարանաց բացարձակ լռութիւնը այդ ժողովոյն մասին , եւ միւս կողմանէ՝ խաղաղ ներդաշնակութեան շարունակութիւնն ընդ Յոյնս ։ Որպէս եւ է , եթէ յայտնի մերժուած ըլլար կամ յայտնի ընդունուած, Բաբգենեանց յետոյ մերժումն եւ նզովք աւելորդ կ'ըլլային եւ կամ ոչ հեշտին , ինչպէս եղած են ։

Սակայն այս խոհեմական խորհրդով ապահովեալ խաղաղութիւնն տեւեց ի Հայս , ցորչափ առանձին քաղաքական տագնապներ կային · բայց երբ սոքա փոքր ի շատէ իրենց հանդարտութիւնը գտան , սկսան տակաւ լսելի լինել այդ անդորրացեալ սահմանաց մէջ՝ արտաքին ալէկոծեալ ծովուն շառաչք , որ տակաւին դադրած չէին ։ Դժբաղդաբար անխուսափելի կ'ըլլար եւ Հայոց այդ յուզմանց մասնակցիլ, քանի որ, բաց ի Փոքր Հայոց, նաեւ Մեծին Հայոց արեւմտեան կողմանք Բիւզանդական իշխանութեան ներքոյ ընկած էին , եւ սկսան ընկնիլ ։ Այն դարական անվախճան վէճերուն մէջ , որոց նշանաւոր գլուխ մը կը կազմէր այս Քաղկեդոնեան ժողովոյն խնդիրն , եւ ի սկզբան ընդ Յունաց էր, ապա եւ ազգայնոց մէջ մտաւ , ուրիշ բան չեմք նկատեր , բայց զայն ինչ որ առ այլ ազգս տեղի ունեցաւ , այն է՝ նախ բանաձեւի հակաճառութիւն (2), ապա առ սակաւ սակաւ ի մոռացօնս դառնալով այդ բուն խընդրոյն իսկութիւնը, խնդիրն դարձաւ երկուստեք իրական վարդապետութեանց խորութիւն գնել ,— նկատումն կամ կարծիք, կ'ըսեմք, եւ ոչ

(1) Ուշադրութեան առնուելի պարագայ մի է , եթէ ստոյգ ըլլայ , Չամչեանի աւանդածն (Բ. 223) առնլով ի Գրիգորէ Տաթեւացւոյ, թէ Դիոսկորոս եւ նորա համախոհ Կիւրեղականք, ինչպէս Կնափեցին եւ այլք, թղթեր գրած են առ Հայս ։

(2) Նշանաւոր է առ այս Չամչեանի տեղ մը (Բ , 492) յառաջ բերած վկայութիւնն առնլով ի Պօղոսէ Տարօնացւոյ , թէ «Բաբգէն նզովեաց զասողսն երկու բնութիւն ի Քս. , եւ կարգեաց մի բնութիւնն» · որ նըշան մըն է որ այն առաջին ժամանակները նաեւ առ Հայս բանաձեւներու վրայ էր վէճը ։ Չամչեան կ'անհաւատի այս վկայութեան ստուգութեանը վրայ , այնու որ մի բնութիւն բառն աստ՝ ոչ իբրեւ բանաձեւ կը նկատէ , ինչպէս մեք , այլ իբր Եւտիքական մտաց բացատրութիւն մը , որ ուղիղ չէ ։

ինչ աւելի ։ Այս թիւր նկատողութեան ծագումն տուողն եւ սկզբնապատ-ճառ եղաւ դարձեալ նաեւ Հայոց նկատմամբ այդ Եւտիքական մակդիրն աննմանձար ստեղծումն , զոր հնարեր էին Քաղկեդոնականք , եւ ապա իրենք իսկ իրենց հնարեալ ստութեան հաւատալով , զՀայս եւս, որ մի բնութիւն կը դաւանէին , նոյն անուամբ մակագրեցին ։ Անգամ մը որ այս կարծիք կամ մակդիր հիմնուեցաւ , ալ ասպարէզ բացուեցաւ այդ Եւտիքական անուան՝ յարակից ուրիշ զարդարանաց անուններ ալ բար-դելու , ինչպէս Ապողինարեան (1) , Յուլիանեան , մինչեւ անգամ Աս-տուածաչարչարք ․ իսկ փոքր ինչ զգաստքն՝ Կէս-Եւտիքական կոչելով գո-հացան , թէ եւ սա բնաւ իմաստ մը չունենայ ։ Սակայն այս գոյն գոյն մականուանց համար զատ զատ ապացոյցք պէտք էին ․ ագէտ եւ գոռոզ մոլեռանդութեան այդ եւս չէր պակսեր ։ Չէ՞ որ Հայք սարօրինակ կեր-պիւ ( թէ եւ հնաւանդ սովորութիւն) զԾնունդն եւ զՄկրտութիւն ի մի-ասին կը տօնեն , եւ կամ անապակ բաժակաւ կը պատարագեն , ահա յայտնի փաստք , որ ի Քրիստոս մի բնութիւն կը դաւանին ըստ Եւտի-քէսի ․ — չէ՞ որ զՍբ. Ած․ն որ խաչեցարով կ'երգեն , ահա շօշափելի ապացոյց՝ որ զաստուածային բնութիւնն ի խաչ ելեալ կը դաւանին ըստ Ապողինարի (2) , — անտես ընելով սակայն այս վերջնոյն մէջ զայն նշանաւոր պարագայն , որ երբ իրենք իրօք Եւտիքական աննմանձար եւ անմիտ վարդապետութիւն մը կը նկատեն այդ որ խաչեցարին մէջ , կը մոռանան իրենց ետին , որ իրենք եւս (Քաղկեդոնիկք) զՍ․ Կոյսն Աստուածածին կը դաւանին , ապշութեան մէջ թողլով զՀայսն , որ եթէ կը ներուի Աստուած ծնեալ ըսել , ինչո՞ւ չներուի նաեւ Աստուած խա-չեալ, մեռեալ ըսել ։ Եւ զարմանալի , որ այս հակասական դատաստանը կը տեւէ խստիւ մինչեւ ցայսօր՝ նաեւ ի կողմանէ Հռոմայ, որ վերջերս՝ հուսկ ուրեմն իբր շնորհք շնորհելով մեր Հռոմէական ազգայնոց որ կա-րող ըլլան իրենց ազգային ծիսից փոքր ինչ աւելի մօտենալ , այդ ամե-նէն անմեղ որ խաչեցարն արգիլեալ մնացած է , իբր Եւտիքականու-թեան զարհուրելի ճիւաղ (Բղդ․ Նորատիպ Ժամագիրք Հռոմէականաց , ի Վենետիկ․ 1889) , — բայց առանց ուշադրութեան առնլոյ , որ այ-նու կերպ մը իրաւունք տրուած կ'ըլլայ Միբնութենականաց աղօտ կաս-կած մը ունենալու թէ Երկբնութենականքն իրօք գաղտ իմն միտումն ունին դէպ ի Նեստորականութեան խմորն ։

---

(1) Լիբերատոս՝ սարկաւագն Ափրիկեցի (Քաղկեդոնական) ի Զ դա-րու , յայտնի գայդ անունը կուտայ Հայոց ․ (Հաւնանոս․ Գլ․ Ժ) ։

(2) Բղդ․ Գալէմեան , (տպ․ Վիեննա․ 1878) էջ 18 , — որ եւ ինքն հաւատացող կ'երեւի այդ կարծեաց , «հերձուածագիւտ յաւելուած» կո-չելով զոր խաչեցարդ ։ Կ'երեւի որ ընդդէմ այսպիսի անգոսնողաց է Ե Տիեզերական ժողովոյն այս Ժ կանոնը ․ «Եթէ ոք ոչ խոստովանի զտէր մեր Յս․ Քս․, որ խաչեցաւ մարմնով , լինել Ած․ ճշմարիտ եւ տէր փա-ռաց եւ մի ի սրբոյ Երրորդութենէն , նզովեալ եղիցի» ։

Վերջապէս այս անիրաւ, սուտ, սխալ դատաստանք, արգելմունք, յորջորջմունք, անշուշտ իրենց ընդդիմաբախում (réaction) պիտի ընդունէին անդուստ. ոչ միայն ատելութեան եւ թշնամութեան ոգի գըրգռելով, այլ եւ յայտնի ցոյցերու ալ շարժելով. Նախահարց մեղմ եւ լըռիկ մերժման՝ յաջորդել յայտնաբարբառ մերժում եւ նզովում թէ Քաղկեդոնեան ժողովոյն եւ թէ Լեւոնեան Տոմարին, — իբր սկզբնապատճառք այդ իրենց կրած նախատանաց. — որք յիրաւի եթէ այլուստ անպարտ ըլլային, բայց այն տխուրթիւնն միայն, որ այդքան ատելութեանց եւ եղբայրատեցութեանց առիթ եղան յընդհանուրս, խորշելի կ'ընծայուի իրենց յիշատակը: — Իսկ այդ դարական մերժմանց, նզովից եւ ամենապղծի հակառակութեանց հանդէպ՝ զարմանալի չէ՞ նկատել որ Հայաստանեայց եկեղեցւոյ հաւատոյ վարդապետութիւնն, արդարեւ Քրիստոսի խոստացեալ վիմին վրայ հաստատեալ, անըստգիւտ եւ անարատ մնացած է ցարդ, հաւատարիմ իւր նախկին Եփեսոսեան վարդապետութեան ամենայն մասամբ, որում կրնան վկայել, — քան զոր կարծեմք անկասկածելի եւ անխարդախ վկայութիւն չկրնար ըլլալ, — այն այլ եւ այլ Հաւատոյ դաւանութիւնները, որ երկար դարուց ընթացքին մէջ յօրինեալ, այլ եւ այլ ատեն, այլ եւ այլ առթիւ, զանազան անձինքներէ, եթէ գիտնական եւ եթէ ոչ, եկեղեցական եւ կամ աշխարհական, ամենքն ալ ուղիղ վարդապետութիւն յայտարարած են. եւ այդ մասին զարմանք զմեզ կը շարժէ, որ զՀայոց Եկեղեցին՝ Եւտիքական, Հակաքաղկեդոնական, եւ վերջապէս՝ հերետիկոս անուանող բարեկամք, այդ նշանաւոր կէտին, որ կարծեմք՝ բաւական բան մը կը նշանակէ, բնաւ ոչ ուշ դրած են, եւ ոչ ըստ այնմ՝ չափ իրենց լեզուին (1):

∴

Ժամանեցինք հուսկ ուրեմն յաւարտ մեր բանից, յոր իբր քննադատական ուսումնասիրութիւն պարապեցանք ըստ պատահման: Թէ երեւակայական աշխարհի մէջ շըջագայած եղանք, զայն ընդդիմադիր պատասխան մը միայն կրնայ յայտնել: Հանդերձ այսու, մեք մեզէն ոչ

(1) Գաթրճեան Հայրն յիւրում Հանգանակ հաւատոյ մասնին մէջ (Վիեննա, 1891). այդ դաւանութիւններէն զմին ի մէջ բերելով, ի Տրեւդերէ առեալ (Գանձ Առաքեան ցեղուի), եւ ուղղափառ վարդապետութեան դէմ բան մը չգտնելով, բայց միայն մի բնութեան բանաձեւին հետքը (որ նշանական է), զայս խորհրդածութիւնն կ'ընէ. «Այդ քրիստոնէական հաւատոյ դաւանութիւնը նոր ատենուան գործ մ է. այսինքն ԺԴ դարուն կէսերը Տաթեւացեաց դպրոցին խմբագրուած, որոնք անհաշտելի թշնամիք էին Կաթողիկէ միութեան, եւ պաշտպան միաբնական մոլորութեան բանիւ եւ գրով: Ան ձեւը «միաւորեալ մի բնութիւն», այդ դպրոցին նշանաբանն է»․ (էջ 41): Ցուցամք որ այսուհետեւ զկնի մեր այս տեսութեանց, այդ ամեն [illegible]երանք յօդս կ'ելնին:

առանց շրջահայեաց զգուշութեանց առինք մեր իւրաքանչիւր քայլերը· եւ եթէ այդ երկչոտութեան հետ՝ միանգամայն խրախոյս չպակսեցաւ մեզ այս նոր եւ անկոխ արահետին մէջ (1), այն էր որ մեր յառաջադէմ քայլերուն բնաւ խոչընդոտ չհանդիպեցաւ զմեզ կասեցունող կամ ընկրկող. նա ընդհակառակն՝ մի եւ նոյն ժամանակ քննելով նաեւ ընդդիմադիր կողման, կամ հին կարծեաց պարագայները, նշմարեցինք տեսանք անոնց ճամբուն վրայ եղած անհագին տափափայները, եւ զարմանք եղաւ մեզ թէ ինչպիսի՛ կորովի արծուեղէն թեւօք օդաթռիչ կըտրեր անցեր են անոնց վրայէն։

Իսկ զի մեր այս աշխատութիւնը բուն նպատակ ունէր լուծում տալ Մխիթարայ վարուց կենսագրին տարակուսանաց, դարձունելով առ նա ուրեմն մեր վերջին խօսքը, կը յուսամք կ՚ըսեմք որ մեր էջերը կարդալով՝ այլ եւս հակասական չերեւիր թէ ի՛նչպէս Հայաստանեայց Եկեղեցին ուղիղ վարդապետութեան մէջ ըլլալով, կրնար մերժած ըլլալ զՔաղկեդոն եւ զԼեւոն շատ օրինաւորապէս, եւ թէ այդ մերժում ոչ թիւրիմացութիւն էր եւ ոչ տգիտութիւն, այլ ճիշդ այն երրորդն, զոր ինքն Ցարդ. կենսագիրն խորշած է անուանելէ շատ ծանր բառ նկատելով, բայց մեք կրցանք կարդալ, եւ չեմք խորշիր անուանելէ, այն է յամառութիւն· զի բնաւ ծանր չթուիր մեզ այդ բառը. եւ կարելի էր զայն համարձակ անուանել, միայն նորա ճշդագոյն համանիշ բառովն. որ է Հաստատամտութիւն. այս ինքն՝ այն ազգային ոգին, որ է պինդ· ամուր եւ հաւատարիմ մնալ եւ պահպանել կը սիրէ հայրենատուր աւանդութիւնները, թէ եւ անոնց նշանակութիւնը երբեմն կորսուած ըլլայ։ Ո՞չ այդ վեհ եւ գովելի ոգին է, որով ցարդ նոյն Ազգն պահպանած է ոչ զՄի բնութիւնն միայն, այլ շատ աւելի յարգելի հնութեանց հետ, նաեւ զանգինն՝ զիւր Քրիստոնէական կրօնքն, դիւցազնաբար, ժայռի պէս ամուր եւ անխախտ մնալով անշարժ՝ կատաղագոյն իսկ ալեաց եւ մրրկաց դէմ, Քրիստոնէական աշխարհին վերջին ծայր սահմանաց վրայ կալով՝ իբր պահանորդ զինուոր մը։

---

(1) «Թող կարդան անաչառութեամբ Հարնաքի, Լոֆսի, Վայցզէկէրի եւ այլոց հետազօտութիւնները, եւ այն ժամանակ կը համոզուին, թէ Հայք իրաւամբ ընդդիմացած են Քաղկեդոնի ժողովոյն», ըսած է Մուրճ, չեմք յիշեր ո՞ր թուականին։ Մասամբ կը ցաւիմք որ մատչելի եղած չեն այդ մատեանք մեզ անծանօթք, կամ գուցէ ուրիշ ճանապարհաւ մի եւ նոյն եզրակացութեան կը հանդիպիմք, որ ստուգութեանց հզօր ապացոյցներէն մին է։

# ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ

*Գրեց՝ ռուս պատմաբան Վ. Գօտտօ*

*Ռուսերէնից թարգմանեց՝ Գ. Գ.*



*(Արտատպ. « Բանասէր » հանդէսից)*

ՊԱՐԻՍ

**1904**

*Գինն է՝* 25 *կոպէկ* = 65 *սանտիմ*



ՆԵՐՍԷՍ Ե. ԱՇՏԱՐԱԿԵՑԻ

# ՎԵՐԱԾՆՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ (*)

---

Այն օրից, երբ Հայաստանը վերջնականապէս կորցրեց իւր քաղաքական անկախութիւնը, չդադարեցան չարունակ նորա միջից հայրենի կրօնի եւ ազգութեան համար եղած մշտատանջ եւ դարեւոր պատերազմները։

Բնական էր, ուրեմն, որ այդ սակաւաթիւ ազգը գեգերուած եւ նեղուած իւր շրջակայ անհամար մահմետական ցեղերի ձեռքին, զգար եւ խոստովանէր, թէ անհրաժեշտ է իւրեան կապել իւր գոյութիւնը մի քրիստոնեայ հզօր ազգութեան կեանքի հետ։

Բայց ոչ մի տեղից օգնութիւն սպասել կարելի չէր։ Արեւելքից, հարաւից եւ արեւմուտքից մահմետական ցեղերն էին ամուր պատնէշի նման բաժանել նորան քրիստոնեայ աշխարհից. հիւսիսումը իւր նման տառապում էր քրիստոնեայ Վրաստանը, ույժ չունենալով դիմադրել չարունակ յարձակմունքներին. եւ միայն Կովկասեան շղթաների միւս կողմը գտնուում էր մի զօրեղ տէրութիւն, որ սասանեցրել էր Թաթարներին եւ իւր իշխանութիւնը տարածել էր մինչեւ Վօլգայ մեծ գետի բերանը, մինչեւ Կասպից ծովի ափները։ Այդ իսկ պատճառաւ Հայաստանի աչքը ձգտում եւ յառում է դէպի հիւսիս։

Հայերը շատ վաղուց էին վաճառականական յարաբերութիւն սկսել Մոսկվայի տէրութեան հետ, դարերի հետ յառաջանում էին նորանոր խաղաղութեան դաշինքներ երկու ազգերի մէջ — նորանոր արտօնութիւններ, որ Ռուսաց թագաւորները շնորհում էին հեռաւոր հարաւի այս վաճառաշահ ազգին։ Ալէքսէյ Միխայլովիչ թագաւորի օրերը նշա-

---

(*) Կովկասեան պատերազմ. հեղինակութիւն Վ. Պոտտօյի. հատոր Գ. Պարսկական պատերազմ 1826—28, Դ. գիրք, Ս.Պետեր. 1882 ամ.

*նաւոր եղան Հայերի համար Թանկագին մի կարգ հրովարտակներով եւ արքունի հրամաններով, որոնցով եւ ամրացաւ Հայերի բարոյական եւ նիւթական կապը Ռուս ազգի հետ։*

*Մեծն Պետրոս առաջինը քաղաքական տեսակէտից աչք դարձրեց Հայերի վերայ, նորա հանճարը նախատեսեց Ռուսաստանի ապագայ դերը Հայ ազգի վիճակը անօրինելու։ Եւ ահա այս իսկ րոպէից սկսում է Ռուսաց Թագաւորների եռանդուն քաղաքականութիւնը Հայոց աշխարհի վերաբերութեամբ։*

*Դեռ Դերբէնդի պատերազմից շատ յառաջ Ղարաբաղի մէլիքներից մի քանի պատգամաւորութիւններ դիմում են Պետրոսին նորա պաշտպանութիւնը խնդրելու։ Նոքա միաձայն հաւատացնում էին, թէ Ռուսաց զօրքն իւրեանց մօտենալուն պէս Հայ աւագանիքը զօրաժողով կանեն նախիջեւանումը եւ Թագաւորական դրօշակը վերցրած՝ 24 ժամի մէջ կը հալածեն անհաւատներին, իսկ 15 օրուայ մէջ կտիրեն ամբողջ աշխարհքին։ Երեւանն առնելն այն ժամանակ շատ հեշտ կը լինի, հաստատում էին նոքա, որովհետեւ այնտեղ մեծ բազմութիւն կայ Հայերի եւ նոցա ձեռքին է վառօդի պահեստն եւ ուրիշ պաշարները։ Վերջապէս ասում էին, Հայաստանը կարող է մինչեւ 116000 զօրք դուրս բերել, ըստ որում Թուրքահայերն էլ օգնութիւն կհասնեն պարսկահայերին։*

*Այն օրից, երբ Դերբէնդը նուաճուեց Ռուսաց սրի տակ եւ Ռուսական բանակը պատրաստուեցաւ տիրել Պարսկաստանի հիւսիսային գաւառներին, կարծես թէ Հայի ազատութեան արշալոյսը աւելի փայլուն եւ լուսաւոր ճառագայթներ սկսեց արձակել։*

*Արդէն 12000 Հայեր Ղարաբաղի մէլիքների առաջնորդութեամբ եւ 30000 Վրացիք իւրեանց Վախթանգ Թագաւորի հետ միասին պատրաստ սպասում էին Գանձակումը Ռուսաց Թագաւորի հրամանները կատարելու։*

*Հրճուում էր այս քրիստոնեայ բանակը, նոցա կարծիքով աներկբայ եկել հասել էր պարսկական լծից իւրեանց ազատութեան ժամը։ Սակայն կայծակի հարուածից աւելի խիստ հնչեցաւ նոցա ականջին այն բօթաբեր լուրը, թէ Պետրոսը չը վերջացրած իւր սկսած գործը՝ վերադառնում է Կովկասից։ Ինչպէս Հայոց Եսայի մետրապօլիտը վկայում է, նոքա հաւատ ընծայել չէին կամենում այդ լրին եւ չէին էլ կարողանում հասկանալ, թէ ի՞նչ պատահեցաւ. ոմանք ասում էին, թէ Ռուսները տկարացան եւ վերադարձան, այլք՝ թէ սաստիկ շոգից նոցա հեծելազօրքի ձիանքը կոտորուեցան, միւսները՝ թէ ծովումն ալեկոծութիւն է պատահել եւ Թնդանօթաձիգ զօրքը իւր պաշարով ջրասոյզ է եղել։*

*Դերբենդից Պետրոսի անակընկալ վերադարձը խորին վիշտ պատճառեց հայ եւ վրացի զօրքերին, նոցա եռանդը մեռաւ։ Վախթանգն իւր բանակովը յետ եկաւ, շատ չը քաշեց Լեզգիները պաշարեցին Տփխի-*

անառիկ ամրոցներում՝ մի քանի տարիներ տոկուն դիմադրութեամբ սարսափելի պատերազմներ մղեցին ազատութեան համար Տաճկաց, Պարսկաց եւ լեռնական լեզգի հրոսակների դէմ։

Պետրոսի յուսով Հայոց սկսած այս պատերազմը, թէեւ Պետրոսից պաշտպանութիւն չը գտաւ, սակայն սկիզբը դարձաւ նոցա համար անկախութիւն ձեռք բերելու անվերջ փորձերին։

Անդրկովկասի քրիստոնեայ ազգաբնակութիւնների համար մի ծանր հարուած եղաւ այն, որ Պետրոսը Տաճկաց հետ կապած պայմանին համաձայն իւրեան սեպհականեց միայն Կասպեան ափունքը, իսկ Հայոց եւ Վրաց բոլոր գաւառները թողեց Տաճկական Բարձրագոյն Դրանը, որն ի հարկէ ամենայն իրաւամբ, գրգռուած էր քրիստոնէից դէմ դէպի Ռուսաստանը նոցա տածած համակրութեան համար։

Թշուառութեան ամպերը կուտակուել էին չարաբաստիկ աշխարհի գլխին։ Ռուսաստանը չէր կարողանում զէնքով նորան օգնել։ Դեռ նորա հզօր զօրութիւնը ընդարձակելու ժամը չէր հասել. դեռ այդ ժամանակն նա ինքն էլ նոր էր սկսում ամրապնդուել. բայց եւ այնպէս Հայ ազգի վիճակն ըստ առաջնոյն անմոռանալի էր կայսեր սրտին, եւ նա բաց արեց լայն եւ արձակ իւր կայսրութեան դռները հայ գաղթականութեան առաջին։

Ռուսները տիրելով Դերբէնդին, Բագուին, Աստրաբատին, Գիլանին եւ Մազանդարանին պէտք է հոգային որպէս զի իւրեանց ձեռք բերած այս երկիրները պինդ պահպանեն նիւթական բարօրութեան արդիւնքներով եւ խաղաղ գործունէութեան պտուղներով, եւ ահա այս վսեմ սկզբունքը դարձաւ Պետրոսի ապագայ քաղաքական ծրագրի հիմունքը. եւ նա ամենայն ջանք ի գործ դրեց քաշել Հայերին դէպի այս երկիրները։ Ահա ի՞նչ է գրում Պետրոսը Մատիւշկինին՝ նոր տիրապետած երկիրներում մարդաբնակութիւնն աւելացնելու համար. «Ամենայն կերպիւ աշխատեցէք հրաւիրել Հայերին, իսկ մուսուլմանների թիւը, որքան հնար է, պակասեցնել, բայց այնպէս գաղտնի միջոցներով, որ իւրեանք ոչինչ չհասկանան։

Եւ ահա ի հրաւէր Պետրոսի հարիւրաւոր Հայեր ձգտում են դէպի Գիլան եւ Սուրբ Խաչի բերդը։

Գրում էր Պետրոսն իւր մերձաւորներին, որ նոր գաղթածներին ամենատեսակ արտօնութիւններ շնորհեն, ամենալաւ հողերը, ուր նոքա ցանկանան, նորանց յատկացնեն, հարստահարութիւններից եւ ճնշումներից պաշտպանեն. — «ըստ որում — գրում է մեծ կայսրը — մենք ընդունել ենք այդ Հայ ազգին մեր կայսերական առանձին ողորմածութեան եւ հովանաւորութեան ներքոյ։»

Առհասարակ այն ժամանակուան բոլոր վկայագրերի մէջ պարզ արտայայտւում է Պետրոսի հայեացքը, թէ ի՞նչ օգուտ էր սպասում նա

խելացի եւ վաճառաշահ Հայ ազգին ռուսաց կայսրութեան մէջ վերաբնակեցնելուց ։

Առաջին անգամի գաղթականներից 700 մարդոց չափ անմիջապէս մտան Ռուսաց զինուորական ծառայութեան մէջ եւ կազմեցին երկու առանձին գնդեր, Հայերը՝ Դրագունի եւ Վրացիք՝ Հուսարի գունդը ։

Բայց այն ինչ Հայոց մի աննշան մասը ապաստան էր գտել Ռուսաց սահմաններումը, ամբողջ ազգաբնակութիւնը հեծում էր նեղութեան մէջ․ նորա ուժից վեր էր կռուել մահմետականութեան հետ եւ նա օգնութիւն էր խնդրում ։ «Մինչեւ ցայսօր, գրում են Հայերը Պետրոսին, չորս կողմից շրջապատուած լինելով թշնամիներով, մենք պաշտպանուում էինք, որքան մեր ոյժը ներում էր, իսկ այժմ Տաճիկները մեծ զօրքով եկել տիրել են պարսկական շատ քաղաքների․ ․ ․»

Դժբաղդաբար այս վերջին պատգամաւորութիւնը կենդանի չըգտաւ Ռուսաց հանճարեղ կայսերը ։

Պետրոսի յաջորդների անխստահ քաղաքականութեան շնորհիւ Հայ ազգի վիճակն աւելի դառնացաւ ։

Ֆելդմարշալ իշխան Դօլգորուկովն ինքն է վկայում այն արիական ճակատամարտների մասին, որ մի ժամանակ ունեցան Հայերը Տաճկաց, Պարսից եւ լեռնականաց հետ ։ Այդ մի հերոսական պատերազմ էր ։ Մի բուռը Հայեր ութն օր շարունակ դիմադրում էին սարասկեար Սարի-Մուստաֆայի 10000 տաճկական արիւնռուշտ բանակին ։

Նոյն Դօլգորուկովն իւր զեկուցագրի մէջ աւելացնում է, թէ Հայերը պահանջում են շօշափելի եւ իրական օգնութիւն զէնքի զօրութեամբ, եւ եթէ այժմէն իսկ այդ օգնութիւնը նոցա զլացուի եւ չը տրուի, արդէն ուշ կը լինի ապագայումը գրաւել նոցա մեր կողմը ։

Եթէ քաջեռանդն իշխան Դօլգորուկովը մնար Կովկասումը, շատ կարելի է այս երկրի վիճակն այլապէս տնօրինուէր ։

Բայց Դօլգորուկովն ընկաւ․ կայսրուհի Աննա Յովհաննովնեան անուշադիր թողնելով պաշտպանելու Մեծն Պետրոսի նպատակի իրագործումը, վճռում է միանգամայն ձեռնաթող անել նորա նուաճած երկիրները ։

Ռուսաց զօրքը նահանջում է դէպի Թերեքի ափունքը, իսկ Հայերը կրկին Տաճիկների ձեռքից ընկնում են Պարսից իշխանութեան ներքոյ ։

Նոր տիրապետողների երկիւղը ստիպում է շատ Հայերի Ղարաբաղի սքանչելի բնութիւնը, նոցա օդն ու ջուրը փոխել Թերեքի ճահճային ափերի հետ ։ Այն տեղ են ձգտում անմիջապէս զօրքի ետեւից նոքա եւս, որոնք բնակութիւն էին հաստատել Գիլանումն եւ Սուրբ Խաչի մերձումը ։

*Այսպիսով է ահա կազմակերպւում Ղզլարի Հայ գաղթականութիւնը Թերեքի ափին։*

*Գուցէ չափազանց կաւելանար գաղթականների թիւը, եթէ կայսրուհի Աննա Յովհաննովնան ի հաճոյս Նադիր Շահի մի հրովարտակ չհրատարակէր 1734 թուի, մայիսի 29ին, որով ի նշան բարեկամութեան առ Շահն եւ բարեհաճութեան առ Պարսից ազգն հրամայում էր, Պարսկաստանից դուրս եկած բոլոր Վրացիներին, Հայերին եւ ուրիշ օտարազգիներին վերադարձնել կրկին Շահին, — մինչեւ անգամ նոցա եւս, որոնք վերադառնալու ցանկութիւն չունէին։*

*Եւ թէպէտ կայսրուհի Աննայի կառավարութեան այս անբացատրելի սխալմունքը մի քանի տարուց յետոյ փոքր ի շատէ ուղղուեցաւ մի առանձին հրովարտակի շնորհիւ, որով արգելւում էր ռուսահպատակութիւն ընդունող Հայերին Պարսիկներին յանձնելու, բայց առաջին կարգադրութեան տպաւորութիւնը երկար ժամանակ չէր ջնջւում հայ մտքերից։*

*Այսպէս թէ այնպէս, Հայերի յուսոյ միակ յենակէտը, այնուամենայնիւ, Ռուսաստանը պէտք է լինէր. նա միայն իւր հովանաւորութեամբ կարող էր պաշտպան հանդիսանալ հայ շահերին։*

*Եւ ահա մի քանի տարուց յետոյ 1760 թուին Անգլիայից Ս. Պետերբուրգ է գալիս Էմին Յովսեփեան անուամբ հարուստ Հայը, որ Հնդկաստանում ահագին միլիոններ էր դիզել։ Նա խնդրում էր օգնել Հայերին իւրեանց անկախութիւնը ձեռք բերելու, իսկ այս բանի համար առաջարկում էր իւր ամբողջ կարողութիւնը։*

*Բայց կայսրուհու կառավարութիւնը նպատակ չունէր այդ ժամանակ Կովկասի գործերում էապէս խառնուելու։ Այդպիսով Էմինի առաջարկութիւնը համակրութիւն չը գտաւ։*

*Այս վիճակի մէջ մնացին գործերը մինչեւ մեծն Եկատարինէի թագաւորելը։*

*Նորա ժամանակ, երբ հարաւային Ռուսաստանի ընդարձակ ամայի դաշտերը մարդաբնակութեամբ լցուեցան, Կովկասի այս կողմը (դէպի Ռուսաստան) հաստատւում է հայկական գաղթականութիւն. ուր հիմնւում է մի նշանաւոր քաղաք. որ վերակենդանութիւն է տալիս այն սակաւամարդ անապատ երկրին։ Այդ ժամանակն էր, որ 20000 Հայեր բարձի թողի արած տաճկական Ղրիմը գալիս են Դոնի եզերքը։*

*Արժան չը նստաւ Հայերին այս գաղթականութիւնը, ահագին կորուստ, զրկանք եւ զոհողութիւններ բաժին ընկաւ նորանց։*

*Երկու շարունակ տարիներ թափառում են Հայ գաղթականները վրանների տակ Սամարայի եւ Եկատարինոսլաւի շրջակայքում համբերութեամբ տանելով ցուրտը, տօթը եւ քաղցը. Նորանցից շատերը չը դիմացան թափառականութեան ծանր հարուածներին եւ մեռան՝ աղեկէզ*

սրտիւ. յիշելով իւրեանց հայրենի Ղրիմը, նորա վանքերն ու եկեղեցիները. իսկ միացածներն այնու ամենայնիւ հաստատուն քայլերով դիմեցին դէպի իւրեանց նպատակը եւ վերջապէս Դօն գետի ափին հիմնեցին Նախիջեւան քաղաքը, ուր կառավարութիւնը անխնայ շռայլեց նորանց արտօնութիւններ, օգուտներ եւ իրաւունքներ։

Բայց օգուտներից եւ արտօնութիւններից առաւել Հայերին գրաւում էր մի յոյս, բարոյապէս հանգստութեան մի յոյս, մի կրօնական ազատութիւն եւ քրիստոնեայ պետութեան մէջ կառավարչական հաստատուն օրէնքներով իւրեանց շահերին պաշտպանութիւն. — ահա՛ ինչ յոյս էր, որ նոցա քարշում էր։

Ճիշդ այդ միջոցումը Եկատարինան, կարծես, կամելով վերակենդանացնել Պետրոսի գաղափարը, դարձնում է իւր ուշքը դէպի Անդրկովկաս։

1783 թուին Ռուսաց զօրքը գրաւում է Վրաստանը եւ այն օրից նա դառնում է Ռուսաստանի աւատական թագաւորութիւն։

Այդ ժամանակն ահա ծրագիրներ են կազմւում Հայաստանի ազատութեան համար եւ ամենահզօրն Պօտեմկին սկսում է ջերմ հաղորդակցութիւններ շարունակել Հայոց Յովսէփ Արք. Եպիսկոպոսի հետ. Ասիայումը Հայաստանը մի հզօր քրիստոնեայ տէրութիւն դարձնելու մասին՝ Ռուսաց բարձրագոյն հովանաւորութեան ներքոյ։

Այսպէս նորից Հայոց խնդիրը ասպարէզի վերայ է դրւում։

Պաշտօնական շատ փաստերով ապացուցուած տեղեկութիւններ կան, որ ինքն իշխան Պօտեմկինը ձգտում էր թագաւորել վերածնած Հայաստանին, որը սահմանակից պէտք է լինէր Պարսկաստանին, Տաճկաստանին եւ Ռուսաստանին եւ ունենար Կասպից ծովումն իւր նաւահանգիստը։

Արդէն արտասահմանումը — Հնդկաստանում եւ Չինաստանում՝ նա ոսկեզօծ ամանեղէններ էր պատրաստել տուել հայ թագաւորական զինանշաններով(*)։

Այն միջոցում տպագրուած Հայոց գրքերի վերայ տպւում էին հայ թագաւորաց դրօշները։

Յովսէփ Արք. Եպիսկոպոսը նամակներ գրում էր Էջմիածնի Կաթուղիկոսին եւ շատ երեւելի հայերին ուրախ լինել եւ Աստուծուն փառք տալ. նա աղօտ կերպիւ մատնացոյց էր անում մի նշանաւոր փոփոխութեան վերայ, որ պատրաստւում էր Հայերի համար՝ մեծահռչակ Հիւսիսի հոգատարութեան շնորհիւ։

Բանը նորանումն է, որ Յովսէփ Արք. Եպիսկոպոսին առաջարկեցին

---

(*) Մի այդպիսի յախճապակեայ սափոր հայ դրօշը վերան՝ պահւում է Տփխիսի Թանգարանում։

*հազմել այն դաշնագրի ծրագիրը, որ պէտք է կապուէր Նախապէս Ռուսաց կայսերական եւ Հայ ազգի մէջ։*

*Այս հետաքրքիր դոկումենտի մէջ առաջին տեղը բռնում էր Հայ եկեղեցւոյ լիակատար անկախութիւնն եւ ազատութիւնը եւ Հայաստանի ընտրեալ թագաւորը — լինէր նա Հայ, թէ կայսրուհու մերձաւոր անձնուէրներից մէկը — պարտաւորւում էր դաւանել հայ կրօնը եւ պահպանել հայ օրէնքները։*

*Թագաւորի թագադրութիւնը առաջարկւում էր կատարել Ս. Էջմիածնի մէջ, ըստ օրինաց Հայոց Նախկին թագաւորաց։*

*Մայրաքաղաք որոշւում էր Անին կամ Էջմիածինը։ Հայ թագաւորութեան դրօշը պէտք է կազմուէր Հայոց Նախկին երեք դրօշներից՝ այն է՝ Արշակունեաց միագլուխ արծիւը, քրիստոնէութեան ժամանակի Գառն Աստուծոյ եւ Փոքր Հայոց երկու առիւծները։*

*Ի յիշատակ Հայաստանում տեղի ունեցած երեք փառաւոր պատմական դէպքերի, Հայաստանում հաստատւում էր երեք շքանշան, առաջինը՝ Նոյեան տապանի անունով՝ ծիածանին նմանեցրած երեք գոյնով — կարմիր, կանաչ եւ կապոյտ, երկրորդը սուրբ Գրիգոր Լուսաւորչի անունով եւ երրորդն՝ ի պատիւ Փրկչական անձեռագործ դաստառակի։*

*Քաղաքականապէս տնօրինւում էր, որ Հայաստանը գտնուի Ռուսաստանի հովանաւորութեան ներքոյ։ Մի փոքրաթիւ ռուսական բանակ պէտք է մնար Հայաստանի մէջ՝ նորա սահմանները Տաճկաց եւ Պարսից արշաւանքներից պաշտպանելու աղագաւ, իսկ Հայ թագաւորների որդկերանցից մէկը մնալու էր շարունակ կայսեր պալատումը։ Հայոց թագաւորութիւնը պարտաւորւում էր իւր հանքերից արտահանած ոսկուց եւ արծաթից մի որոշ մասն յատկացնել Ռուսաստանին։ Պատերազմական դէպքերում երկու պետութիւններն եւս պարտական էին միմեանց օգնութիւն տալ։*

*Այս դաշնագրութեան մի ամենահետաքրքիր յօդուածն այն էր, որ, Հայերը պահանջում էին, որ իւրեանց աշխարհի մէջ ստրկութիւն չըներս մտնէր, ինչպէս իւրեանց ազգային բնաւորութեան մի տարօրինակ եւ հակառակ երեւոյթ։ Այս մասին նոքա մատնացոյց էին անում իւրեանց պատմութիւնից այն դէպքը, որ երբ Յոյները տիրելով Հայաստանին կամեցան Հայերից ստրուկներ տակ իւրեանց իշխաններին, Հայերը թողին նորանց եւ մտան Բաղդատու խալիֆների հպատակութեան ներքոյ, առաւել գերադաս համարելով խալիֆների ծանր քաղաքական ճնշումները իւրեանց ներքին ընտանեկան ազատութեան կորստից։*

*Այս ծրագիրն իրագործելու համար մեծ զօրութիւն եւ դրամական ոյժ էր հարկաւոր. միակ յոյսը բնականապէս Էմին Յովսէփեանի առաջարկութիւնն էր, որ մի քանի տարի առաջ նուիրում էր իւր միլիոնները Հայաստանի ազատութեան գործին։ Սակայն Էմինը կենդանի չէր*

այժմ եւ նորա հարստութիւնը ժառանգական ցեղը վերջանալու օրէնքին համաձայն մնացել էր Օստ-ինդիական բանկին։

Այս անգամին եւս գտնուեցաւ ոմն Շամիր-խան՝ նոյնպէս Հնդկահայ, որ իւր լիքը քսակը առաջարկեց Հայաստանին։ Սակայն ըստ նորա կարծեաց պատերազմ սկսելու կարիք չը կար, հարկաւոր էր ոսկեով գնել Հայաստանը Տաճկաստանից եւ Պարսկաստանից։

Այս մեծահարուստ անձը առաջարկում էր Բօրչալուում, Լօռում եւ Երեւանի նահանգում մշակել լեղակ, շաքարի եղէգն, բամբակ եւ սուրճ, հիմնել գործարաններ եւ այդպիսով դարերով աւեր եւ քարուքանդ աշխարհին միանգամից վերակենդանութիւն տալ։

Ուրեմն դրամագլուխն ի նկատի եւ պատրաստ էր եւ մնում էր գործ սկսելը։

Վճռուեցաւ սկսել Ղարաբաղի խանութիւնից — այն է՝ գահավէժ անել Իպրահիմ խանին եւ նորա տեղը հայ կառավարիչ կարգել։ Բուն ձեռնարկութիւնը դիտաւորութիւն կար սկսել առաջիկայ 1784 թուի ամառը եւ զօրքն արդէն պատրաստւում էր։

Բայց այն ինչ ծրագիրը դրւում էր եւ իրագործութեան պատրաստութիւններ տեսնւում էին, քաղաքական հանգամանքները խիստ խճճուեցան։

Օմմար խանը աւերում է Վրաստանը, չը նայելով որ Ռուսաց զօրքն այդ ժամանակ նստած էր այն տեղ եւ պատրաստւում է դիմել Ղարաբաղի վերայ։ Ռուսաստանն այդ միջոցումն երկրորդ Տաճկական պատերազմն է սկսում եւ էլ հնարաւորութիւն չի ունենում Վրաստանը պաշտպանելու։

Հայաստանը նորից բարձի թողի մատնւում է իւր ճակատագրին եւ իւր ձգտումների համար ենթարկւում է վրէժխնդրութեան հարուածներին։ Պարսիկներն ու Ղարաբաղի Իբրահիմ խանը սարսափելի հալածանքներ եւ բռնութիւններ են գործ դնում Հայերի դէմ։ Հայաստանը նորից արիւնաշաղախ է լինում, Ռուսաստանին հաւատարիմ եւ անձնուէր մնացած բոլոր մելիքները կոտորւում եւ իսպառ ջնջւում են եւ մի քանիսին միայն յաջողւում է փախչել Տփխիս Հերակլ թագաւորի մօտ։

Ոչ Հայերն եւ ոչ Ռուսաց կառավարութիւնը չէին կարողանում այնու ամենայնիւ հրաժարուել այն նուիրական գաղափարից, այն նպատակից, որ պատմական հանգամանքների ընթացքներն ստեղծել էին եւ Մեծն Պետրոսը նախատեսել էր։

1796 թուին պարսկական պատերազմից յառաջ գլխաւոր հրամանատար կոմս Զուբովի անունով գրուած հրովարտակում (rкuhrhys) ասուած է, թէ Ռուսաստանը զէնք է բարձրացնում հնադարեան քրիստոնեայ Հայ եւ Վրաց թագաւորութիւնների ազատութեան համար։ Բայց, ինչպէս յայտնի է, այս փառաւոր պատերազմը նոյնպէս անյաջող վախճան ու-

նեցաւ։ Պաւլոս կայսրը՝ անակընկալ կերպիւ յետ կոչեց իւր զօրքերը եւ Եկատարինէի բոլոր ծրագրերը, որոնք այս ձեռնարկութեան հիմունքներն էին կազմում, միանգամից հող ու մոխիր կտրուեցան։ Ռուսաց զօրքը նորից բարձի թողի արեց Անդրկովկասը եւ այս անգամ այս երկիրն Աղայ Մահմադ խանի բարբարոսութեանցն ուղղակի զոհ անելու համար։ Անկարծիք Լանգթամուրեան ոչ մի աւերածութիւնները չէին կարող հաւասարուել այն սարսափելի արիւնհեղութիւններին, որ Աղայ Մահմադ Շահը պատրաստում էր Հայաստանի գլխին թափելու, եթէ մարդասպանի սուրը 1797 թուի ամառը վերջ չը դնէր նորա արիւնածարաւ մտադրութիւններին։

Բայց, ինչպէս մօտիկ անցեալի փաստերը ցոյց են տալիս, երեք չորս տարի անցնելուց յետոյ այսպիսի վսեմ եւ դժուարալուծելի խնդրի կէտն ինքն ըստ ինքեան ի գլուխ եկաւ — Վրաց թագաւորութիւնը Գէօրգի թագաւորի մահից յետոյ միացաւ Ռուսաստանի հետ։

Այս հանգամանքը մօտեցրեց Հայաստանի ազատութիւնը, բայց միայն արմատից փոփոխութեան ենթարկելով նախկին ծրագիրները։ Այժմ Ռուսաց իշխանութեան տակ մի աւատական ինքնուրոյն թագաւորութիւն հաստատել եւ այն Ռուսաստանին միացած Վրաստանին սահմանակից, այդ մասին մտածելն անգամ աւելորդ էր։

Բուն Վրաստանում Ռուսաստանի հետ միանալու ժամանակը Հայերի թիւը համեմատաբար մեծ չէր, բայց յետոյ սկսեց արագապէս աճել եւ բազմանալ։

Իշխան Ցիցիանովի օրովը, չը նայելով որ այս նշանաւոր անձնաւորութիւնը մի առանձին մեծ ատելութիւն էր զգում դէպի Հայերը, նրանցից հազարաւորները գաղթեցին Վրաստան եւ ընդունեցին Ռուսաց հպատակութիւն։

Պարսիկների հալածանքներից հարիւրաւոր Հայեր փախչում էին Պարսից սահմանակից խանութիւններից, կորստի մատնելով բոլոր իւրեանց կարողութիւնն եւ սեպհականութիւնը։

Զրկուած գոլով ամենատեսակ նիւթական օգնութիւնից՝ նոքա, որպէս եւ իցէ, պատսպարանք էին գտնում, ի հնուց Վրաստանում բնակուած համազգիների մօտ, բնակութիւններ էին հաստատում ամայի աւերակներում եւ մինչեւ սարուկ եւս գրաւում էին։

Ցրտից, սովից, մահատանջ տենդից հարիւրներով էին մեռնում, իսկ 1804—1805 թուերի ժանտախտն խեղճ թշուառների քառորդ մասն էլ չը թողեց։ Բայց եւ այնպէս Հայերը բնակութիւն հաստատեցին Թելաւի, Սղնախի, Բօրչալուի եւ Լօռու գաւառների այն տեղերում, որոնք զուրկ էին խաղաղ երկրագործ եւ աշխատասէր ձեռքերից։

Պարապելով հողագործութեամբ՝ միաժամանակ նոյն Հայերը առաջ-

*առաջն էին առնում, թշնամու բանակից տեղեկութիւններ էին բերում, պաշար էին հայթայթում եւ կարեւոր ժամանակը քաջաբար կռւում էին Ռուս զօրքերի հետ միասին նոցա թուում։*

*Ցիցիանովի եւ Գուդովիչի Գանձակի եւ Երեւանի դէմ մղած պատերազմներում Յովհաննէս Արքեպիսկոպոսը եւ Ներսէս վարդապետը ժողովեցին հայ զինուորախումբ 1500 մարդից կազմուած եւ իւրեանք գլուխ կանգնեցան սպառազինութեանը։*

*Հայերը չարունակ գտնւում էին յառաջապահ գնդի մէջ. նոքա էին, որ յարձակուեցին առաջին Գանձակի վերայ եւ 1804 թուի. յունիսի 20ի նշանաւոր պատերազմում, երբ Ցիցիանովը ջարդեց Պարսից բանակը, նոքա մեծ կորուստ ունեցան։ Կարեագինը, Կոտլեարեւսկին եւ մինչեւ անգամ ինքը Ցիցիանովը, որ ինչպէս տեսանք շատ ատելութեամբ էր վերաբերւում դէպի Հայերը, միաձայն վկայում են՝ իւրեանց օրով Հայոց կատարած մեծամեծ յաղթութիւնների մասին։*

*Ամենից նշանաւորն այն էր, որ Ռուսները Հայերի մէջ գտան իւրեանց համար յուսալի բարեկամներ, որոց վերայ կարելի էր վստահ լինել։*

*Բուտկովը գրում էր, որ «Կախեթայի խռովարար ապստամբութիւնների ժամանակ, Հայ ազգը, որ Վրաստանի մարդաբնակութեան նշանաւոր մասն է կազմում, անյողդողդ մնաց հաւատարմութեան մէջ եւ զոհելով իւր կարողութիւնը՝ մինչեւ կեանքն եւս, կռուեց ապստամբների դէմ եւ բազմիցս ապացուցեց իւր քաջութիւնն ու անկեղծ անձնուիրութիւնը։»*

*Ալէքսանդր կայսրը բարձրագոյն հրովարտակով 15ին սեպտեմբերի 1813 թուի պատասխանեց վերոյիշեալ յայտարարութեանը հետեւեալ խօսքերով. «Վրաստանում բնակուած բոլոր իմ սիրելի եւ հաւատարիմ հպատակ Հայ ազգին.» «Հայ ժողովուրդն իւր բոլոր դասակարգերով, (ասուած է այն հրովարտակի մէջ,) բազմադիմի հանգամանքներում եւ հաստատուն հաւատարմութեան ամեն դէպքերում ապացուցեց իւր անկեղծ անձնուիրութեան եւ զոհունակութեան զգացմունքը, եւ երբ թեթեւամտութիւնը եւ չարանպատակ անհաւատարմութիւնը աշխատում էին ամենուրեք խախտել Վրաստանի մէջ մեր թագաւորեցրած խաղաղութիւնը, Հայերը գերազանց հանդիսացան իւրեանց օրինակելի տոկունութեամբը եւ հաւատարմութեամբը. այն խռովաշփոթ հանգամանքների մէջ նոքա հաստատուն եւ ամուր եռանդ ցոյց տուին դէպի մեզ եւ մեր գահը, զոհելով յօգուտ մեր կառավարութեան եւ հասարակաց բարօրութեան, ոչ միայն կայք ու կալուածքները, այլ եւ իրանց կեանքը — Թո՛ղ անմոռաց մնայ ապագայի յիշողութեան մէջ այս վկայութիւնը ի պատիւ եւ ի փառս նոցա։»*

տառանձին նշանը, որ պէտք է յազգէ ազգ անջինջ մնայ Հայ ազգի սըրտում՝ իբրեւ ապացոյց անձնուիրութեան առ Ռուսաց գահն, մեծահռչակ կերպիւ յայտնուէր ազգին։ Եւ ահա, նոյն թուի, Նոյեմբերի 22ին Հայոց բոլոր նշանաւոր իշխանները եւ պատուելի քաղաքացիքը հրաւիրուեցան գլխաւոր հրամանատարի տունը։ Բարձրագոյն հրովարտակը դրած էր այն տեղ կերպասեայ թանգագին բարձի վերայ։ Չորս Հայ աւագ իշխաններ եւ երկու նշանաւոր քաղաքացիք վերցրին հրովարտակը եւ փառաւոր հանդիսակատարութիւնով յառաջ գնացին դէպի Վանքի մայր եկեղեցին։ Անհուն բազմութիւնը լցուած մերձակայ փողոցները, ուղեկցում էր հանդիսին։ Ռոտիշչեվը ամբողջ զինուորական եւ քաղաքական ծառայողների հետ անբաժան ընթանում էր։ Բարձրագոյն հրովարտակն երեւելուն պէս՝ զօրքը զինուորական պատիւ տուեց։ Մինաս Արքեպիսկոպոսը՝ բոլոր հոգեւորականութեան հետ զգեստաւորուած՝ վանքի դրանը խաչով, խաչվառով դիմաւորեց հանդիսին։ Նա իւր ձեռքն առաւ բարձրագոյն հրովարտակն եւ գլխին դրած՝ շարականներով, զանգակահարութիւնով եւ ժողովրդի գոհացողական փառաբանութիւններով յառաջ շարժուեց դէպի եկեղեցին։ Տաճարի դրանը տեղւոյն հոգեւոր պետը Աստուածատուր Արքեպիսկոպոսը իւր բարձր կոչման համապատասխան ամենայն փառքով զարդարուած՝ սպասում էր թափօրին։ Ընդունելով բարձրագոյն հրովարտակը նա ինքն եւս դրեց գլխին եւ մտաւ եկեղեցին։ Սեղանի առաջին արհին ծունկ չոքեց, հրովարտակը բազմացրեց նորա համար պատրաստած տեղը, ժամը օրհնեց եւ գոհացողական մաղթանքն ասաւ։

«Այն ջերմ փառաբանութիւնները եւ սրտաբուղխ արտասուքները, որ արտայայտուում էին ամեն դասակարգի հայ մարդի երեսի վերայ, գրում է Ռոտիշչեվը, նոցա խորին եւ անկեղծ զգացմանց եւ առ կայսրն ունեցած ջերմ գոհունակութեանց թարգմանն էին։»

Երեկոյին Հայերը մի շքեղ երեկոյթ տուին եւ հէնց այնտեղ նուիրեցին 4000 մանէթ չքաւորներին բաժանելու համար, որպէս զի եւ նոքա մասնակից լինին հասարակաց ուրախութեանը։ Հրովարտակը բերող սուրհանդակը 1000 մանէթ պարգեւ ստացաւ հայ հասարակութիւնից։

Ռուսաց կայսեր մի բարեհաճ խօսքի համար Հայ ազգի զգացած այս սրտալիր ուրախութիւնը պարզ ապացոյց է, թէ ի՞նչպէս մեծ ջանքով ճգնում էին նոքա ազատուել օտարազգի անհաւատների իշխանութեան տակից, թէ ո՞ր աստիճան ձգտումն ունէին նոքա դէպի հիւսիսային հզօր պետութիւնը եւ թէ ո՞րչափ բնական եւ օրինաւոր էր ուրեմն Ռուսաց հետամտութիւնը դէպի Անդրկովկասի քրիստոնեայ երկիրները։

Տարիներ անցան, բայց դեռ չէր հասել անհաւատների ձեռքից Հայ ազգի, եւ նորա սրբութիւնների ազատութեան օրը, դեռ չէր զարկել հալածանքներից լոյս հաւատի փրկութեան ժամը։

Բայց եւ այնպէս բուն Հայաստանումը ազատութիւն ձեռք բերելու

գաղափարը մեռած չէր. այն էլ՝ Ռուսաց օգնութեան շնորհիւ։

Մի ժամանակ Հայոց սուրբ հայրերից մէկը նախագուշակել էր թէ Հայաստանը ազատուելու է հիւսիսային ազգի ձեռքով։ Հայերը հոգւոյ ամենայն զօրութիւնով հաւատում էին այս աւանդութեանը, նոցա սրտի խորքում այնպէս արմատ էր ձգել այդ խօսքը, որ հայրը մեռնելու ժամանակ կտակում էր իւր զաւակներին զանգակահարութիւնով տօնել այն օրը, երբ կը ծագի Հայաստանի ազատութեան արշալոյսը, որպէս զի ինքն էլ գերեզմանի մէջ՝ այս անցաւոր կեանքի սահմանից դուրս՝ լսելով այս աւետիքը, խնդայ հայրենեաց փրկութեան համար։ Այս բերկրալից դէպքին Հայերը առանձին իմն եռանդով եւ յուսով էին սպասում։

Եւ ահա 1827 թուի Պարսկական պատերազմի սկսած ժամանակ Պարսից աշխարհի Հայերը գրկաբաց ուրախութեամբ դիմաւորում էին Ռուսներին, ինչպէս իւրեանց ազատարարներին։

Այդ ժամանակուան ազգային ձգտումների թարգմանը եւ ղեկավարը հանդիսանում է Ներսէս Արքեպիսկոպոսը. մի վսեմ եռանդով լցուած անձնաւորութիւն, որ կարծես իւր ամբողջ կեանքովը նախապատրաստուած էր ուղղակի այդ հերոսական քաջագործութեանց համար։

Ներսէս Աշտարակ գիւղի մի քահանայի որդի էր։ Ի մանկութենէ նա իրեն նուիրել էր միայնակեցութեան։ Ամենայն ուրեք անբաժան գտնուելով իւր հովանաւոր Դանիէլ Արքեպիսկոպոսից, նա ձեռք բերեց այն բազմափորձութիւնը, այն մարդաճանաչութիւնը, կեանքի եւ հանգամանքների մէջ այն հմտութիւնը, որոնք վերջումն այնպէս պէտք եղան իրեն։

Վարդապետ ժամանակը 1799 թուին նա Դանիէլի հետ գնաց Կ. Պօլիս, նա ծանօթացաւ այն տեղ տաճկական մայրաքաղաքի նշանաւոր Հայերի հետ, ականատես եղաւ Յովհաննէս պատրիարքի անկմանն եւ աքսորուելուն եւ նորա փոխարէն Դանիէլի պատրիարքանալուն, վերջը՝ տասն ամսից յետոյ՝ տեսնելով Դանիէլի գահընկէցութիւնը, ինքն եւս նորա հետ աքսորուեց Թոխաթ։

Հէնց այս ժամանակ մեռաւ Էջմիածնի կաթուղիկոս Յովսէփ երկայնաբազուկ Արղութեանը եւ Դանիէլը հռչակուեցաւ նորա փոխարէն Հայոց կաթուղիկոս։

Դանիէլն եւ Ներսէսը աճապարեցին Էջմիածին, բայց դեռ ճանապարհին — Բայազիդումը իմացան, որ Դաւիթն Էջմիածնումն իրեն կաթուղիկոս է հրատարակել եւ Սուլթանից եւ Շահից հաստատուել, որպէս թէ հանգուցեալ կաթուղիկոսի կտակին համաձայն, որ ի հարկէ, վերջումն երեւեցաւ, որ կեղծ էր։

Դանիէլը մնաց Բայազիդից ոչ հեռու Ուչքիլիսայի փոքրիկ վանքումը, եւ ահա այս րոպէից սկսուում է Հայոց եկեղեցական պատմու-

թէեւ սկզբումը պաշտպանեց Դաւթի իրաւունքը, բայց վերջը ստուգելով հանգուցեալ կաթուղիկոսի կտակի կեղծումը, անցաւ Դանիէլի կողմը: Ինչպէս ասում են, Երեւանի սարդարը կաշառուած լինելով տասն երկու քսակ ոսկով, միջամտեց այս չփոթին եւ Դանիէլը Ներսէսի հետ շղթայակապ բերուեց Էջմիածին եւ բանտարկուեցաւ:

Ներսէսին յաջողեցաւ փախչել Վրաստան ճիշտ այն ժամանակին, երբ Դանիէլին աքսորեցին Մարաղայ: Շատ չանցաւ, Պարսից կառավարութիւնը Ռուսաստանի սպառնալեօքն ինքը գահընկեց արեց Դաւթին եւ կաթուղիկոսութիւնն անցաւ Դանիէլի ձեռքը: Ներսէսն այդ միջոցումն եկաւ Էջմիածին եւ եպիսկոպոս ձեռնադրուեց:

Առաւել մեծ ազդեցութիւն ձեռք բերեց Ներսէսը Դանիէլի յաջորդ Եփրեմ կաթուղիկոսի օրովը: Բայց որովհետեւ Պարսից տէրութիւնը հալածում էր Ներսիսին, նա 1814 թուին թողեց Էջմիածինն եւ նշանակուեցաւ Վրաստանի առաջնորդ, ուր եւ գրաւեց Երմոլովի համակրութիւնը: Բայց քաղաքական հանգամանքներն այնպէս խճճուեցան, որ ինքը կաթուղիկոսը ստիպուեցաւ փախչել Էջմիածնից եւ ապաստանել Վրաստանումը՝ Ներսէսի վիճակումը: Նոքա միմեանց հանդիպեցան Շուշումը:

Ծերունի Եփրեմ կաթուղիկոսը ինքը նստեց մի վանքում եւ աթոռի բարձրագոյն վարչութիւնը նորից յանձնեց Ներսիսին:

Աբբաս միրզան դիտելով՝ որ Ներսէսը մեծ ազդեցութիւն ունի բոլոր Հայերի վերայ, շատ անհանգիստ էր, որ նա իւր իշխանութիւնից դուրս է ապրում. ուստի ամենայն զօրութեամբ, փողով եւ պատիւներով աշխատում էր համոզել նորան կաթուղիկոսի հետ միասին գալ Էջմիածին: Էջմիածնի միաբանները Աբբաս միրզայի ճնշման ներքոյ լինելով, նորա հրապուրանօքը պահանջում էին Եփրեմ կաթուղիկոսի վերադարձը: Սակայն Ներսէսը կամելով ազատ լինել պարսկական իշխանութիւնից, մնաց Վրաստանումը եւ կաթուղիկոսին էլ համոզեց մնալ:

Պէտք է ասել, որ Ներսէսը յոյս ունէր մօտիկ ապագայում իւր հայրենիքի ազատութիւնը անձամբ տեսնելու եւ ինքն էլ նոյն ուղղութեամբ էր գործում: Ներսէսը ջերմ հայրենասէր էր. նա իւր հօրիցն էր դաստիարակուել այդ ուղղութեամբ: Վերջերում նա արտասուքն աչքերին պատմում էր, թէ իւր հանգուցեալ հօր վերջին կտակն այն է եղել, որ մինչեւ Հայ ազգի սրտագին ցանկութիւնը չը կատարուի եւ սուրբ կրօնը մահմետականութեան լծից չազատուի, նա իւր գերեզմանին այցելութիւն չը գայ: Ասում էր Ներսէսը, թէ ինքն ապրում է այն յուսով, որ Ռուսաց զօրապետի հետ միասին այցելէ մի օր իւր հօր գերեզմանին:

Եւ ահա, երբ 1827 թուին Ռուսաց յառաջապահ զօրքը Բենկենդորֆի հրամանատարութեան ներքոյ ոտք դրեց Երեւանի խանութիւնը, նոցա մէջ էր եւ Ներսէսը:

Քրիստոնէից ազատութեան համար եկած զօրքի մէջ Ներսէսի ներ-

կայութիւնը քաջալերում էր Հայոց ազգաբնակութիւնը ։

Պատերազմի ամբողջ շարունակութեան ժամանակ Ներսէս Էջմիածնում նստած, սրտատրոփ հետեւում էր պատերազմական ընթացքին. նա ականատես էր Աբբաս միրզայի արշաւանքներին որ մեծ վտանգ էր սպառնում Էջմիածնին, ներկայ էր Աշտարակի կռուումը, տեսաւ Թաւրիզի եւ Երեւանի անկումը եւ խաղաղութեան դաշնագրութիւնը ։

Այն րոպէին, երբ նա աներկբայ կատարուած էր համարում իւր հայրենիքի ազատութեան գործը, նա պարտք համարեց կատարել իւր հօր կտակը ։ Աշտարակ անշուք գիւղից կէս ասպարիզաչափ հեռու գտնւում էր Շահաղիզեան կամսարականների առանձնացած սեպհական գերեզմանատունը(*) ։ Այդ տեղ բերեց Ներսէսը գեներալ Կրասովսկուն եւ ծնկաչոք արտասուքն աչքերին խոնարհեցաւ հօր գերեզմանի առաջ, որին երկար տարիներ չէր վստահանում մօտենալ ։

Երբ Ռուսաց զօրքը Թաւրէզն առաւ, անմիջապէս Ադրբէյջանի Հայերի կողմից պատգամաւորութիւններ յաճախեցին Պասկեւիչի մօտ եւ խնդրեցին գաղթեցնել իրենց Ռուսաց սահմանը ։

Ռուսաց կառավարութեան ցանկութիւնն էլ այս էր. այս առաջարկութիւնը բոլորովին համաձայն էր իւր հայեցակէտին ։ Գլխաւոր հրամանատարը քաջալերեց, փայփայեց նոցա եւ արձակեց գնալ ու գաղթելու պատրաստութիւն տեսնել ։

Սակայն անագորոյն ձմեռը եւ գուցէ այն յոյսը, թէ Ադրբէյջանն էլ կըմնայ Ռուսաց ձեռքի տակ, արգելք եղան քրիստոնեաներին հեռաւոր ճանապարհորդութեան պատրաստուելու մինչեւ մարտ ամիսը ։ Այնուհետեւ մի քանի արգելքներ եւս յառաջ եկան. մի կողմից Հայերը զզջացին իւրեանց տուած խոստումից, միւս կողմից Պարսիկներն սկսեցին համոզել նրանց յետ մնալ եւլն ։ Իսկ Ռուսաց կառավարութիւնը վճռեց ամենատեսակ միջոցներ գործ դնել Հայերի բարոյական ոգեւորութիւնը վառ եւ զօրացած պահպանելու ։

Այս նպատակի համար Ներսէսն ուղարկեց Պարսից գաւառները Ստեփաննոս Արքեպիսկոպոսին եւ Նիկողայոս վարդապետին, իսկ Պասկեւիչը կոչելով Պետերբուրգից Գնդապետ Լազարեանին յանձնեց նորան գնալ եւ գաղթականութեան գործը յառաջ տանել եւ ղեկավարել ։

Գնդապետ Լազարեանն այն նշանաւոր տոհմի զաւակն էր, որոնք յայտնի են Մոսկուայում արեւելեան լեզուաց ճեմարանի հիմնարկութեամբը եւ որոնք ի վաղուց անտի բնակուելով Ռուսաստանում կառուցել են մայրաքաղաքների հայ եկեղեցիքը եւ շարունակ անխնայ օգնութիւն են հասցրել իւրեանց հայրենակիցներին ։

(*) Ներսէսի հայրը թաղուած է ոչ Շահազիզեանների գերեզմանա-

Այս տան հարստութեան պատմութիւնը ամուր կապուած է Ռուսաց կայսերական թագը զարդարող մի թանկագին գոհարի հետ։ Այդ անդամանդը, որ Շահ-Նադիրին էր պատկանում, բերել է Լազարեան տոհմի անդամներից մէկը։

Պարսկական լծից բուն Հայաստանի ազատութիւնը չէր կարող արձագանք չը տալ եւ Պարսից աշխարհում բնակուած Հայերի սրտերում, չէր կարող չը զարթնացնել նոցա մէջ հայրենասիրական զգացմունք եւ ազատութեան ձգտումն։ Այդպէս էլ եղաւ։

Շահի սպանուելուց յետոյ՝ այդ թանկագին քարը ձեռքէ ձեռք անցնելով՝ ընկաւ վերջը Պետերբուրգում բնակուող Շաֆրազ անունով մի Հայի ձեռք։ Լազարեանը յանձն կառնու այդ գոհարը կոմս Օրլովի համար գնել տալու։ Գոհարը գնուեցաւ 400000 մանէթի։

Օրլովը՝ զատկի առաջին օրը՝ կարմիր ձուի ձեւով շինուած մի տփի մէջ այդ գոհարը նուիրեց Եկատարինէ Կայսրուհւոյն։

Այն անդամանդն իւր մեծութեամբը, փայլովը, տաշուածքովն եւ ջրովը մի հազուագիւտ բան է. ճանաչողները գնահատում են մի քանի միլիոն։

Եկատարինէն հրամայեց զարդարել նորանով Կայսերական գայիսոնը։

Եւ ահա այս տան ներկայացուցիչներից մէկն այժմ եկաւ Հայաստան՝ իւր ազդեցութիւնովը Հայոց գաղթականութեան գործը հեշտացնելու։

Լազարեանն անձամբ շրջեցաւ Մարաղայ, Սալմաստ եւ Որմի, իսկ մի քանի Ռուս սպաներ անցկացան մինչեւ Քրդստանի խորքերը, ուր կային նոյնպէս Հայեր, թէ եւ սակաւաթիւ։ Եւ գաղթականութեան գործը սկզբումը շատ յաջող էր գնում։

Ճանապարհից Լազարեանը գրում է Պասկեւիչին, որ Հայերը յայտնում են իւրեանց սրտալիր ցանկութիւնը յաւիտեանս Ռուսաց հպատակութեան ներքոյ մնալու եւ թէպէտ մարդուս համար դժուար է բաժանուիլ իւր ծննդավայրից, բայց նոքա պատրաստ են թողուլ իւրեանց տներն եւ գնալ ուր որ կըհրամայեն։

«Ձեզ է վիճակուած վայելելու Հայ ազգի վերականգման փառքը, գրում է Լազարեանը Պասկեւիչին, այն ազգի՝ որ տածելով իւր մէջ մի հաւատ դէպի մեր տունը, երաշխաւորել է ինձ յայտնել իւր զգացմունքը Ձեր բարձր գերազանցութեանը։»

Եւ արդարեւ, դեռ հազիւ թէ իմացուել էր, որ Ռուսները կարճ միջոցից յետոյ հեռանալու են Ադրբէյջանից, Հայերը պատրաստուեցան ճանապարհ ընկնելու։

Թէ ինքը Լազարեանը եւ թէ շատերը սկզբումը կարծում էին, թէ գաղթականութեան գործը մեծ դժուարութիւնների չէ հանդիպելու. մա-

նաւանդ որ իրենք Հայերն էին խնդրում , բայց գործնականապէս մեծ արգելքներ յառաջ եկան ։

Երբ գաղթականները վերջնականապէս հրաժեշտ պէտք է տային իւրեանց տներին , իւրեանց նախնիքների շիրիմներին , այն աշխատասէր նախնիքների՝ որոնք դառն քրտինքով թողել էին իւրեանց համար գեղեցիկ պտղատու դաշտեր , երբ իսկոյն պէտք է բարձի թողի անէին իւրեանց երկար տարիներով շինած գործարաններն եւ նոցա եկամուտները , երբ ներկայի հաստատ հացի կտորը պէտք է փոխէին մի անյայտ եւ մութն ապագայի հետ ։

Անվստահութեան օրինակ ցոյց տուողները առաջինը նեստորականներն եղան։ Մինչ նոքա կարծում էին , թէ ամբողջ Ադրբէյջանը միացած է Ռուսներին , նոքա սողում էին Պասկեւիչի ոտքի տակին . բայց երբ անձնապահութիւն անելու ժամը հասաւ , նոքա այնպիսի պահանջներ յայտնեցին , որ մերժելը խոհեմութիւն էր ։

Եւ նեստորականները որոնք , ինչպէս Լազարեանն ասում էր , ձեռքերը Ռուսներին էին մեկնել , իսկ սրտով Պարսիկներին էին անձնատուր , մերժումն ստացան ։

Բայց եւ այնպէս նեստորականների օրինակին հետեւեցան եւ ընկիկ Հայերը ։

Արդարութիւնը պահանջում է ասել , որ գտնուեցան քանի մի եպիսկոպոսներ , զոր օրինակ Սալմաստի Իսրայէլ եպիսկոպոսը , որոնք ի հաճոյս Պարսիկների մոռանալով իւրեանց քրիստոնէական պարտականութիւնը՝ գաղտնի խռովութիւններով եւ յայտնի սպառնալիքներով , ինչպէս վկայում է Ներսէսը , արգելք էին լինում Հայերի գաղթականութեանը ։

Պէտք է խոստովանել , որ Ռուսների կողմից գաղթականներին առաջարկած պայմանները , արդարեւ , ծանր էին եւ չէին կարող կասկած եւ երկմտութիւն չը յարուցանել ։

Հայոց ունեցած ամբողջ կարողութիւնն էին իւրեանց անշարժ կալուածքները , տները , պտղատու այգիք եւ արգաւանդ դաշտերն , եւ նոքա այս ամենը երեսի վերայ ձգելու եւ հեռանալու էին . բնական էր ուրեմն , որ նոքա պահանջէին Ռուսաստանից , որ իւրեանց բարձի թողի արածների արժողութեան դէթ երրորդ մասն վերադարձնէին իւրեանց ։

Թէպէտ եւ Թուրքմանչայի դաշնադրութիւնը Հայերին իրաւունք էր տալիս ծախել իւրեանց սեպհականութիւնները մահմեդականներին , բայց գործով այդ անկատար մնաց , ըստ որում Պարսից կառավարութիւնը խստիւ արգելել էր իւր հպատակներին ոչինչ առեւտրական յարաբերութիւն չունենալ Հայերի հետ , որպէս զի այդպիսով վերջիններիս հարկադրէր կամ մնալ իւրեանց հպատակութեան ներքոյ եւ կամ զրկուել կայք ու կարասեաց ։

*Նոյն ինքն Լազարեանը ճշդապէս կատարելով Պասկեւիչի հրամանը, չէր աշխատում այնու ամենայնիւ շողոքորթել Հայերին անիրագործելի յոյսերով։ Նա ուղիղ ասում էր նոցա, թէ ինչ որ իւրեանք Պարսկաստանում թողնում են, չեն կարող գտնել Երասխի միւս ափին. թէ ամենամեծ օգնութիւնը, որ կարելի է տալ մէն մի գերդաստանի հինգ արծաթ մանէթից աւելի չի լինիլ, բայց թէ նոքա կարող են վստահ լինիլ, որ թէ իրենք եւ թէ իւրեանց սերունդը անդորրութիւն կը վայելեն իւրեանց հաւատակից պետութեան հովանաւորութեան ներքոյ։*

*Եւ արդարեւ, իբրեւ սկզբնական օգնութիւն, գաղթականներին որոշուեցաւ միմիայն 50000 մանէթ եւ Հայերի միակ յոյսն այն խոստումն էր, որով նոքա մի քանի տարի պէտք է ազատ լինէին հարկերից եւ տուրքերից։*

*Բայց զրկուելով տուն ու տեղից տարուան այն ժամանակը, երբ տնային ամեն պաշարներն սկսում են սպառուել, եւ ստանալով գերդաստանագլուխ 6-7 մանէթ միայն, Հայերը պէտք եղած հացն էլ չը կարողացան գնել. իսկ նոքա, որոնք փոքր ի շատէ պաշար ունէին իւրեանց համար, նոքա եւս վերցնելու հնարաւորութիւն չունէին, թէ ճանապարհն էր հեռի եւ թէ անասուն գնել անհնար էր. մի ամենահասարակ էշը արժում էր 12-15 մանէթ արծաթ։*

*Պարսկական կառավարութիւնը կորցնելով ցաւօք սրտի բազմաթիւ աշխատասէր հպատակներ, իւր կողմից ամենատեսակ դժուարութիւններ էր ստեղծում Լազարեանի գործը խանգարելու համար։ Պարսկական գործակալներն ամենուրեք սփռուած՝ Հայերին հասկացնում էին, թէ Ռուսաստան մտնելուն պէս իւրեանց պէտք է ստրուկներ անեն եւ զինուոր առնեն, իսկ Պարսկաստանն, ընդհակառակը, ազատ կը կացուցանէ իրենց հարկերից եւ մեծամեծ արտօնութիւններ կը շնորհէ։*

*Իւրեանց ասածներին իբրեւ ապացոյց, նոքա այժմէն իսկ աւելի փող էին առաջարկում Հայերին, քան թէ որքան Լազարեանն էր տալիս։ Բայց երբ եւ այս չազդեց, Պարսից կառավարութիւնը հետեւեալ միջոցը ձեռք առաւ։ Նոքա հրատարակեցին, թէ Ռուսները բռնութիւնով են Հայերին գաղթեցնում եւ դորանով խախտում Թուրքմանչայի դաշնադրութիւնը։*

*Այս մտքով Աբբաս Միրզան մի յանդիմանական թուղթ գրեց Լազարեանին, թէ ինքը բռնի կերպիւ է ուզում Հայերին տանել եւ խընդրեց որ նա իրեն յարգող եւ համակրող ժողովրդի մտքերի վերայ ի չարն չը գործ դնէ իւր ազդեցութիւնը. «Եթէ խղճիւ դատենք, գրում է իւր նամակի մէջ Աբբաս Միրզան, ի՞նչպէս է կարելի, որ քանի մի հազար ընտանիք ինքնայօժար օտարի երեսի վերայ վայր ձգէ իւր հազարամեայ հայրենիքը, իւր կալուածքը, այգիները դաշտ ու տափը, որպէս զի վերջը գնայ եւ մնայ առանց մի կտոր տեղի եւ ընչի։»*

Հայոց շահերի պաշտպանութեան պատրուակաւ Թաւրիզից ուղարկուեցաւ անգամ անգլիական դեսպանութեան անդամ կապիտան Վիլլօկը։

Լազարեանն ստիպեց նորան գնալ իւր հետ միասին գաղթականների կայարանները եւ առաջարկեց նորան անձամբ հարց ու փորձ անել։ Եւ երբ Հայերը պատասխանեցին, թէ «ինքեանք գերադաս են համարում ուտել Ռուսի խոտը, քան Պարսից հացը», Լազարեանը պահանջեց Վիլլօկից գրաւոր վկայագիր տալ իրեն։

Գաղթականութեան ամենանշանաւոր արգելքներից մէկն էլ համարելու է մահմեդականների ատելութիւնը. Նոքա հայհոյանքներ էին թափում գաղթականների գլխին եւ շատ տեղ քարահալած էին անում։ Մինչեւ անգամ արիւնհեղութեան երկիւղ էլ կար, մանաւանդ որ Պարսից կառավարութիւնը ոչինչ ուշադրութիւն չէր դարձնում Թուրքերի տուած տանջանքների վերայ, յուսալով, որ այդպիսով, Հայերը կը վախենան եւ Պարսկաստանում կը մնան։

Մի առանձին թշնամութիւն էր նկատուում Քրդստանումը, որտեղից յաջողուեց մի քանի գերդաստան միայն գաղթեցնել, այն էլ՝ ամենամեծ դժուարութիւններով։

Այն տեղի Հայերի ցաք ու ցրիւ ընկած բնակարանները շինուած էին խորդ ու բուրդ եւ բարձրաբերձ սարերի մէջ, իսկ դուրսի աշխարհի հետ կապուած էին անդնդախոր ձորերի նեղ շաւիղներով եւ օձապտոյտ անցքերով. իսկ նոցա շրջակայքը մահմեդականաց գիւղեր էին, որոնք անուամբ միայն ստորադրեալ էին Պարսիկներին։

Արժան է զարմանալ այն սպաների անձնազոհութեան վերայ, որոնք երկու երեք ղազախների ուղեկցութիւնով մտնում էին այն գառագիղները, ուր իւրաքանչիւր ժայռ, իւրաքանչիւր դարեւանդ եւ խոր ձոր ամեն մի րոպէ մահ ու կալանք էր նոցա սպառնում։

Կատաղի գազան կտրուած Քրդերն՝ օրով ցորեկով յարձակուում էին սակաւաթիւ հայ գաղթականների վերայ, յափշտակում, սպանում եւ կամ յետ էին մղում նոցա։

Լազարեանն ստիպուեցաւ օգնութիւն խնդրել գեներալ Պանկրատեւից, եւ միայն Ուրմիայից եկած զօրքն էր, որ կարող եղաւ ցրուել այն հրոսակների խմբերը։

Բայց, ի հարկէ, այս ամենայն արգելքները չը կարողացան մի անգամ սկսած գործը խանգարել եւ հայ ժողովուրդը մաս մաս Ռուսաց զօրքի հետ միասին հեռացաւ Պարսկաստանից։

Ամենամեծ եւ առաջին բաժինը ճանապարհ ընկաւ 1828 թուի մարտի 16ին։

Արեւելեան ամենաչքեղ գարունն էր, ամենայն կողմից՝ Ադրբէջանի լեռների զառիվայրներից յառաջ էին շարժուում դէպի Երասխ գաղթականների բազմաթիւ կարաւանները։

*«Սրտաշարժ էր, պատմում է Գլինկան, տեսնել, թէ ինչպէս մայրերը սովորցնում էին իւրեանց մանուկներին արտասանել Հայոց առաջին Թագաւոր Նիկողայոսի անունը, ի՞նչպէս նոքա ներշնչում էին զաւակներին չը մոռանալ իւրեանց մեծ ազատարարին:»*

*Երեւելի նկարիչ Մօշկովը մի մեծ պատկեր է նկարել, ուր ներկայացնում է 40000 հայ գաղթականութիւնը գնդապետ Լ. Ե. Լազարեանի անմիջական ղեկավարութեան ներքոյ: Հեռուում երեւում են Մասիսը. Երասխը եւ Երեւանու ճանապարհի վերայ ընկած գիւղերը: Պատկերի աջակողմը ինքը Լազարեանը հրամաններ է տալիս հայ տանուտէրներին եւ աւագներին, նորան շրջապատել են իւր Թիկնապահները, անգլիական ու պարսկական ներկայացուցիչները, իսկ յետին գծի վերայ երեւում է գաղթականների ընդարձակ նստուածքը:*

*Սակայն եւ այնպէս, հէնց առաջին քայլափոխում նոր հայրենիքը շատ սիրով չընդունեց իւր գաղթական զաւակներին:*

*Այն ինչ աւելի քան 5000 գերդաստան գաղթականներ Երասխին մօտեցան, Լազարեանը Երեւանու նահանգական վարչութիւնից մի լուր ստացաւ, թէ ինքը հացի պակասութեան պատճառաւ նորեկներին կարեւոր օգնութիւնը չի կարող հասցնել, ուստի եւ խնդրում էր Լազարեանից յետ պահել նրանց Երասխի պարսկական ափումը մինչեւ արտերը հնձելը:*

*Հայերը մնացին երկնքի տակ եւ մեծ նեղութիւն կրեցին: Ազատ հողեր չը կային, պէտք եղաւ գաղթականների մեծ մասն ուղարկել այն տեղից Ղարաբաղ:*

*Ահա այսպէս գլուխ եկաւ Հայոց գաղթականութիւնը, որ մեծ օգուտ տուեց Ռուսաստանին՝ Անդրկովկասում մի այսպիսի աշխատասէր եւ, կարելի է ասել, միակ երկրագործ ժողովուրդ ձեռք բերելով:*

*Ընդհակառակն Ադրբէյջանի մարդաբնակութիւնը զգալի կերպիւ պակասեց եւ Պարսկաստանը՝ նոյն իսկ պարսկական կառավարութեան հաշուով, աւելի քան 32 միլիոն մանէթ վնաս կրեց:*

*Ամբողջ գաղթականութեան վերայ, ինչպէս Լազարեանի հաշուետուութիւնից երեւում է, ծախսուեցաւ միայն 14000 հոլլանդական ոսկի (պաճախլու) եւ 400 մանէթ արծաթ, իսկ այս աննշան գումարով գաղթեց 8249 գերդաստան, որ բոլորը միասին 40000 հոգուց աւելի է անում:*

*«Վստահանում եմ ասել, այսպէս է գրում Լազարեանը Պասկեւիչին իւր յայտարարութեանց մէջ՝ տալով նորան իւր գործառնութեանց հաշիւը, թէ դուք լցնելով ձեր ձեռք բերած երկիրները այսպիսի մի վաճառաշահ եւ աշխատասէր ժողովրդով, տէրութեան համար հարստութեան մի մեծ աղբիւր բաց արիք, եւ որքան մեծ ծախք եւս արած լինէր գաղթականութեան վերայ կառավարութիւնը, ինքը աւելորդով չա-*

Հինաւուրց եւ Մեծին Հայաստանի դաշտերի վերայ սփռուած ամայի անապատների տեղը, այժմ կը վերակենդանեն աշխատասէր, վաճառաշահ եւ Թագաւորին հաւատարիմ հպատակներով լի հարուստ գիւղեր եւ, գուցէ, քաղաքներ։

Վերջերումը Լուսաւորութեան նախարարութեան մէջ 1833 թուին մի խնդիր զարթնեցաւ հայկական նախկին դրօշների մասին եւ այդ խնդրի հետամտութիւնը յանձնուեցաւ գիտնական պրոֆեսոր Զրպետին։

Զրպետը Հայոց հին մատենագրների վկայութեան համաձայն պատասխանեց, թէ Կիւրոսին ժամանակակից Տիգրանի օրով Հայոց դրօշն էր եօթնգլխեան վիշապ. վերջերումը՝ Արշակունեաց հարստութեան ժամանակ վիշապը փոխուեցաւ միագլուխ արծուի։ Քրիստոնէութեան մուտ գործելովը հայ դրօշակների վերայ նկարուում էր փրկչական անձեռագործ պատկերը, յետոյ դաստառակի տեղ դրին Գառն Աստուծոյ՝ խաչը ձեռքին։ Վերջապէս Ռուբինեանների դրօշն եղաւ առիւծ։ Այս բոլոր զինանշաններից միասին առած, կամեցան Հայոց նահանգի համար մի ընդհանուր դրօշ կազմել։ Բայց չը գիտեմ ինչպէս փոխուեցաւ բանը, որ դրօշի վերջնական նկարը հետեւեալն եղաւ։ Կապոյտ տեղի վերայ՝ մի արծաթեայ վահանի մէջ տեղումը նկարուած է Մասեաց ձիւնապատ գագաթը, սպիտակ ամպերը նորան շրջապատել են, լեռան կատարին էլ Նոյեան ոսկեայ տապանն է դրուած։

Դրօշի ներքին մասը երկուսի է բաժանուած. աջ կողմում, կարմիր տեղի վերայ Հայոց նախկին Թագաւորաց թագն է. թագն ամբողջ ոսկեայ է, արծաթեայ աստղերով եւ մարգարիտներով զարդարուած, իսկ թագակապը եւ աստառը՝ կապտագոյն են։ Ձախ կողմում՝ կանաչ տեղի վերայ՝ Էջմիածնի վանքն է ամբողջ արծաթեայ, իսկ կաթուղիկէներն իւրեանց խաչերով՝ ոսկեայ են։

Դրօշի վերին մասումը՝ ոսկի տեղի վերայ՝ նկարուած է Ռուսաց երկգլխեան արծիւը. նա գրկած, բռնած ունի իւր ճանկերի մէջ վերոյիշեալ վահանը. իսկ այս ամենի գլխին դրուած է կայսերական թագը։

Վերջերումը, երբ Հայոց նահանգը միացաւ նոր հաստատուած Երեւանեան կոչուած նահանգի հետ, դրօշն էլ ուրիշ կերպ փոխուեցաւ։ Մի կապտագոյն վահանի վերայ նկարուած է մի արծաթեայ ժայռ, վահանի գլուխը պսակում է մի ռուսական ոսկի խաչ, իսկ վահանի վերայ դրուած է կայսերական թագը։

Բայց Ռուսաց կայսերական բուն դրօշի վերայ մնացել է մի առիւծ, որպէս Ռուբէնեան վերջին հարստութեան դրօշ։

Աւելորդ չի լինիլ ասելը, թէ երեսնական թուականներին Հայերը մի ծրագիր կազմեցին՝ տեղական հայ զօրք կազմելու նպատակաւ որ ռուսական եւ բուն ռուսական սպաների հրամանատարութեան ներքոյ

պէտք է պահպանէին սահմանները եւ կատարէին ներքին ծառայութիւնները ։

Նոր ծրագրի մէջ ի թիւս այլոց ասուած է եւ այն, թէ «Հայ ազգը երջանիկ կը համարի իրեն, եթէ իւր հարուստ եւ առաջաւոր տների զաւակներից կազմուէր մի զօրագունդ (դրուժինա կամ էսկադրօն), եւ պահուէր Ս. Պետերբուրգում նոյն իսկ կայսեր անձնաւորութեան մօտ իբրեւ թիկնապահներ ։ Որչափ արգելքները սակաւ լինին, որքան ծառայութիւնը հեշտ՝ այնչափ էլ ցանկացողների թիւը կաւելանայ ։»

Ծրագիրն առաջարկում էր, որ մի առանձին զինուորական դպրոց (կորպուս) հաստատուի հայ սպաներ պատրաստելու՝ առանց ակրութեան գանձարանի օգնութեան, թէ այդ դպրոցում եւ թէ ուրիշ նմանապիսի հաստատութեանց մէջ ռուսաց լեզուի ուսումը պարտադիր լինի ։ Դժբաղդաբար այն ծրագրի վախճանը մեզ անյայտ է ։

---

Հայաստանի ազատութեան երկու նշանաւոր գործիչները եղան եւ նորա խաղաղ կենսական ասպարիզի մէջ առաջին ղեկավարները ։ Սոքա էին Կրասովսկին եւ Ներսէսը ։

Երբ Երեւանը նուաճեցաւ եւ ամբողջ նահանգը Նախիջեւանի գաւառի հետ միասին միացաւ Ռուսաստանին, Երեւանի սարդարների հոյակապ պալատումը բնակուեցաւ գեներալ Լէյտինանտ Կրասովսկին՝ Հայաստանի առաջին զինուորական նահանգապետը ։

Մենք չենք ուզում ասել թէ, հազիւ նոր տիրապետած երկրումը նա իւր խաղաղ գործունէութեան ժամանակ մեծամեծ հրաշքներ գործեց, այսքանն էլ բաւական է վկայել, որ մօտ անցեալի մէջ կրած նեղութիւնից յետոյ Հայերը օրհնում եւ փառաբանում էին Կրասովսկու անունը իւր ստորադրեալներից ոչ սակաւ, բաւական է ասել, որ Կրասովսկին ժողովրդի հետ մարդասիրաբար վարուելու պատճառաւ մեղադրուեցաւ իբրեւ Հայերի շահերին պաշտպան եւ կուսակից ։

Ներսէս Արքեպիսկոպոսը, որին կարելի է կոչել Հայ ազգի իսկական սիրտն եւ գլուխը, կարողացաւ կարճ միջոցում կատարած իւր գործունէութիւնները անմոռանալի կացուցանել ։

Իբրեւ ապացոյց իւր շնորհակալեաց հաւատեացը առ Աստուած եւ առ կայսրը՝ Հայաստանի ազատութեան գործը յաջող վախճան ստանալու համար, Ներսէս ուխտել էր իւր հօր գերեզմանի վերայ՝ որ Սարդարաբադումը իւր հաշուով կը շինէ մի ռուսական եկեղեցի Նիկողայոս սքանչելագործի անունով ։

Այս բարի գործին մասնակցեցին Սարդարաբադում գտնուած բոլոր քրիստոնեայ ազգաբնակութիւնները եւ տաճարը հիմնուեցաւ Կրասովսկու ներկայութեամբ 1ին յունվարի 1828 թուին ։

Սորանից յառաջ մի այսպիսի հանդէս էլ Երեւանումը կատարուեցաւ։ Ռուսների Երեւան ոտք դրած ժամանակը այն տեղ կար միայն մի քրիստոնէական տաճար որ Հայերին էր պատկանում։ Այս մի աղքատիկ հին եկեղեցի էր Զօրավար անունով, որ ըստ աւանդութեան իւր սուրբերկրեայ խորանում ամփոփած ունի Սաւուղին մկրտող Անանիա առաքելոյ մասունքը։

Պասկեւիչը ցանկացաւ մշտնջենաւորել պարսկական անառիկ ամրոցի առման յիշատակը մի նոր տաճար հիմնելով։

Եւ ահա. նորա միջնորդութեան համաձայն, 1582 թուին տաճիկներից հիմնած Երեւանի գլխաւոր մզկիթը ոսկէ լուսնով զարդարուած, փոխուեցաւ Ռուսաց եկեղեցի յանուն հովանաւոր սուրբ Աստուածածնի, (պոկրով) ի յիշատակ Երեւանի բերդի առման, որ կատարուել էր նոյն օրը։

Ներսիսի աշխատութիւնովը կայսեր անուանակոչութեան օրը տաճարն արդէն պատրաստ էր։

Այդ օրուան համար Նեւայի ափունքից ուղարկուած էր Ջանգուի ափը սրբազան սպասներ, խաչկալ, թանգագին անօթներ եւ սեղանի ու սկհւոյ սփռոցներ, որոնք կարել էին իւրեանց իսկական ձեռքով եւ նուիրել երկու օգոստափառ կայսրուհիքը՝ Մարիա Ֆեօդորովնան եւ Ալէքսանդրա Ֆեօդորովնան։

Տաճարի օծումը կատարուեցաւ 1827 թուի դեկտեմբերի վեցին։ Հէնց այդ օրը Հայոց բոլոր եկեղեցիներումը եւ մահմետական մզկիթներումը գոհաբանական մաղթանք էին կատարում Երեւանի նոր հրամանատարի՝ այն է Ռուսաց թագաւորի համար։

Բոլոր ժողովուրդը մեծ եռանդով եւ սիրով ընդունեց այս դէպքը. ոչ միայն Հայերը, այլ նոյն իսկ Պարսիկները ժողովեցին իւրեանց միջից մի նշանաւոր գումար 3000 մանէթից աւելի, Երեւանու նահանգում գտնուած զօրքին բաժանելու համար։

Բայց չատ չուտով, համարեա գործի սկզբումը, ինչպէս Կրասովսկու նոյնպէս եւ Ներսիսի գործունէութիւնները սկսեցին դադար առնել՝ Պասկեւիչի հետ ունեցած թիւրիմացութիւնների պատճառաւ։

Պասկեւիչը դժգոհ էր Կրասովսկուց դեռ այն օրից երբ նա սպայակոյտի (շտաբ) կառավարիչ էր, նա չը ներեց Կրասովսկուն Աշտարակու կռտորուածքը. Պասկեւիչի թշնամութիւնը այն աստիճանի էր մեծացել դէպի Կրասովսկին, որ նա ոչ միայն ժխտում էր վերջինիս զինուորական եւ կառավարչական ընդունակութիւնները, այլ եւ բարդեց նորա վերայ բազմապատիկ մեղադրանքներ նոր տիրապետած երկրի վերաբերմամբ։

Պասկեւիչը գանգատում էր, թէ Երեւանու նահանգի եկամուտը գանձարանը չի մտնում, այն ինչ Աղիբբէկյանը, աւելի վատ պայման-

ների տակ, հարկ է վճարում, թէ Երեւանու նահանգի արքունի կալուածքի նկարագրութիւնը դեռ չի արուած եւ Երեւանի սարդարի պարտքերը չեն ցուցակագրուած եւ որոշուած, թէ երկրի տեղական մուտքերը ոչ թէ ի գործ են դրուած զօրքի պէտոյքը հոգալու վերայ, այլ տրուած են Կրասովսկու կողմից ժողովրդին ցանելու համար, մինչդեռ զօրքի պաշարը մեծ դժուարութեամբ է բերուում Վրաստանից, եւլն։

Պասկեւիչը մեղադրում էր Կրասովսկուն, որ նա Ներսէսին անսահման իրաւունք է տուել, որով նա մեծ ազդեցութիւն է գործում ամեն բանում եւ Հայերին վնասակար կերպիւ պաշտպանում է, այն ինչ ազգաբնակութեանց երեք քառորդ մասը մահմեդականներն են կազմում։

«Ես մինչեւ ցայսօր պատերազմական գործում Կրասովսկու հետ չէի ծառայած, գրում է Պասկեւիչը Դիբիչին, այդ պատճառաւ նորան համարելով մի ընդունակ մարդ, խնդրեցի նորան նշանակել շտաբի կառավարիչ։ Ձեզ քաջ յայտնի է, թէ նորա ծառայութիւնը այդ կոչման մէջ որքան օգտակար եղաւ։ Ես կարծում էի նոյնպէս, թէ նա կարող է մի առանձին բանակի հրամանատար լինել. այդ էլ ձեզ յայտնի է, թէ նորա նշանակութիւնը ինչ հետեւանք ունեցաւ։ Վերջապէս նա կառավարիչ նշանակուեցաւ նոր տիրապետած երկրին, որի ապագայ բոլոր կազմակերպութեան իրագործումը կախուած էր նորանից. թէ նա առաջին անգամ գործին ինչ տեսակ ընթացք պէտք է տայ. շնորհ արէք ուրեմն տեսնել, կատարե՞ց արդեօք Կրասովսկին իւր պարտականութիւնն այդ կոչման մէջ. եւլն.» . . «Ես կարո՞ղ եմ ուրեմն մի այդպիսի օգնական ցանկանալ ինձ համար . . . Ես արդեօք կայսեր առաջին պատասխանատու չե՞մ գտնուիլ — հարց է առաջարկում վերջումը Պասկեւիչը — ամենից վերջը գալիս է այն եզրակացութեանը, որ Կրասովսկին պիտանի չի կարող լինել։»

Դիբիչին քաջ յայտնի էր, թէ Կրասովսկին ընչո՞ւ համար է շտաբի կառավարչութիւնը թողել, ուստի եւ, ինչպէս երեւում էր, աշխատում էր մեղմացնել Պասկեւիչի խիստ հայեացքները։

Թէպէտ եւ, ի հաճոյս Պասկեւիչի, Կրասովսկին յետ կոչուեց Կովկասից եւ ընդհանուր զօրաբանակի մէջ հաշուեցաւ (зачисленъ по армiи) բայց եւ այնպէս պարսկական պատերազմի վերջաւորութեան համար սուրբ Աննայի Ա. աստիճանի ադամանդեայ շքանշան եւ միանուագ 100000 մանէթ դրամական վարձատրութիւն ստացաւ թագաւորից։

1828 թուի ապրիլի 28ին Կրասովսկին դուրս գնաց Երեւանից դէպի Ռուսաստան։ Այնպիսի փառքով ճանապարհ դրին նորան, որ համեմատած իւր կրած անբաւականութեանց հետ նա միանգամայն մխիթարուեցաւ։ Մի ականատես ասում է, թէ Կրասովսկուն տուած պատիւները չէ թէ նորա աստիճանին էին վերաբերում, այլ իւր սեփական անձին։

Տփխիսի Հայերից մի պատգամաւորութիւն շտապել էր յայտնել

նորան շնորհակալութիւն՝ Հայ ազգին մատուցած ծառայութեանց համար. դերեզմանի դուռը հասած ծերունի Եփրեմ կաթուղիկոսը օրհնեց նորան՝ անանկներին խնամք տանելու համար։ Ներսէս Արքեպիսկոպոսը Էջմիածնի հոգեւորականութեանը գլուխ կանգնած՝ բարի ճանապարհ մաղթեց նորան մի ճառախօսութիւնով, որի մէջ Կրասովսկուն անուանում է քրիստոնէութեան թշնամիների ձեռքից Մայր Աթոռի ազատարար. իսկ նորա ստորադրեալներն եւս ամբողջ զինուորականութեան կողմից մի ուղերձով ներկայացրին մի մեծ պատկեր, որի մէջ փայլում էր Կրասովսկու բոլոր քաջագործութիւնները։ . . .

Մի քանի ամիս հազիւ էր անցել, որ Կրասովսկին հեռացել էր Կովկասից եւ ահա հերթը հասաւ Ներսէս Արքեպիսկոպոսին։

Առաջին անգամն ամենքը գնահատում էին Ներսէսի գործունէութիւնը եւ նորա ցոյց տուած ծառայութիւնները։ Այս բանում կաթուղիկոսի համակրութիւնը ի հարկէ մեծ գործ էր տեսնում։

Պարսկական պատերազմը վերջանալուց յետոյ թագաւորը պարգեւատրելով ծերունի Եփրեմ կաթուղիկոսին սուրբ Ալեքսանդր Նեւացու ադամանդեայ շքանշանով (առանց զարդարանքի), մի ժամանակ էլ նոյն շքանշանը տուեց Ներսէսին հետեւեալ գրութեամբ (ռեսկրիպտ).

«Ի վաղուց անտի, գրում է թագաւորը, դուք ցոյց էք տուել Ռուսաստանին ձեր անձնուիրութիւնը, նոյնը արիք մանաւանդ եւ ներկայ պարսկական պատերազմի ժամանակ. ուր ջերմեռանդութիւնով շարունակ մեր զօրքի հետ մասնակից լինելով՝ անխնայ անձնատուր էիք լինում վտանգների։ Գեներալ ադիւտանտ Պասկեւիչը շատ անգամ է տեղեկութիւն տուել մեզ ձեր գովանի քաջագործութեանց մասին, յայտնելով՝ թէ ամբողջ պատերազմի ընթացքում դուք մեծ եռանդեամբ ծառայում էիք Ռուսաստանի շահերին, նորանով, որ աշխատում էիք ձեր հանճարեղ խորհուրդներովը, յորդորներովը եւ անձնական օրինակովը ջերմ համակրութիւն զարթնացնել եւ պահպանել Հայ ազգի մէջ դէպի մեր գահը։ Ձեր այնչափ երեւելի ծառայութիւնները փառաւոր եւ նշանաւոր անելու եւ իմ առանձին բարեհաճութիւնը ամբողջ Հայ ազգին ցոյց տալու համար ես հաղորդ եմ անում ձեզ (պարգեւատրում եմ) սուրբ Ալեքսանդր Նեւացու շքանշանին»։

Սակայն շատ չանցաւ, Պասկեւիչի յարաբերութիւնները Ներսէսի հետ փոխուեցան։

Հաստատ ապացոյցներ կան, որ պնդում են, թէ յարաբերութիւնները լարուելու գլխաւոր պատճառը Ներսէսի գրած մի թուղթն էր։ Այդ նամակը նա գրել է Պասկեւիչին նորա Դէյկարխան եղած ժամանակը։ Նամակի մէջ նա յայտնում է իւր կարծիքը Մակուայ խանութիւնը Ռուսաստանին միացնելու եւ պարսկական նոր սահմանագծի մասին.

Ներսէսն ամենայն իրաւամբ կարծում էր, որ սահմանագիծը Նախիջեւանից սկսած՝ պէտք է իջնի դէպի արեւմուտք ոչ թէ Արաքսի ուղղութիւնով, ինչպէս արդէն վճռուած էր. այլ պէտք է անց կենար ուղիղ գծով լեռնաշղթաների միջով ուղղակի մինչեւ տաճկական սահմանը, որպէս զի Պարսկաստանը մի սուր անկիւնով չը մանէր Ռուսաց երկիրը: Պասկեւիչը նորա տուած այս խորհրդիցը վիրաւորուեց եւ չընդունեց:

1828 թուի մարտ ամսին նոցա երկուսի յարաբերութիւններն այնքան լարուեցան, որ Պասկեւիչը Ներսէսին հեռացրեց եւ չը թոյլ տուեց միանգամայն խառնուել Երեւանու նահանգի կառավարչութեան գործերում, միայն Տիֆլիզին տեղեկութիւն տուեց, թէ ինքը ամենայն քաղաքավարութեամբ եւ առանց ինչ վիրաւորանքի է կատարել այս գործը....

Այնուհետեւ Պասկեւիչը մի քանի չարունակ յայտարարութիւններով սկսեց կասկածելի ցուցանել (դիսկրեդիտիրովաս) Ներսէսին Թագաւորի աչքում ասելով՝ թէ ինչ որ նա կատարել է Ռուսաստանի համար եւ ինչ որ իւր անցեալ կեանքի մէջ արել է, այդ ամենը ոչ այլ ինչ էին, եթէ ոչ մի չարք խառնակչութիւններ (ինտրիգներ) որ յառաջ էին եկել նորա ինքնիշխան բնաւորութիւնից եւ փառասիրութիւնից:

Այս յայտարարութիւնները վերջ ի վերջոյ հասան իւրեանց նպատակին:

Եւ ահա 1828 թուականի յուլիսին Տիֆլիզն արդէն այսպէս է գրում Պասկեւիչին. «Ձեր պայծառափայլութեան բազմադիմի յայտարարութիւններից Թագաւոր կայսրը նկատել է, որ Ներսէս Արքեպիսկոպոսի գործողութիւնները շատ դէպքերում հակառակ են մեր կառավարութեան տեսակէտներին եւ օգուտներին, որին ապացոյց է հայ զինուորների տուած դանգատը, որոնց Ներսէսն ինքնագլուխ պարտաւորացրել էր 25 տարի էջմիածնումը ծառայել: Այս ամենը տեղիք են տալիս մտածելու, թէ գուցէ Ներսէսը որ եւ է գաղտնի նպատակներ ունի Ռուսաստանին միացրած նահանգների մասին:» Ահա ինչ է պատասխանում սորան Պասկեւիչը.

«Ներսէսի բռնած ընթացքը ոչինչ վտանգաւոր եւ հակառակութիւնական մտադրութիւններ, կամ Ռուսաստանի միացած երկիրների մասին որ եւ է գաղտնի դիտաւորութիւններ չի արտայայտում: Ընդհակառակն պարսկական պատերազմի ժամանակ Ներսէսը միշտ պատրաստականութիւն էր յայտնում մեր օգտին ծառայելու եւ անձնուիրութիւն էր ցոյց տալիս դէպի Ռուսաստանը:

Բայց որքան եւ արդարացնեմ նորան այս մասումը, ես չեմ կարող լռել եւ չասել, թէ նորա փառասիրութիւնը (վլաստոլյուբիե) շատ հեռու է տանում նորան իւր պարտականութիւնների, կոչումի եւ սահմանների սահմաններից եւ թէ նա ոչ միայն հոգեւոր, այլ եւ աշխարհական գոր-

ծերունին ևս ցանկանում է գործել անսահման իշխանութեամբ . . . Վեհափառ Ներսէս կաթուղիկոսի զառամեալութիւնը եւ տկարութիւնը մի-ջոց տուին նորան իւր ձեռքն առնել Հայոց եկեղեցական վարչութիւնը. Նա այսքանով չը բաւականացած՝ տարածում է իւր իշխանութիւնը եւ աշխարհական գործերի վերայ եւ կամենում՝ է ցոյց տալ իրեն ինչպէս գլուխ եւ կառավարիչ ամբողջ Հայ ազգութեան։

Այս մասին այնքան մեծ էր նորա փառասիրութիւնը, որ նա սկսեց յուսադրական խրախուսագրեր (պրոկլամացիի) ուղարկել արտասահման-եան Հայերին եւ մերձակայ տաճկական սահմանակից կառավարիչների հետ յարաբերութիւններ հաստատեց եւ միևն ժամանակ ներկայացնում էր իրեն ինչպէս դրացի եւ Արփաչայ գետի ափունքի տիրապետ միշտ. բաժանելով իւր սեպհական օգուտները ազգութեան ընդհանուր շահերից։ . . . Բացի դորանից շատ անգամ է Ներսէսը արտայայտել իւր միակող-մանի դիտաւորութիւնները Էջմիածնի եկամուտներն աւելացնելու հա-մար. Թէկուզ նոքա մեզ ևս պատճառէին տէրութեանը։ Երեւանում պատահած յայտնի անբաւականութիւնների պատճառներից մէկն էլ այն էր, որ Ներսէսը հէնց առաջին անգամից նկատեց, թէ ես որքա՛ն եմ աշխատում արքունի շահերը պաշտպանելու համար եւ հասկացաւ, որ ես սաստիկ դիմադրելու եմ իւր դիտաւորութիւններին, որով նա մտադիր էր հայ եկեղեցիներին սեպհականացնելու իրանց չը պատկանած կալուածք-ներն ու եկամուտները։»

Իւր այս կարծիքին իբրեւ ապացոյց Պասկեւիչը հետեւեալ դէպքն է յառաջ բերում։ «Դեռ նոր Կողբայ աղահանքները տրուել էին կապա-լով, որ Ներսէսը յայտնեց, թէ Ցունաց Հերակլ կայսրը դեռ եւս 629 թուականին, 1200 տարի յառաջ Կողբայ երրորդ մասը նուիրել է Էջմի-ածնի վանքին։ Ներսէսի անհանգիստ բնաւորութիւնը (неспокойный и интриганъ) բնականաբար յառաջ է եկել նորա փառասիրական ձգտումնե-րից եւ Հայ Եկեղեցու շահերը միակողմանի կերպիւ պաշտպանելու նպա-տակից։

Հայոց գործերի վերաբերութեամբ Ներսէսի ունեցած անտեղի մեծ եռանդը կարող է արձագանք գտնել եւ ուրիշ նշանաւոր հայազգիների մէջ, որոնք սկզբից հաստատ միտք ունէին եւ այսօր էլ նոյն մտքին են, հեռու պահել իւրեանց մեր օրէնքների ազդեցութիւնից եւ ցանկութիւն չունին ենթարկուել այն պարտականութիւններին, ինչ որ ուրիշ հպա-տակները կատարում են։ Ասածներիս անհերքելի ապացոյց են հիւսիսա-յին Կովկասում բնակեցրած Հայերը, որոնք մինչեւ ցայսօր ոչ միայն խոյս են տալիս բոլոր պարտականութիւններից, հիմնուելով Պետրոս առաջինի տուած արտօնութիւնների վերայ, այլ եւ աշխատում են ի վնաս արքունի գանձարանի իւրեանց իրաւունքը տարածել եւ այն նոր-տուն բնակած Հայերի վերայ, որոնց վերայ այս իրաւունքները չեն տա-

րածուում։ Մի եւ նոյն ձգտումն էլ սպասելու է Անդրկովկասեան Հայերից։»

«Ինչ վերաբերում է Ներսէսին, աւելացնում է Պասկեւիչը, ես մեծ դժուարութեան մէջ եմ։ Քաղաքականութիւնն ինձ արգելում է բոլորովին հեռացնել նորան գործերից, բայց եթէ թողնենք նորան իւր ազդեցութեան մէջ, վանքական պահանջներն անվերջ կը լինին եւ գանձարանը կը զրկուի բոլոր այն արդիւնքներից, որ կարող էր ունենալ»։

Թագաւորը վճռեց յետ կոչել Ներսէսին։ Այս իսկ միջոցումը մեռաւ Բեսսարաբիայի եւ նորա սահմանակից նահանգների Հայոց Գրիգոր Արքեպիսկոպոսը։ Ներսէսը նշանակուեցաւ նորա տեղ։ Յունիսի չորսին նա արդէն դուրս եկաւ Էջմիածնից գնալ իւր նոր պաշտօնատեղին՝ Քիշնեւ։

Ներսէսի հեռանալը խորին տխրութեան մէջ գցեց Հայերին եւ Եփրեմ կաթուղիկոսին։

1828 թուի. նոյեմբերի 8ին Եփրեմը մի նամակ է գրում Թագաւորին, որի մէջ մի առ մի յիշում է Ներսէսի ծառայութիւնները, ասում է որ ինքն անձամբ պարտական է այնպիսի արժանաւոր արքեպիսկոպոսին եւ խնդրում է վերադարձնել նորան Էջմիածին, որպէս զի իւր կենդանութեան ժամանակ յանձնէ նորան կաթուղիկոսական վարչութեան ղեկը։

Շատ հասկանալի է, թէ ի՛նչ տհաճութեամբ յանձն առաւ Պասկեւիչն այս միջնորդութիւնը։

Օտար դաւանութիւնների հոգեւոր գործերի գլխաւոր կառավարիչ Բլուդովին նա գրեց, որպէս թէ ծերունի կաթուղիկոսի մտաւոր զօրութիւնը պակասել է, թէ ո՞ր աստիճանի է հասնում Ներսէսի համախոհների յանդգնութիւնը եւ վերջումն ասաց, թէ Ռուսաստանի շահերը եւ երկրի խաղաղութիւնը պահանջում են չթոյլ տալ Ներսէսին լինել ամենայն Հայոց ծայրագոյն կաթուղիկոս։

Իւր կողմից Ներսէսը հասկանալով, որ Բեսարաբիայի վիճակը մի քաղաքավարի պատրուակ է Հայաստանի գործերից իրան պատճառով հեռացնելու համար, ինքն աշխատում է արդարացնել իրեն Բլուդովի աչքումը, եւ 1829 թուի յունուարի 21ին հետեւեալ նամակն է գրում նորան.

«28 չարունակ տարի անսահման եռանդեամբ եւ անկեղծ հաւատարմութեամբ իմ անխոնջ հոգատարութիւնները եւ անխնայ աշխատութիւնները լարել եմ Ռուսաստանի օգտի եւ իմ համասեռ ազգիս բարեկենդանութեան համար։ Ճակատագիրը տնօրինել էր ինձ իշխան Ցիցիանովի օրից ամենուրեք գտնուել պատերազմների մէջ եւ ամեն բանի մէջ Ռուսներին գործակից լինել։ Այս քաղցր պարտականութիւնները կատար

լով՝ իմ աշխատութիւնների, հոգատարութիւնների եւ անձնազոհութ
ների փոխարէն ես չանուեցայ Ռուսաց կայսրների, գլխաւոր հրամ
տարների, իմ ազգի եւ նորա վեհափառ գլխի երախտագիտութ
Վերջապէս պարսկական պատերազմի ժամանակ չատ գէպքերում ես
ծակից զանուել Պասկեւիչին, մանաւանդ Սարդարաբադն եւ Երե
անելու »:

«Կոմս Պասկեւիչը, չարունակում է Ներսէսը, անբաւական էր
նում մինչ այն գլխաւոր գեներալներից, որոնց հետ ես զանազան
ծերով յարաբերութիւններ էի անում, փոխանակ երախտագիտական
ւսանեաց՝ կասկածանքներ ծնան նորա մէջ իմ դէմ, իսկ այդ
կածները յաւիտեանս երկպառակութիւն ձգեցին մեր մէջ։ Իսկ
կեւիչի մի անցեալ սխալը, որ արեց նա Պարսկաստանի հետ արած
նադրութեան ժամանակի մի նշանաւոր կէտի մէջ՝ Ռուսաստանի ա
նազծի վերաբերութեամբ, կատարեց արգէն իմ դէմ Պասկեւիչի
տհաճութիւնը։»

Ներսէսի գրութեանը Պասկեւիչը այսպիսի մանրամասն բացատ
թիւններ է տալիս. «Ներսէս Արքեպիսկոպոսը, գրում է նա, ա
որ մեր մէջ ծագած մեծ անբաւականութիւնների չարժառիթը,
թէ գլխաւոր գեներալների հետ իւր ունեցած յարաբերութիւններն
զօրանով ինքը հաստատում է, որ մասնակից է եղել իմ դէմ եղած
վութիւններին (ինտրիգներին), որոնք անյայտ չեն Թագաւոր Կայս
«Պէտք է կարծել, շարունակում է նա, որ Ներսէսը յիշելո
երբեւ թէ սահմանագծի վերաբերութեամբ գործած սխալներս,
նով հասկացնում է իւր այն ծիծաղելի առաջարկութեան համար՝
չընդունեցի, այն է՝ Մակուայ խանութիւնը մեր նահանգներին չը
ցրի։ Ահա ինչպէս պատահեցաւ։ Դէյկարխանում եղած ժամանակ
զօրմանս իմ, ստանում եմ գեներալ Կրասովսկու մի յայտարարութ
որով գրում է թէ ինքը լսել է, որ Մակուայ խանութիւնը վերա
նում է Պարսկաստանին եւ թէ այս խնդրի վերաբերութեամբ
ստացել է Ներսէսից մի հաղորդագրութիւն եւ ուղարկում է ի քաղ
յեցողութիւն իմ։ Եթէ գեներալ Կրասովսկին պաշտօնական յայտ
րութիւն չը գրած լինէր, ես նորա գրութիւնը կընդունէի իբրեւ
կատակ, որովհետեւ գժուար էր երեւակայել թէ մի գեներալ լէյտե
մի Արքեպիսկոպոսի հետ միասին մտածէին ինձ խորհուրդներ տալ
ի՞նչպիսի դաշն կապեմ ես, այն ինչ այդ մասին ես լիակատար իրաւ
եմ ստացել Թագաւոր կայսրից։ Ուստի եւ ես չը կամենալով թոյլ
իմ իշխանութեան ներքոյ որ եւ է հանրապետական օրէնքներ, յա
մանութիւն գրեցի գեներալ Կրասովսկուն իրեն չը վերաբերեալ գո
րծում խառնուելու մասին։ Ներսէսի առաջարկութեան մասին՝ Մա

[...]ութիւնը մեր գաւառներին միացնելու առթիւ՝ ես հետեւեալն եմ [...]ում.

1) Թէ առանց Մակուայ խանութեան էլ Պարսկաստանի հետ իմ կա- [...]խաղաղութեան դաշինքը բաւականին օգտաւէտ է մեր համար։

2) Մակուայ խանութիւնը միաւորելով՝ մենք կունենայինք մի անոսանման եւ

3) Մակուայ խանութեան ձեռք բերելը նորա համար էր ցանկալի [...]ախսին, որ այն տեղ կայ մի հայկական հարուստ վանք։»

Չէ կարելի ասել՝ որ Պասկեւիչի յառաջ բերած պատճառները հա[...]ողական լինէին։ Գոնէ նորա բացատրութիւնները իբրեւ թէ առանց [...]ն էլ իւր կապած պայմանը օգտաւէտ էր, թէ այն տեղ մի հարուստ [...]նք կար, (որ ի հարկէ ցանկալի էր, որ մեր ձեռքն անցնէր) նորա [...]չած ինտրիգներն եւլն, այս բոլոր փաստերը բնաւ ոչինչ չեն հաստա[...]ում եւ ոչինչ էլ չեն հերքում։

Բայց եւ այնպէս Եփրեմ կաթուղիկոսի միջնորդութիւնը Ներսի[...]ն էջմիածին փոխադրելու մասին մնաց առանց ուշադրութեան։ Սա[...]այն ճակատագրի կամքն էր, որ Ներսէսը վերադառնար Հայաստան կա[...]թուղիկոս եւ իւր երկոտասանամեայ գործունէութիւնովը ապացուցանէր [...]իւր խորին անձնուիրութիւնը Ռուսաստանի անկեղծ շահերին։ Սարա[...]նով նա գլխաւորապէս պարտական էր այն ժամանակուայ պետական անձներից մէկին՝ այն է իշխան Վորոնցովին, որ Նովորոսիսկում գեներալ գուբերնատոր եղած ժամանակ կարողացաւ մօտ ճանաչել Ներսէսին եւ միանգամայն արդարացրեց նորան Թագաւորի աչքում։

Եփրեմի մահից յետոյ 1831 թուին, երբ Պասկեւիչն դեռ Կովկասում էր, կաթուղիկոսական գահը բարձրացաւ Յովհաննէսը։ Բայց 1842 թուին, երբ նա եւս մեռաւ, Ներսէսը միաձայն ընտրուեցաւ կաթուղիկոս, այն ինչ միւս կանդիդատը՝ Երուսաղէմի Զաքարիա պատրիարքը 26 ձայնից միայն 17 ստացաւ։ Երկու կանդիդատներն եւս առաջարկուեցան Թագաւորին հաստատութեան։ Կայսրը հաստատեց Ներսէսին՝ «ինչպէս մի անձնաւորութիւն, որին մատնացոյց արին միաձայն եւ միահոգի թէ ներկայ եւ թէ բացակայ ընտրող պատգամաւորները»։

Սակայն Ներսէսը նշանակուելով ծայրագոյն կաթուղիկոս, կարող եղաւ 1845 թուի Դեկտեմբերին հազիւ հասնել Տփխիս։ Երկու ամբողջ տարի ծանր հիւանդութեան պատճառաւ ստիպուեցաւ նա մնալ Պետերբուրգում։

Անմոռանալի է մնացել Տփխիսի համար Հայերի իւրեանց նորընտիր կաթուղիկոսին դիմաւորելը։ Դեկտեմբերի 17ին առաւօտեան կայծակի արագութեամբ լուր տարածուեցաւ, թէ կաթուղիկոսը Տփխիսից 70 ասպարէզ հեռու գիշերելու է Անանուրում։ Մի վայրկեանում խանութները փակուեցան, տուն ու տեղ երեսի վերայ թողուեցան եւ ամեն մարդ, ո

